ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

3

ՄԱՐՏ

ԵՐԵՎԱՆ • 1972

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3

ՄԱՐՏ 1972

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»— теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# *Содержание*







# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

1972 թվականի դեկտեմբերի 30-ին բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, աշխատավոր մտավորականությունը, ամբողջ սովետական ժողովուրդը նշելու են Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակը:

*ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյակը մեր բազմազգ ժողովրդի մեծ տոնն է:*

Այդ հոբելյանի նախապատրաստությունն անցնում է ՍՄԿԿ XXIV համագումարի գաղափարների ու որոշումների ներգործության տակ: Աշխատանքային ու քաղաքական այն հսկայական խանդավառությունը, որով աշխատավորները կատարում են համագումարի կանխագծած պլանները, նոր ուժով է ցուցադրում մեր հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, կուսակցության և ժողովրդի միաձույլ համախմբվածությունը, Սովետական մեծ Միության բոլոր ժողովուրդների անխախտ բարեկամությունն ու եղբայրական համագործակցությունը: Համագումարի գաղափարները նպաստում են համաշխարհային սոցիալիստական համագործակցության, կոմունիստական ու բանվորական շարժման հետագա համախմբմանը, բարերար ազդեցություն են գործում միջազգային ամբողջ իրադրության վրա, խաղաղության ու ժողովուրդների անվտանգության ամրապնդման վրա:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը հանդիսացավ սոցիալ-տնտեսական արմատական վերափոխությունների իրականացման, ազգային հարցի վերաբերյալ լենինյան ծրագրի կենսագործման, սովետական հանրապետությունների առաջացման գլխավոր քաղաքական պայմանը: Նոր հասարակարգի կառուցման ուղին բռնած տարբեր ազգությունների աշխատավորների ընդհանուր շահերը, ջանքերի միավորման և եղբայրական համագործակցության նրանց ձգտումը իրենց գործնական մարմնավորումը

գտան 1922 թվականի դեկտեմբերին միասնական բազմազգ պետության ՍՍՀ Միության ստեղծման մեջ:

*ՍՍՀՄ-ի կազմավորումն իր քաղաքական նշանակությամբ և սոցիալ-տնտեսական հետևանքներով ակնառու տեղ է գրավում սովետական պետության պատմության մեջ:* Այդ պատմական իրադարձությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների համոզիչ հաղթանակն է, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության իրականացման բեղմնավոր արգասիքը: Սովետական Միության կազմավորումը եղավ այն վճռական գործոններից մեկը, որոնք բարենպաստ պայմաններ ապահովեցին հասարակությունը սոցիալիստական հիմունքներով վերակառուցելու, բոլոր սովետական հանրապետությունների էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքի, աշխատավորների բազմազգ պետության պաշտպանական հզորությունն ու նրա միջազգային դիրքերն ամրապնդելու համար:

Սովետական Միությունը իրենով մարմնավորում է ազատ ժողովուրդների միասնության ու բարեկամության՝ պատմության մեջ անցյալում չեղած հարաբերություններ: Այդ բարեկամությունը սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկն է, սովետական հասարակության հզոր շարժիչ ուժը, ՍՍՀՄ բոլոր ազգությունների աշխատավորների ստեղծագործական կառուցման անսպառ աղբյուրը՝ հանուն ամենաազնիվ նպատակի՝ կոմունիզմի կառուցման:

*Բազմազգ սոցիալիստական պետության ստեղծման գործում մեծագույն ծառայություն է պատկանում կուսակցության և ժողովրդի առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինին:* Ստեղծագործաբար զարգացնելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գաղափարները, նա ստեղծեց ազգային հարցի վերաբերյալ կուռ ուսմունք, մշակեց կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության գիտական սկզբունքները: Մարքսիզմ-լենինիզմը բացահայտեց ազգային հարցի տեղն ու դերը աշխարհի հեղափոխական վերակերտման մեջ, ցույց տվեց նրա ենթակայությունը պրոլետարիատի դասակարգային պայքարի շահերին, սոցիալիզմի շահերին: Լենինյան ազգային ծրագրի անկապտելի բաղկացուցիչ մասը եղավ պրոլետարիատի կուսակցական և մյուս կազմակերպությունները ըստ ինտերնացիոնալ հատկանիշի կառուցելու պահանջը: Տեսության մեջ և պրակտիկայում ապացուցվեց, որ կենսականորեն անհրաժեշտ է բոլոր ազգությունների պրոլետարներին միավորել կապիտալիստական ստրկության դեմ, սոցիալական և ազգային ազատագրության համար մղվող պայքարում:

Մեր երկրի ժողովուրդները դարերով համատեղ պայքարում էին ցարիզմի, սոցիալական և ազգային ճնշման դեմ: Այդ ազատագրական, հեղափոխական պայքարը ե՛լ ավելի մեծ թափ, գիտակցական, նպատակասլաց և կազմակերպված բնույթ ստացավ բանվորական շարժման ծննդյան և հատկապես Վ. Ի. Լենինի կողմից բոլշևիկյան կուսակցության ստեղծման շնորհիվ: Ինքնակալության և կապիտալիզմի դեմ պայքարելու համար Ռուսաստանի ժողովուրդներին մոբիլիզացնելու և կազմակերպելու կորեղ գործոն դարձան մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները: Դրանք հարստացրին միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման տեսության և պրակտիկ փորձի գանձարանը:

Կուսակցության ղեկավարությամբ դասակարգային մարտերում ծնվում, ամրապնդվում ու կոփվում էր համառուսաստանյան պրոլետարիատի միասնությունն ու մարտական ընկերությունը: Պետրոգրադի և Մոսկվայի, Կիևի և Օդեսայի, Իվանովո-Վոզնեսենսկի և Նիժնի Նովգորոդի, Խարկովի և Եկատերինոսլավի, Բաքվի և Թիֆլիսի, Մինսկի և Վիլնոյի, Ռիգայի և Ռևելի, Կազանի և Դոնի Ռոստովի, Դոնբասի և Ուրալի, ուրիշ շատ արդյունաբերական կենտրոնների բանվորները հանդես էին գալիս որպես հզոր ինտերնացիոնալ հեղափոխական ուժ:

Գիտակից պրոլետարները մշտապես ձգտում էին ռեակցիայի դեմ մղվող պայքարում ապահովել բանվորների, չքավորագույն գյուղացիության ամենասերտ համախմբումը, դեն նետելով բուրժուա-նացիոնալիստական գաղափարախոսության ամեն մի ձև՝ լիներ դա մեծապետական շովինիզմ, թե տեղական



նացիոնալիզմ, ազգային սնապարծություն, թե ազգային նիհիլիզմ, հակասեմիտիզմ, թե սիոնիզմ: Դասակարգային և ազգային ճնշման, ազգային երկպառակության և մեկուսացման հին աշխարհին կոմունիստական կուսակցությունը, բանվոր դասակարգը հակադրեցին աշխատավորների միասնության նոր աշխարհը, ուր տեղ չկա մարդու կողմից մարդու, մի ազգի կողմից մյուսի ամենաչնչին ճնշման համար, որևէ ազգային առանձնաշնորհման համար:

Լենինյան կուսակցությունը, բանվոր դասակարգը վճռականորեն պաշտպանում էին բոլոր ազգերի և ազգությունների իրավահավասարությունը, ազգերի ինքնորոշման իրավունքը, ընդհուպ մինչև ինքնուրույն պետությունների կազմավորումը՝ հանուն իրավահավասար ժողովուրդների կամավոր սերտ դաշինքի հաստատման: «Մենք պահանջում ենք կեղեքված ազգերի ինքնորոշման ազատություն, *այսինքն՝* նրանց անկախություն, *այսինքն՝* նրանց անջատման ազատություն, ոչ այն պատճառով, որ մենք երազում ենք տնտեսական տրոհում կամ մանր պետությունների իդեալ,— գրել է Լենինը Հոկտեմբերյան հեղափոխությունից քիչ առաջ,— այլ, ընդհակառակն, այն պատճառով, որ մենք կամենում ենք խոշոր պետություններ և մերձեցում, նույնիսկ ազգերի ձուլում, սակայն իսկական դեմոկրատական, իսկական ինտերնացիոնալիստական հողի վրա, որն *աներևակայելի* է, առանց անջատման ազատության» (Երկեր, հատ. 21, էջ 524—525):

*Նոր տիպի բազմազգ պետության կազմավորման փորձը ցույց է տալիս, որ միայն սոցիալիստական հեղափոխությունն է ապահովում բոլոր ժողովրդական ուժերի սերտ միավորումը բանվոր դասակարգի գլխավորությամբ՝ կապիտալիստական շահագործման սիստեմը և դրա հետ միասին ազգային ճնշման սիստեմը վերացնելու նպատակով:* Պատմական այս խնդրի կատարման, երկրի ազգերի և ազգությունների սոցիալիստական ապրելակերպի ձևավորման քաղաքական վճռական նախադրյալը եղավ պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը, իսկ գլխավոր տնտեսական նախադրյալը՝ արտադրության միջոցների հանրային սեփականության հաստատումը:

Բազմազգ սոցիալիստական պետության մեջ ժողովուրդներին համախմբելու համար ակնառու նշանակություն ունեցավ մասսաների հեղափոխական ելույթների ընթացքում աշխատավորների իշխանության այնպիսի ձևերի ստեղծումը, ինչպիսիք են սովետները: Աշխատավոր բնակչության բոլոր խավերին իրենց մոտիկության և մատչելիության շնորհիվ սովետները թույլ տվեցին բանվոր դասակարգի շուրջը միավորել գյուղացիության բազմամիլիոն մասսաներին, տարբեր ազգությունների բոլոր աշխատավորներին: Սովետների բուն ինտերնացիոնալ բնույթը հանրապետությունների աշխատավոր մասսաներին թելադրում էր ստեղծելու միասնական պետություն: Սովետների գործունեության փորձը ցույց տվեց, որ բանվորներն ու գյուղացիները կարող են պետությունը հաջողությամբ կառավարել ամենալայն ու հետևողական դեմոկրատիզմի, ազգային լիակատար հավասարության հիմունքներով:

Մեր բազմազգ երկրում ազգային հարցը հանդես էր գալիս որպես սոցիալիստական հասարակարգի կառուցման արմատական հարցերից մեկը: Նրա ճիշտ լուծումից էր մեծապես կախված նոր հասարակարգի բախտը: *Միայն կոմունիստական կուսակցությունը, որն արտահայտում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների կենսական շահերը, որը վարում է լենինյան ազգային քաղաքականություն, կարող էր բոլոր ազգերին ու ազգություններին համախմբել միասնական ինտերնացիոնալ եղբայրության մեջ և նրանց ջանքերն ուղղել նոր հասարակարգի ստեղծման նպատակին:* Նա պատվով կատարեց այդ պատմական խնդիրը, որովհետև անշեղորեն առաջնորդվում էր մարքսիզմ-լենինիզմի տեսությամբ:

Հոկտեմբերի հաղթանակից հետո ընդունված՝ Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայում, աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիայում, ՌՍՖՍՀ-ի և մյուս սովետական հանրապետությունների սահմանադրություններում հռչակված են պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում քաղաքական, տնտեսական և կուլտուրական

նաև ինքնավար հանրապետությունների, ինքնավար մարզերի և ազգային օկրուգների կազմավորման մեջ:

1936 թվականի դեկտեմբերի 5-ին ընդունված ՍՍՀՄ սահմանադրությունը օրենսդրականորեն վավերացրեց սոցիալիզմի հաղթանակը, որպես սոցիալիստական հասարակարգի սոցիալական ու պետական կազմակերպության, սովետական ժողովուրդների միաբանության հիմքի:

Մեր բազմազգ սոցիալիստական պետության կյանքում նշանակալից իրադարձություններ եղան ուկրաինական ժողովրդի վերամիավորումը 1939—1945 թվականներին, բելոռուս ժողովրդի վերամիավորումը 1939 թվականին: 1940 թվականին Լատվիայի, Լիտվայի, Էստոնիայի աշխատավորները հեղափոխական պայքարի ընթացքում վերականգնեցին սովետական պետականությունը. ժողովուրդների կամքի ազատ արտահայտման հիման վրա Լատվիական, Լիտվական և Էստոնական Սովետական Հանրապետությունները մտան ՍՍՀ Միության մեջ: Մոլդավ ժողովրդի վերամիավորման շնորհիվ Մոլդավական ԻՍՍՀ-ն վերակազմվեց միութենական հանրապետության:

*ՍՍՀՄ-ի ամրության դաժան քննություն եղավ Հայրենական մեծ պատերազմը:* Մարդկության ամենավտանգավոր թշնամու՝ հիտլերյան ֆաշիզմի հետ տեղի ունեցած գոտեմարտն ակնբախորեն ցուցադրեց, որ սովետական ժողովուրդները միայն միավորված ընդհանուր ուժերով կարող են պաշտպանել իրենց հեղափոխական նվաճումները: Պատերազմը հօդս ցնդեցրեց համաշխարհային իմպերիալիզմի այն հույսերը, թե կվերսկսվեն ազգային երկպառակությունները, թե փուլ կգա բազմազգ սոցիալիստական պետությունը: ՍՍՀՄ ժողովուրդները միասնական շարքում հերոսաբար կռվեցին և անձնվիրաբար աշխատեցին հանուն իրենց սոցիալիստական հայրենիքի պաշտպանության, թշնամու դեմ ընդհանուր հաղթանակի, աշխարհին ցուցադրեցին տոկունության և արիության հրաշքներ: Հայրենական պատերազմում ձեռք բերված պատմական հաղթանակը վառ կերպով ցույց տվեց սոցիալիստական հասարակական ու պետական կարգի առավելությունները, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կենսական մեծ ուժը և անկախությունը:

Թե՛ ժողովրդական տնտեսության վերականգնման հետպատերազմյան տարիներին, թե՛ կոմունիստական շինարարության հետագա ժամանակաշրջանում ուժեղանում են ՍՍՀՄ ժողովուրդների լենինյան բարեկամության հիանալի հատկանիշները՝ հավատարմությունը սոցիալիստական հայրենիքին, անձնվիրությունը, աշխատասիրությունը, փոխադարձ օգնությունը: Համաշխարհային պատմությունը տասնյակ ազգերի ու ազգությունների փոխհարաբերությունների մեջ դեռ չէր տեսել շահերի ու նպատակների, կամքի ու գործողությունների այդքան անխախտ միասնություն, այդպիսի հոգեհարազատություն, վստահություն ու փոխադարձ հոգածություն, որպիսիք շարունակ դրսևորվում են մեր եղբայրական Միության մեջ:

*Պատրաստվելով ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյակին, կոմունիստական կուսակցությունը, սովետական ժողովուրդը օրինական հպարտությամբ են նայում հերոսական հաղթանակներով և մեծագործություններով լի անցած ուղուն:* Սովետական Միությունն իր նշանակալից հոբելյանն է ընթանում կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած մեծ նվաճումներով:

Այդ նվաճումների մեջ հսկայական դեր է պատկանում բոլոր ազգությունների աշխատավորների եղբայրական բարեկամությանը: Միայն երկրի բոլոր ուժերի ու ռեսուրսների միավորումն էր, որ սովետական մարդկանց հնարավորություն ընձեռեց պատմական ամենակարճ ժամանակամիջոցում վերացնել ցարիզմից ու կապիտալիզմից ժառանգություն մնացած տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, իրագործել երկրի ինդուստրացումն ու գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը, իրագործել իսկական կուլտուրական հեղափոխություն, կառուցել սոցիալիզմ և ՍՍՀ Միությունը վերածել բարձր զարգացած տերության, ծավալել կոմունիստական հասարակարգի կառուցումը: Պետական միասնության շնորհիվ, սովետական հայրենիքը կարողացավ ստեղծել անխորտակելի պաշտպանական հզորություն, որը հու-



սալիորեն ապահովում է ժողովուրդների ազատությունն ու անկախությունը, նրանց համար խաղաղ, ստեղծարար աշխատանքի պայմաններ ապահովում:

*Երկրի բոլոր ժողովուրդները բազմամյա կենսափորձով համոզվել են, թե ինչպիսի հարուստ պտուղներ է տալիս իրենց համախմբումը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ, թե դա ինչպիսի անչափ լայն հնարավորություններ է ապահովում ապագայում:*

Սովետական ժողովուրդների նյութական միջոցների ու ջանքերի համակենտրոնացումը, անշահախնդիր փոխադարձ օգնությունը հնարավորություն ընձեռեցին բոլոր հանրապետություններում ստեղծելու բարձր զարգացած արդյունաբերություն և խոշոր մեքենայացված գյուղատնտեսություն: 1922 թվականի՝ ՍՍՀՄ-ի կազմավորման տարվա, համեմատությամբ երկրի արտադրված ազգային եկամուտը մեծացել է ավելի քան 100 անգամ: Ցարական Ռուսաստանի ֆեոդալական ու կիսաֆեոդալական ծայրամասերում ստեղծվել են բազմաթիվ արդյունաբերական ու կուլտուրական կենտրոններ, բարեկարգ քաղաքներ ու գյուղեր:

Սովետական հասարակության սոցիալ-քաղաքական կյանքում կատարվել են որակական խոր փոփոխություններ. վերացվել են շահագործումն ու շահագործող դասակարգերը, գործազրկությունը, անգրագիտությունը, ամրապնդվել է բանվորների և գյուղացիների դաշինքը: Գոյացել են սոցիալիստական ազգեր, հաստատվել է սովետական ժողովրդի սոցիալական ու բարոյա-քաղաքական միասնությունը, աճել են ազգային կադրեր, ծաղկման է հասել ժողովուրդների՝ բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային կուլտուրան: ՍՍՀՄ ժողովուրդների լեզուներով նախկինում չտեսնված մասշտաբներով ստեղծվում և հրապարակվում են գրականության ու արվեստի ստեղծագործություններ, գիտական աշխատություններ, լույս են ընծայվում թերթեր ու ամսագրեր:

Մեր երկրում ազգային հարցի հաջող լուծման կարևոր արգասիքն է Սովետական Միության բոլոր սոցիալիստական ազգերի ու ազգությունների լեզուների բազմակողմանի զարգացումը: Նախկինում իրենց գիրը չունեցած ավելի քան 40 ժողովուրդներ սովետական շրջանում ձեռք բերեցին գիտականորեն մշակված գիր և այժմ ունեն զարգացած գրական լեզուներ: ՍՍՀՄ-ի բոլոր ազգերն ու ժողովուրդները ռուսաց լեզուն կամավորապես ընտրել են որպես ազգամիջյան հաղորդակցության և համագործակցության ընդհանուր լեզու, որը դարձել է սովետական ժողովուրդների փոխադարձ կապի ու համախմբվածության հզոր հենքը, հայրենական ու համաշխարհային կուլտուրայի լավագույն նվաճումները յուրացնելու միջոցը:

Տնտեսական, սոցիալ-քաղաքական ու կուլտուրական զարգացման մակարդակների հավասարեցումը և վերելքը հանդիսացան ՍՍՀՄ-ի բոլոր հանրապետությունների արագ ու բազմակողմանի առաջադիմության կարևոր գործոնը: Եղբայրական միաբանության մեջ անսովոր լիակատարությամբ բացահայտվեցին սովետական պետության բոլոր ազգերի ու ազգությունների ստեղծարար եռանդը, ստեղծագործական ընդունակությունները, տաղանդները:

Իրենց անխախտ դաշինքի 50-ամյակը ուժերի ծաղկումով են դիմավորում ՌՍՖՍՀ-ն, Ուկրաինական ՍՍՀ-ն, Բելոռուսական ՍՍՀ-ն, Ուզբեկական ՍՍՀ-ն, Ղազախական ՍՍՀ-ն, Վրացական ՍՍՀ-ն, Ադրբեջանական ՍՍՀ-ն, Լիտվական ՍՍՀ-ն, Մոլդավական ՍՍՀ-ն, Լատվիական ՍՍՀ-ն, Կիրգիզական ՍՍՀ-ն, Տաջիկական ՍՍՀ-ն, Հայկական ՍՍՀ-ն, Թուրքմենական ՍՍՀ-ն, Էստոնական ՍՍՀ-ն: Կերտելով կոմունիստական հասարակարգը, մեր երկրում, ուս-ուսի տված, աշխատում են հարյուրից ավելի ազգեր ու ազգություններ: Եվ դրանցից որին էլ պատկանելիս լինի սովետական մարդը, նա նախ և առաջ հպարտանում է, որ քաղաքացին է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների մեծ Միության:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն գոհունակությամբ նշում է, որ բոլոր միութենական ու ինքնավար հանրապետությունների, ինքնավար մարզերի ու ազգային օկրուգների կուսակցական կազմակերպությունները ավանդարդային

*պրոգրեսում:* Բազմազգ սոցիալիստական պետության ստեղծման, մեր ժողովուրդների ընդհանուր ջանքերով կառուցված սոցիալիստական հասարակարգի կառուցման, ազգային բարդագույն հարցի լուծման սովետական փորձը համաշխարհային ճանաչում է ստացել և անգնահատելի օգնություն է սոցիալական ու ազգային ազատագրության բոլոր մարտիկներին:

Կապիտալիզմի, սոցիալական ու ազգային ճնշման, ռասայական խտրականության սիստեմի դեմ ներկայումս կանգնած է համաշխարհային սոցիալիստական սիստեմը: Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հետևողական իրականացումը ապահովում է եղբայրական երկրների առանձնահատուկ և ընդհանուր շահերի առավել լրիվ իրացում: Նոր հասարակարգն իր հետ բերում է նաև միջազգային հարաբերությունների նոր տիպ: Սոցիալիստական երկրների փոխհարաբերություններն առավել մեծ չափով են բնութագրվում մշտապես աճող քաղաքական, տնտեսական և կուլտուրական կապերով, տնտեսական ինտեգրացման կարգացումով, փորձի և գիտելիքների ակտիվ փոխանակումով, արտաքին քաղաքականության բնագավառում սերտ համագործակցությամբ:

ՍՄԿԿ-ն իր առաջնահերթ խնդիրն է համարում այն, որ հաստատակամորեն հասնի մյուս սոցիալիստական երկրների ու ժողովուրդների հետ սովետական ժողովրդի առավել սերտ համախմբման և բարեկամության ամրապնդման, նրանց քաղաքական, տնտեսական, գաղափարական ու կուլտուրական կապերի բազմակողմանի ընդլայնման:

*ՍՍՀՄ-ը համաշխարհային ասպարեզում հանդես է գալիս որպես մի ուժ, որը հաստատ և հետևողականորեն վարում է խաղաղության ու բարեկամության քաղաքականություն, պաշտպանում ժողովուրդների իրավահավասարության լենինյան սկզբունքները, վճռականորեն հանդես գալիս գաղութատիրության, նեոգաղութատիրության ու ռասիզմի դեմ, ազգային ճնշման բոլոր ձևերի դեմ:* Այդ քաղաքականությունը եղել և մնում է իմպերիալիզմի ու ռեակցիայի ագրեսիվ ստրատեգիային հակազդող կարևորագույն գործոնը, կավթողական պատերազմների դեմ, ժողովուրդների անվտանգության ու ազատության համար, սոցիալական առաջադիմության համար մղվող ակտիվ պայքարի վենքը:

Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում գաղութների և կիսագաղութների բազմաթիվ ստրկացված ժողովուրդներ պետական ինքնուրույնություն նվաճեցին: Այդ պայքարում նրանք հենվում էին Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության պաշտպանության վրա:

Մեր երկիրը երիտասարդ ազգային պետությունների հետ հաստատել է իրավահավասարության, փոխադարձ հարգանքի, ներքին գործերին չմիջամտելու, հակաիմպերիալիստական ընդհանուր պայքարում բազմակողմանի համագործակցության վրա հիմնված հարաբերություններ: Սովետական Միությունը հետևողականորեն պաշտպանում է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների հեղափոխական շարժումը իմպերիալիզմից տնտեսապես ազատագրվելու, սոցիալական առաջադիմության համար: ՍՍՀՄ-ը ինտերնացիոնալ համերաշխության քաղաքականություն է վարում այն հայրենասերների նկատմամբ, որոնք զենքը ձեռքներին կռվում են տակավին գոյություն ունեցող գաղութային և ռասիստական վարչակարգերի դեմ:

Սովետական Միությունը հետևողականորեն պաշտպանում է տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը, որը նպաստում է լարվածության թուլացմանը, ժողովուրդների խաղաղության և անվտանգության ապահովմանը:

Ժամանակակից պայմաններում Սովետական Միության լենինյան արտաքին քաղաքական գծի կենսագործման համար վիթխարի նշանակություն ունի ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած՝ խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար մղվող պայքարի կոնստրուկտիվ և ռեալիստական ծրագիրը: Այդ ծրագիրը համապատասխանում է ՍՍՀՄ-ի մեջ մտնող բոլոր սոցիալիստական հանրապետությունների, բոլոր սովետական մարդկանց արմատական ազգային շահերին և աշ-



խարհում ամենուրեք լայն պաշտպանություն գտավ: Ներկայումս Սովետական Միությունը ամբողջ աշխարհի առջև կանգնում է որպես կոմունիզմ կառուցող երկիր, ժողովուրդների բարեկամության միջնաբերդ, միջազգային հեղափոխական-ազատագրական շարժման պատվար:

*Բազմազգ սովետական ժողովուրդը ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյակը դիմավորում է որպես հզոր, միաձույլ համախմբված ժողովուրդ, որը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ վստահորեն և նպատակասլաց կերպով առաջ է ընթանում կուսակցության ծրագրի, ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից նախանշված ուղիով:* Համագումարի մշակած հետագա կոմունիստական շինարարության վիթխարի պլանները լայն ասպարեզ են բաց անում մեր երկրի բոլոր ազգությունների աշխատավորների ստեղծարար գործունեության համար:

Ընթանալով դեպի փառապանծ հոբելյանը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն նորից հավաստում է XXIV համագումարում արտահայտված՝ կուսակցության հաստատ վճռականությունը՝ այսուհետև ևս անշեղորեն վարել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության համակողմանի ամրապնդման լենինյան կուրսը, անհրաժեշտ ամեն ինչ անել, որպեսզի մեր երկրի ժողովուրդների կապերը է՛լ ավելի սերտանան ու խորանան, որպեսզի է՛լ ավելի ամրանա նրանց ինտերնացիոնալ սոցիալիստական միասնությունը:

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է.*

Բոլոր կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպություններին, աշխատավորական կոլեկտիվներին հանձնարարել ծավալելու Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստությունը՝ որպես կոմունիստական հասարակարգ կառուցող մեր երկրի ազգերի և ազգությունների միաբանության, բարեկամության ու եղբայրության, ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի հաղթանակի համաժողովրդական մեծ տոնի:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին հանձնարարել մշակելու ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյակի նախապատրաստության պլաններ և դրանց հիման վրա կազմակերպչական ու քաղաքական լայն աշխատանք ծավալել յուրաքանչյուր հանրապետությունում, երկրամասում, մարզում, օկրուգում, քաղաքում, շրջանում, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում: Նախատեսել այդ տարելիցին նվիրված ժողովների անցկացում ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, հիմնարկություններում, ուսումնական հաստատություններում, զորամասերում և ստորաբաժանումներում:

Առաջիկա հոբելյանի նախապատրաստության ընթացքում ուշադրություն դարձնել.

ազգային հարցի վերաբերյալ մարքս-լենինյան տեսության սկզբունքների և կոմունիստական կուսակցության ծրագրային դրույթների, լենինյան ազգային քաղաքականության ուժի և կենսականության աղբյուրների պարզաբանմանը.

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության՝ որպես պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների կենդանի մարմնավորման, համաշխարհային պատմական նշանակության պարզաբանմանը.

մեր երկրում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման, ՍՍՀՄ պաշտպանության ամրապնդման և նրա ժողովուրդների ազատության ու անկախության ապահովման, միջազգային ասպարեզում սոցիալիզմի դիրքերի ամրապնդման, համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման համար Սովետական Միության կազմավորման նշանակության պարզաբանմանը.

ՍՍՀՄ-ում ապրող բոլոր ազգերի և ազգությունների էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքի, բարեկամության, փոխադարձ հարգանքի և ամրապնդվող միասնության գիտակցման վրա հիմնված ազգամիջյան նոր հարաբերություն-

ների ձևավորման ուղղությամբ սովետական պետության վիթխարի գործունեության արդյունքների պարզաբանմանը.

կուսակցության XXIV համագումարի լենինյան կուրսի պարզաբանմանը, որը սահմանեց երկրի տնտեսական ու սոցիալ-քաղաքական զարգացման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման, ՍՍՀՄ ազգերի և ազգությունների ծաղկման ու աստիճանական մերձեցման, համաժողովրդական սոցիալիստական պետականության ու դեմոկրատիայի զարգացման և ամրապնդման հեռանկարները:

Հավանություն տալ ՍՍՀՄ Միության հոբելյանը արժանավայել դիմավորելու և իններորդ հնգամյակի երկրորդ տարվա պլանը ժամկետից շուտ կատարելու համար սոցիալիստական լայն մրցություն ծավալելու՝ ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների առաջավոր կոլեկտիվների նախաձեռնությանը:

Սովետական Միության 50-ամյակի նախապատրաստությունը ակտիվորեն օգտագործել աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության հետագա բարելավման համար: Սովետական մարդկանց, երիտասարդությանը պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական մեծ հայրենիքին՝ ՍՍՀ Միությանը անսահման նվիրվածության ոգով, նրա բարգավաճման նկատմամբ հոգատարության ոգով դաստիարակելը կոմունիստական հասարակական գիտակցության ձևավորման կարևոր կողմն է:

Ինտերնացիոնալ դաստիարակությունը հանդես է գալիս որպես բոլոր կուսակցական, սովետական, տնտեսական, կուլտուրական և հասարակական կազմակերպությունների, մեր բոլոր կադրերի հիմնական խնդիրներից մեկը կենտրոնում ու տեղերում, յուրաքանչյուր հանրապետությունում, երկրամասում, մարզում, յուրաքանչյուր կոլեկտիվում: Հարկավոր է այդ աշխատանքում համակողմանիորեն օգտագործել Սովետական Միության բոլոր հանրապետությունների բանվոր դասակարգի, աշխատավորության հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթները, ավելի լայնորեն ցույց տալ, որ ազգամիջյան հարաբերությունների հետագա զարգացումը, ժողովուրդների բարեկամության ամրապնդումը, սոցիալիստական ազգերի ծաղկման ու մերձեցման պրոցեսները բարերար ազդեցություն են ունենում սովետական հասարակության կյանքի բոլոր ոլորտների՝ էկոնոմիկայի ու քաղաքականության, գաղափարախոսության և բարոյականության, կուլտուրայի և կենցաղի վրա:

Յուրաքանչյուր կոմունիստի պարտքն է մասսաների մեջ ըստ ամենայնի ամրապնդել միասնական սոցիալիստական հայրենիքին, նոր հասարակարգ կառուցողների ինտերնացիոնալ մեծ բանակին պատկանելու գիտակցությունը: Անհրաժեշտ է այսուհետև ևս աշխատավորներին դաստիարակել բոլոր ազգերի և ազգությունների նկատմամբ խոր հարգանքի ոգով, նացիոնալիզմի ու շովինիզմի մնացուկների, տեղայնության դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով, ապահովել հետևողական դասակարգային, խիստ գիտական մոտեցում ժողովուրդների պատմության գնահատման հարցում:

Կուսակցական կազմակերպությունները պետք է ելնեն այն բանից, որ ազգային հարցը սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև մղվող պայքարի, բուրժուական ու ռևիզիոնիստական գաղափարախոսության դեմ մարքսիզմ-լենինիզմի պայքարի սուր տեղամասերից մեկն է: Ջգտելով թուլացնել սոցիալիզմի դիրքերը, պառակտում մտցնել միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման շարքերի մեջ, ճնշել ազգային-ազատագրական շարժումը, իմպերիալիստները լայնորեն դիմում են ռասիզմի բարբոջմանը, փորձում են ազգային հողի վրա տարանջատել աշխատավորության տարբեր ջոկատներին:

Բուրժուական պրոպագանդան ձգտում է նացիոնալիստական հայացքներ արմատավորել սոցիալիստական երկրների ժողովուրդների գիտակցության մեջ, նացիոնալիզմն օգտագործել սոցիալիստական երկրների խարխլման համար: Խնդիրն այն է, որ մշտապես պրոպագանդվեն պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության գաղափարները, ժամանակին քաղաքական գնահատական տրվի նացիոնալիստական



տրամադրություններն ու հայացքները վերածնելու թշնամական փորձերին: Անհրաժեշտ է վճռականորեն մերկացնել հակակոմունիզմի, աջ և «ձախ» ռևիզիոնիզմի, նացիոնալիզմի և շովինիզմի գաղափարախոսներին:

ՀԱՄԿԽ-ին հանձնարարել իրականացնել այնպիսի միջոցառումներ, որոնցով նախատեսվի արհմիությունների լայն մասնակցությունը ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյակի նախապատրաստմանն ու տոնակատարությանը: Այդ ամբողջ աշխատանքը տանել ՍՍՀ Միության ամրապնդման գործում կոմունիստական կուսակցության գլխավորությամբ բանվոր դասակարգի ղեկավար դերն ուժեղացնելու, ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած տնտեսական և կուլտուրական շինարարության համաժողովրդական խնդիրների լուծման գործում բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության, բոլոր աշխատավորների ստեղծագործական ակտիվությունն է՛լ ավելի զարգացնելու նշանաբանով:

ՀամԼԿԵՄ Կենտկոմին հանձնարարել միջոցառումներ իրականացնել ՍՍՀՄ-ի 50-ամյակի նախապատրաստմանն ու տոնակատարությանը կոմերիտականների, երիտասարդների մասնակցության ուղղությամբ: Կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի նպատակը պետք է լինի աճող սերնդին դաստիարակել կոմունիստական գաղափարայնության ոգով, մեր սովետական հայրենիքին նվիրվածության, ժողովուրդների անխախտ բարեկամության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով: Հատուկ ուշադրություն դարձնել այն բանին, որ կոմերիտականները, ամբողջ երիտասարդությունը ուսումնասիրեն ազգային հարցի մարքս-լենինյան տեսությունը, ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականությունը, ՍՍՀ Միության նվաճումները, յուրացնեն կոմունիստական կուսակցության և լենինյան կոմերիտմիության փառավոր ինտերնացիոնալիստական ավանդույթները, որ պատանիներն ու աղջիկները ակտիվորեն մասնակցեն ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կատարման պայքարին:

Հանձնարարել ՍՍՀՄ պաշտպանության մինիստրությանը և սովետական բանակի ու ռազմա-ծովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչությանը, սույն որոշմանը համապատասխան, հրամանատարների, քաղօրգանների, կուսակցական կազմակերպությունների համար ցուցումներ մշակել ՍՍՀ Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության կապակցությամբ պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական լայն աշխատանք ծավալելու մասին: Քաղաքական աշխատանքը նպատակամղել բոլոր ազգությունների ռազմիկների բարեկամության ու եղբայրության հետագա ամրապնդմանը, մեր հայրենիքի, սոցիալիստական երկրների համագործակցության նվաճումների համար հպարտության դաստիարակմանը, ժողովուրդների հեղափոխական նվաճումները՝ զենքը ձեռքին պաշտպանելու պատրաստակամությանը:

«Պրավդա», «Իզվեստիա», «Սոցիալիստիչեսկայա ինդուստրիա», «Սելսկայա ժիզն», «Սովետսկայա Ռոսիա», «Էկոնոմիչեսկայա գազետա», «Տրուդ», «Կոմսոմոլսկայա պրավդա» թերթերի, «Կոմունիստ», «Պարտիյնայա ժիզն», «Պոլիտիչեսկոյե սամոօբրազովանիե», «Ագիտատոր» հանդեսներին և մյուս կենտրոնական թերթերի ու հանդեսների խմբագրություններին, ՏԱՍՍ-ին, ՍՍՀՄ Մինիստրների սովետի հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների պետական կոմիտեին և նրա տեղական մարմիններին, հանրապետական, երկրամասային, մարզային, քաղաքային ու շրջանային թերթերի և հանդեսների խմբագրություններին հանձնարարել կազմակերպել ՍՍՀՄ-ի 50-ամյակի նախապատրաստության, լենինյան ազգային քաղաքականության հաջողությունների, նրա միջազգային նշանակության լայն լուսաբանումը:

Անհրաժեշտ է կենտրոնական ու տեղական մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն է՛լ ավելի լայնորեն օգտագործել աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության համար, համակողմանիորեն լուսաբանել բոլոր սովետական հանրապետությունների կյանքը, նրանց եղբայրական համագործակցությունը, հենվելով հեղինակային բազմազգ լայն ակտիվի՝ առաջավոր բանվորների ու կոլտնտեսականների, գիտնականների, ստեղծագործական

մտավորականության ներկայացուցիչների, կուսակցական ու սովետական աշխատողների, արդյունաբերության և գյուղատնտեսության մասնագետների վրա:

ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտին, հասարակական գիտությունների ակադեմիային և բարձրագույն կուսակցական դըպրոցին, ՀԱՄԿԽ-ին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային, ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությանը, ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը, ՍՍՀՄ լուսավորության մինիստրությանը, ՍՍՀՄ արդարադատության մինիստրությանը, ՍՍՀՄ Մինիստրների սովետի հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների պետական կոմիտեին, ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեին, ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր կինեմատոգրաֆիայի կոմիտեին, ՍՍՀՄ Մինիստրների սովետի պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության պետական կոմիտեին, ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր ֆիզիկական կուլտուրայի ու սպորտի կոմիտեին, «Գիտելիք» համամիութենական ընկերության վարչությանը, ՍՍՀՄ գրողների միության, ՍՍՀՄ կինեմատոգրաֆիստների միության, ՍՍՀՄ նկարիչների միության, ՍՍՀՄ կոմպոզիտորների միության, ՍՍՀՄ ճարտարապետների միության, ՍՍՀՄ ժուռնալիստների միության վարչություններին հանձնարարել անհրաժեշտ միջոցառումներ իրականացնել ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյակի կապակցությամբ, մասնավորապես նախատեսելով հետևյալը.

տպագրության պատրաստել և հրատարակել քաղաքական, գիտական ու գեղարվեստական գրականություն, կազմակերպել տեսական կոնֆերանսներ, գիտական նստաշրջաններ, ցուցահանդեսներ, փառատոներ, նախապատրաստել և թողարկել ֆիլմեր, անցկացնել լավագույն գիտական աշխատանքների, գրականության և արվեստի ստեղծագործությունների մրցույթներ, պրոֆեսիոնալ և ինքնագործ գեղարվեստական կոլեկտիվների ու կատարողների ելույթներ Մոսկվայում, Լենինգրադում, միութենական հանրապետություններում, անցկացնել ստեղծագործական միությունների պլենումներ, մասսայական սպորտային մրցումներ, սպարտակիադաներ և այլն:

* * *

ՍՄԿԿ Կենտկոմը բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը, ժողովրդական մտավորականությանը կոչ է անում Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության փառապանծ հոբելյանը նշանավորել կուսակցության XXIV համագումարի որոշումների իրականացման, մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքի հզորության ամրապնդման, էկոնոմիկայի զարգացման, կուլտուրական շինարարության, աշխատավորների բարեկեցության բարձրացման ասպարեզում ձեռք բերած նոր նվաճումներով:

ՍՄԿԿ Կենտկոմը վստահություն է հայտնում, որ Սովետական Միության կազմավորման 50-ամյակը նորից վառ կերպով կցուցադրի ՍՍՀՄ ազգերի և ազգությունների միասնությունը, նրանց համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը, հավատարմությունը ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության սկզբունքներին:

Մեր երկրի ժողովուրդները, պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան դրոշի ներքո, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, իրականացրին սոցիալիստական հեղափոխություն, պաշտպանեցին նրա նվաճումները քաղաքացիական կռիվներում և Հայրենական մեծ պատերազմում:

Նրանք միասնական համերաշխ ընտանիքով կառուցեցին զարգացած սոցիալիզմ:

Սովետական ժողովուրդների ամրապնդվող միասնությունն ու անխախտ բարեկամությունը կոմունիզմի կառուցման գալիք հաղթանակների գրավականն է:



Ա. Կ. ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԸ

*1971 թվականի նոյեմբերի վերջերին ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիան քննեց և հաստատեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների պետական հնգամյա պլանը: Այդ պլանով նախատեսած սոցիալ-տնտեսական խոշոր խնդիրների լուծման համար անհրաժեշտ են հըսկայական լրացուցիչ նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսներ: Դրանք պետք են, նախ, առաջիկայում ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի զգալի վերելքն ապահովելու համար, ինչպես դա նախատեսված է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներով: Բավական է ասել, որ միայն բնակչության դրամական եկամուտների աճը 1975 թվականին, 1970 թվականի համեմատությամբ, ապահովելու համար կպահանջվի 78 միլիարդ ռուբլի, որից 22 միլիարդ ռուբլի կկազմեն աշխատավարձի դրույքների, կենսաթոշակների, նպաստների, կրթաթոշակների չափերի բարձրացման և այլ խնդիրների լուծման հետ կապված հատկացումները:*

*Բացի վերոհիշյալից, մեծ մասշտաբների հասնող լրացուցիչ միջոցներ են պետք, որպեսզի արագացվի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների հետագա առաջխաղացումը, նրանց տեխնիկական վերազինումն ու կատարելագործումն այնպես, ինչպես հրամայաբար պահանջում են ժամանակակից գիտությունն ու տեխնիկան:*

Սովետական Միության տնտեսական զարգացման արդի փուլում, երբ այդ զարգացման էքստենսիվ հնարավորությունները նվազում են, հիշատակած լրացուցիչ ռեսուրսների հայթայթման ամենահուսալի աղբյուր դառնում է հասարակական արտադրության արդյունավետության առավելապես բարձրացումը, նրա ինտենսիվացումը:

*Իրոք, մինչև վերջերս մեր երկրի տնտեսական զարգացման գործոնների մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ մեկտեղ, էական դեր էր խաղում նյութական արտադրության ընդլայնումը՝ նրանում աշխատողների թվի ավելացման և հարաբերականորեն մեծ կշիռ ունեցող արտա-*

դրական կուտակումների հաշվին։ Այլ կերպ ասած, տնտեսության զարգացման էքստենսիվ բնույթը, թեև պատմականորեն հետզհետե մեղմանում էր, բայց դեռևս իրեն զգալ էր տալիս։ Ներկայումս այլ իրադրություն է ստեղծվում։ Ինչպես ասված է XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ, «1971—1975 թվականներին, անցյալ հնգամյակի համեմատությամբ, կրճատվում են լրացուցիչ աշխատուժի ներգրավման հնարավորությունները։ Իրենց սահմաններն ունեն նաև կապիտալ ներդրումների աճի տեմպերը»։ Ավելին, նոր հնգամյակում, ժողովրդի կենսամակարդակի բարձրացումն ապահովելու նպատակով, ազգային եկամտի կուտակման բաժինը անհրաժեշտաբար կայունանում և մասամբ փոքրանում է այն հաշվով, որպեսզի նրանում ավելանա սպառման ֆոնդի բաժինը։

Այսպիսով հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը այժմ օբյեկտիվ անհրաժեշտություն է, մեր երկրի տնտեսական հետագա զարգացման հրամայական պահանջը։

Բայց ի՞նչ պետք է հասկանալ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացում ասելով։ Այն բազմաբովանդակ հասկացողություն է։ Հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրանում է, երբ արտադրությունը զարգանում է արագ, կայուն տեմպերով, ունենալով արտադրական ճյուղերի առաջադիմական կառուցվածք և բալանսավորվածություն, համամասնությունների պահպանման բարձր աստիճան: Բացի դրանից, արտադրության արդյունավետությունը բարձրանում է, երբ արտադրության ընդլայնման հետ մեկտեղ ըստ ամենայնի խնայվում է կենդանի և առարկայացած աշխատանքը, կրճատվում են արտադրանքի նյութատարությունը, աշխատատարությունը, ֆոնդատարությունը և կապիտալատարությունը: Ինչպես տեսնում ենք, խոսքը արտադրության վրա կատարվող ընթացիկ և միանվագ ծախսերի կրճատման մասին է։ Ընթացիկ ծախսերը կազմում են թողարկվող արտադրանքի ինքնարժեքը։ Նրա մակարդակը, անկասկած արտադրության արդյունավետությունը բնորոշող կարևոր ցուցանիշ է։ Բայց սահմանափակվել միայն այդ ցուցանիշով չի կարելի։ Անհրաժեշտ է հաշվի առնել նաև այն միանվագ ծախսերի մեծությունը, որ նախապես, կապիտալ ներդրումների ձևով, կատարվում է համապատասխան արտադրություն ստեղծելու համար։ Ընթացիկ և միանվագ ծախսերի կրճատումը, երբ դա զուգակցվում է արտադրության ընդլայնմամբ, բարձրացնում է արդյունաբերության ճյուղի և առանձին վերցրած ձեռնարկության շահութաբերությունը։ Այն, մեծածախ գների և թողարկվող արտադրանքի ասորտիմենտի կայունության պայմաններում, բնորոշում է արտադրության արդյունավետության աճը։

Հասարակական արտադրության արդյունավետության աճը հավասարազոր է հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման: Ընդ որում, ի տարբերություն անհատական (կենդանի) աշխատանքի արտադրողականությունից, հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացումը ենթադրում է կենդանի և առարկայացած աշխատանքի խնայողություն։ «Աշխատանքի արտադրողականության բարձրացումը,— ասել է Կ. Մարքսը,— հենց այն է, որ կենդանի աշխատանքի բաժինը նվազում է, իսկ անցյալ աշխատանքինը՝ աճում, բայց աճում է մի այնպիսի հարաբերությամբ, որ ապրանքի մեջ պարունակվող աշխատանքի ամբողջ գումարը նվազում է, որ ուրեմն կենդանի աշխատանքն ավելի շատ է նվազում, քան անցյալ աշ-



խատանքն ավելանում է» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, գիրք 2, Ե., 1947 թ. էջ 244)։ Զմոռանանք շեշտել, որ Լենինը խոսելով աշխատանքի արտադրողականության բարձրացման, որպես նոր հասարակարգի հաղթանակի ամենագլխավոր և ամենակարևոր նախապայմանի մասին, միաժամանակ ընդգծում էր տնտեսական հաշվարկի արմատավորման նշանակությունը, որպես արտադրության բոլոր տարրերի զուգակցված, համատեղ բարձր արդյունավետությամբ օգտագործման միջոց (տե՛ս Երկ., հ. 33, էջ 46, հ. 35, էջ 589)։

Բոլորովին չթերագնահատելով անհատական (կենդանի) աշխատանքի արտադրողականության բարձրացման մեծագույն նշանակությունը, քանի որ այն միաժամանակ նպաստում է առարկայացած աշխատանքի խնայողության, այնուհանդերձ պետք է ընդգծել, որ վերջինիս դերը երկրի ազգային եկամտի ֆիզիկական ծավալի ավելացման մեջ ներկայումս խիստ մեծանում է։ Դա բացատրվում է նրանով, որ արտադրողական ուժերի զարգացման հետևանքով հասարակական համախառն արդյունքի մեջ նյութական-արտադրական ծախքերի բաժինը ավելանում է։ Այսպես, 1966 թ. միջճյուղային հաշվեկշռի տվյալներով այն կազմել է 54,4 տոկոս (տե՛ս «Народное хозяйство СССР в 1967 г.», стр. 112)։

Հասարակական աշխատանքի արտադրողականության մակարդակը որոշվում է՝ երկրի ազգային եկամտի ֆիզիկական ծավալը բաժանելով նյութական արտադրության ոլորտում գործադրված աշխատաժամանակի վրա։ Որքան լավ և ռացիոնալ են օգտագործվում հումքը, նյութերը, վառելիքը, արտադրական կարողությունները , աշխատուժը, այնքան արագ է աճում ազգային եկամտի ֆիզիկական ծավալը։ Կնշանակի, այդ հիման վրա բարձրանում է նաև հասարակական աշխատանքի արտադրողականությունը։ Արդյունաբերության ճյուղի մասշտաբով հասարակական աշխատանքի արտադրողականության ցուցանիշը հաշվարկվում է որպես մաքուր արդյունքի և ծախսված աշխատաժամանակի հարաբերություն։

Ինչպես տեսանք, հասարակական աշխատանքի արտադրողականության ցուցանիշը, վերջին հաշվով, ընդհանրացած ձևով արտահայտում է արտադրության անձնական և իրային բոլոր տարրերի օգտագործման աստիճանը։ Խոսքը հիմնական և շրջանառու ֆոնդերի, կապիտալ ներդրումների, կենդանի աշխատանքի մասին է։ Այդ առումով արտադրանքի նյութատարությունը, ֆոնդատարությունը, կապիտալատարությունը և աշխատատարությունը հանդես են գալիս որպես հասարակական արտադրության առանձին տարրերի օգտագործման արդյունավետությունը բնորոշող ցուցանիշներ։ Ընդ որում, թված չորս ցուցանիշների մեծությունը որոշում է արտադրության վրա ծախսված նյութական արժեքների, գործադրած արտադրական ֆոնդերի, կատարած կապիտալ ներդրումների, ծախսած աշխատաժամանակի մեծությունները, առանձին վերցրած, բաժանելով թողարկած արտադրանքի ծավալի վրա։

Հասկանալի է, որ մյուս հավասար պայմաններում, որքան ցածր լինի թողարկած արտադրանքի նյութատարությունը, ֆոնդատարությունը, կապիտալատարությունը և աշխատատարությունը, այնքան կբարձրանա հասարակական աշխատանքի արտադրողականությունը, կբարձրանա նաև արտադրության արդյունավետությունը։

Բավական է ասել, որ արդյունաբերության առկա արտադրական հիմնական ֆոնդերի ֆոնդահատույցի նույնիսկ մեկ կոպեկով ավելացումը, որ կնշա-

նակի արտադրանքի ֆոնդատարության իջեցում, կապահովեր արդյունաբերա-
կան արտադրանքի շուրջ 2 միլիարդ ռուբլու հավելում: Նույնը կարելի է ասել
նյութատարության, աշխատատարության, կապիտալատարության կրճատման
մասին: Այս վերջին երկու ցուցանիշների նշանակությունը առանձնապես մեծ
է լեռնային, վառելիքի և արդյունահանող այլ ճյուղերի համար: Արտադրու-
թյան այդ հումքային ճյուղերը աչքի են ընկնում բարձր կապիտալատարու-
թյամբ և աշխատատարությամբ: Կարևոր է այս կապակցությամբ նշել, որ
որքան կապիտալատարությունն ու աշխատատարությունն արդյունահանող
ճյուղերում ցածր լինեն, այսինքն բարձրանա աշխատանքի արտադրողակա-
նությունը և ներդրվող կապիտալ միջոցների տնտեսական արդյունավետու-
թյունը, այնքանով էլ վերջնական արդյունքի, այդ թվում սպառման առար-
կաների նյութատարությունը կկրճատվի: Դա մեծապես կնպաստի հասարա-
կական արտադրության արդյունավետության բարձրացմանը:

Ինչպես տեսանք, արտադրության արդյունավետությունը բնորոշող ցու-
ցանիշների համակարգը ընդգրկում է աշխատանքի արտադրողականությունը,
ֆոնդահատույցը, տեսակարար կապիտալատարությունը և նյութատարությու-
նը: Այստեղ պետք է ավելացնել նաև արտադրանքի որակի ցուցանիշը:

Ինչպես հայտնի է, ներկայումս նոր, բարձրորակ արտադրանքի մեծածախ
գները հաստատվում են այն հաշվով, որպեսզի այդ արտադրանքի լավագույն
տեխնիկա-տնտեսական ցուցանիշները, մի կողմից, շահագրգռեն սպառողին,
շահավետ լինեն նրա համար, իսկ, մյուս կողմից, թողարկող ձեռնարկությու-
նում ապահովեն նոր արտադրանքի, հնի համեմատությամբ, ավելի բարձր
շահութաբերություն: Արտադրանքի որակի բարձրացումը համասարազոր է
այդ արտադրանքի քանակի ավելացման: Բարձրորակ արտադրանքը նպաս-
տում է ընթացիկ և միանվագ ծախսերի կրճատմանը: Հետևաբար, որակի
բարելավումը նույնպես պետք է համարել հասարակական արտադրության
արդյունավետության բարձրացման չափազանց կարևոր գործոններից մեկը:

Հարկ կա, սակայն, զգուշացնել, որ արտադրության արդյունավետության
մակարդակի մեջ եղած տեղաշարժերի որոշումը բնավ էլ պարզունակ չէ, ինչ-
պես դա արտաքուստ կարող է թվալ: Խնդիրն այն է, որ արդյունաբերական
ձեռնարկություններում անցկացվող տեխնիկա-տնտեսական և կազմակերպա-
կան բնույթի միջոցառումների ազդեցության ներքո արտադրության վրա կա-
տարվող ծախսերի առանձին տարրերը, որպես կանոն, տարբեր հարաբերու-
թյամբ են կրճատվում: Օրինակ, աշխատատարությունը կարող է համեմատա-
բար արագ կրճատվել, քան ֆոնդատարությունն ու նյութատարությունը: Ավե-
լին, բացառված չէ, որ, երբ խնդիր է դրվում բարելավել թողարկվող արտա-
դրանքի որակը, արտադրանքի նյութատարությունն ու աշխատատարությունն
ավելանա, իսկ ֆոնդատարությունը, ընդհակառակը, պակասի:

Հասկանալի է, որ նման պայմաններում արտադրանքի նյութատարու-
թյան ու աշխատատարության ավելացումը չի կարելի անվերապահորեն հա-
մարել որպես արտադրության արդյունավետության իջեցման նշան:

Որոշ դեպքերում գործարանի կամ ֆաբրիկայի արտադրանքի ֆոնդատա-
րությունը կարող է աճել, իսկ ֆոնդահատույցը կրճատվել: Եթե այդ հիման
վրա բարձրանում է արտադրության տեխնիկական մակարդակը և աշխատան-
քի ֆոնդազինվածությունը, ապա այստեղ ոչ մի վատ բան չպետք է փնտրել:
Չէ որ ֆոնդազինվածության աճը կնպաստի աշխատանքի արտադրողակա-



նության բարձրացմանը: Արտադրանքի միավորի վրա աշխատավարձի տեսա-
կարար ծախսումները դրա շնորհիվ կկրճատվեն, իսկ արտադրության տեխնի-
կական մակարդակի բարձրացումը կարող է նյութական ռեսուրսների խնայո-
ղության նոր, մեծ հնարավորություններ գոյացնել:

Նշանակում է, ֆոնդատարության աճը կարդարանա, եթե ֆոնդազինվա-
ծության և արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման շնորհիվ
կենդանի և առարկայական աշխատանքի տնտեսումը գերազանցի այն ժամա-
նակավոր կորուստը, որ առաջանում է ֆոնդահատույցի նվազեցման պատ-
ճառով:

Նույնը կարելի է ասել աշխատատարության մասին: Եթե այս ցուցանիշն
անջատվի արտադրության այլ տարրերի օգտագործումից, արտադրության ար-
դյունավետության ընդհանուր պատկերը կարող է աղավաղվել: Աշխատատա-
րության ցուցանիշը նույնպես չի կարող բացարձակ նշանակություն ունենալ:
Օրինակ, արտադրանքի աշխատատարության ավելացումը, երբ այն հետա-
պնդում է արտադրանքի որակի բարելավում, միանգամայն նպատակահար-
մար է, եթե աշխատատարության աճը լրիվ փոխհատուցվում է արտադրանք
թողարկող ձեռնարկության շահույթի ավելացմամբ և այդ արտադրանքը
սպառողների մոտ ստացվող միջոցների տնտեսմամբ: Հասկանալի է, իհարկե,
որ որակի բարելավումը միշտ չէ, որ պայմանավորվում է միայն աշխատան-
քային կամ նյութական լրացուցիչ ծախսումներով:

Վերը բերված նկատառումներից հետևում է, որ նյութատարության,
ֆոնդատարության, կապիտալատարության և աշխատատարության ցուցանիշ-
ները պետք է քննել ու գնահատել հասարակական արտադրության արդյունա-
վետության տեսանկյունից՝ ամբողջությամբ վերցրած: Այլ կերպ ասած, ար-
դյունաբերության ճյուղի կամ առանձին վերցրած ձեռնարկության արտա-
դրության արդյունավետության աստիճանը բնորոշող հիշատակած ցուցանիշ-
ների ուսումնասիրությունը պետք է կատարվի ոչ թե մեկը մյուսից անջատ,
այլ համատեղ: Ընդ որում, պետք է հաշվի առնվեն ժամանակի նույն միա-
վորին վերաբերող արտադրության թե՛ ընթացիկ և թե՛ միանվագ ծախսերը: Այլ
կերպ կարելի է սխալ հետևությունների հանգել:

* * *

Ժամանակակից արտադրության տեխնիկական բազան չի կարող զարգա-
նալ և կատարելագործվել առանց հաշվի առնելու գիտության և տեխնիկայի
նվաճումները: Արդյունաբերական արտադրության արդյունավետությունը մեծ
չափով, հաճախ նույնիսկ թռիչքաձև, բարձրանում է, երբ գիտության նորա-
գույն նվաճումների հիման վրա կատարելագործվում են արտադրության տեխ-
նիկան և տեխնոլոգիան, նրա ճյուղային կառուցվածքը:

Գիտությունը ներկայումս, հիրավի, դարձել է անմիջական արտադրողա-
կան ուժ: Գիտական հայտնությունների և նրանց տեխնոլոգիական կիրառման
միջև ընկած ժամանակամիջոցը այժմ խիստ կրճատվել է: Այսպես, անցյալում
56 տարի պահանջվեց, որպեսզի հեռախոսի գյուտը կյանքում լայնորեն ներ-
դրվեր: Հեռուստացույցի և ռադիոյի համար այդ ժամանակամիջոցը արդեն
կազմեց 14 տարի, իսկ լազերային, տրանզիստորային տեխնիկայի համար՝
միայն 4—5 տարի:

Այստեղից հետևում է, որ կշահի այն ձեռնարկությունը, արտադրության
այն ճյուղը, վերջապես, այն երկիրը, որ առանց հապաղումների առաջինը

լայն չափերով կկարողանա օգտվել ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումներից։

Բացի տեխնիկական առաջադիմությունից, արտադրության արդյունավետության բարձրացման վրա, անշուշտ, ազդում են նաև այլ գործոններ։ Այդպիսիք են՝ արտադրության պլանավորման և կառավարման, ինչպես նաև նրա հասարակական կազմակերպման ձևերի կատարելագործումը, արտադրության տեղաբաշխման բարելավումը, բնական պայմանները, արտադրության և աշխատանքի գիտական հիմունքներով կազմակերպումը, բանվորների, ինժեներա-տեխնիկական անձնակազմի և ծառայողների որակավորման բարձրացումը, արտադրության տնտեսական խթանման ուժեղացումը, նյութական ու բարոյական խրախուսման գործուն սիստեմի կիրառումը և այլն։ Թված գործոններից և ոչ մեկը, իհարկե, թերագնահատել չի կարելի։ Այնուհանդերձ, տեխնիկական առաջընթացի արագացումը հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման տեսակետից վճռական նշանակություն ունի։ Ահա թե ինչու ներկայումս այն առաջին պլանի վրա է մղվում։

Տեխնիկական առաջադիմությունն ընդգրկում է արդյունաբերական արտադրության բոլոր կողմերը։ Կուսակցության XXIV համագումարը նշեց, որ ժողովրդական տնտեսության, այդ թվում արդյունաբերության հարաճուն էլեկտրիֆիկացումը, կոմպլեքսային մեքենայացումը և ավտոմատացումը, ինչպես նաև քիմիացումը հանդիսանում են որպես տեխնիկական առաջընթացի հիմնական ուղղություններ։

Արդյունաբերության մեջ տեխնիկական առաջադիմությունը, նախ և առաջ, արտահայտվում է նրանում, որ ստեղծվում և յուրացվում են սկզբունքորեն նոր հիմունքներով գործող, առավել կատարյալ, բարձր արտադրողական մեքենաներ, սարքեր, տեխնոլոգիական բնույթի ապարատներ, աշխատանքի մեքենայացման և ավտոմատացման միջոցներ։ Դրանք շահագործման ընթացքում ոչ միայն խնայողաբեր են, այլև միավոր կարողության հաշվով ունեն պակաս քաշ, ծավալ և գին։ Նման հաստոցների, մեքենաների, ապարատների միջոցով թողարկված արտադրանքի ինքնարժեքը լինում է ցածր, իսկ տեսակարար կապիտալատարությունը, հների համեմատությամբ՝ պակաս։

Նոր հնգամյակում աշխատանքի միջոցների արտադրությունը կավելանա 1.6 անգամ։ Այս բնագավառում նախատեսվում է արտադրության ավելի արագ աճ, քան արդյունաբերության մեջ ամբողջությամբ վերցրած։ 1971—1975 թվականների ընթացքում պետք է ստեղծվեն մոտավորապես 25 հազար նոր մեքենա, մեխանիզմ, ապարատ, սարք և յուրացվի ավելի քան 19 հազարի արտադրությունը։

Հաստոցաշինության մեջ խնդիր է դրվում ավելացնել առաջադիմական տեխնոլոգիայի հիմունքներով, հատկապես օպերացիաների ինտեգրացման սկզբունքով աշխատող հաստոցների, դարբնա-մամլիչ, ձուլման, զոդման սարքավորումների, հղկման և վերջնամշակման հաստոցների թողարկման տեսակարար կշիռը։ Նոր հնգամյակում ոչ պակաս, քան 3,5 անգամ կավելանա թվային ծրագրված կառավարում ունեցող հաստոցների թողարկումը, որոնք ապահովում են աշխատանքի արտադրողականության բարձրացումը 3—4 անգամ։ Խնդիր է դրվում նաև ավելացնել ներգործարանային ամբարձիչ-փոխադրամիջոցների արտադրությունը, ձեռքի մեքենայացված գործիքների, հատուկ սարքերի և տեխնոլոգիական սարքավորանքի թողարկումը և այլն։



Հայաստանում այս հնգամյակում կյուրացվի 132 նոր տեսակի արդյունաբերական արտադրանքի սերիական արտադրություն, կիրականացվեն արտադրական պրոցեսների 306 մեքենայացման և 362 ավտոմատացման միջոցառումներ։ Նախատեսվում է ստեղծել մոտ 50 ավտոմատացված, 15 կոմպլեքսային ավտոմատացված արտադրամասեր ու տեղամասեր, 350 ավտոմատացված գծեր ու կոնվեյերներ և մեքենայացված մոտ 400 հոսքային գծեր։

Մեքենաշինության ասպարեզում գլխավորը համարվում է հիմնական տեխնոլոգիական ագրեգատների, մեքենաների ու սարքավորումների միավոր կարողության մեծացումը։ Այդ հանգամանքը նյութական նախադրյալներ է ստեղծում արտադրության համակենտրոնացման, նրա մասշտաբների ընդլայնման համար։ Իսկ այս վերջինը նպաստում է արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Օրինակ, Հրազդանի շրջանային ջերմաէլեկտրակայանում տեղադրած 200 հազար կիլովատ կարողությամբ էներգոբլոկները, 50 հազար կիլովատ կարողությամբ էներգոբլոկների համեմատությամբ, ունեն մեծ առավելություններ։ Կիլովատ կարողության հաշվով այստեղ կապիտալ ներդրումները պակաս են, իսկ վառելիքի պոտենցիալ էներգիայի օգտագործման գործակիցը՝ բարձր։ Այս հանգամանքը և էներգիայի համակենտրոնացման շնորհիվ այլ ծախսերի հարաբերականորեն պակասումը ապահովում է 1 կիլովատ ժամ էլեկտրաէներգիայի ցածր ինքնարժեքը։ Սակայն Հրազդանի ջերմաէլեկտրակայանի էներգոբլոկները սահմանային մեծություններ չեն։

Միության այլ ջերմաէլեկտրակայաններում տեղակայվել են 300, 500 հազարանոց բլոկներ։ Նոր հնգամյակում կգործարկվեն բլոկներ, որոնց միավոր կարողությունը կկազմի 800 հազար և նույնիսկ 1 միլիոն 200 հազար կիլովատ։

Տեխնիկական առաջադիմությունը բուն էլեկտրաէներգիայի բնագավառում կոչված է ապահովելու էլեկտրաէներգիայի այն վիթխարի աճը (1975 թվականին 1065 միլիարդ կիլովատ ժամ), որ նախատեսված է իններորդ հնգամյա պլանով։ Մյուս կողմից, էլեկտրաէներգիայի արտադրության արագ աճը անհրաժեշտ նյութական նախադրյալներ կստեղծի տեխնիկական առաջընթացի բոլոր մյուս ուղղությունների համար, քանի որ էլեկտրաէներգիան կազմում է ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության ամենադինամիկ, առաջատար տարրը։

Սև մետալուրգիայի գծով նոր հնգամյակում նախատեսվում է կառուցել գերհզոր 5000 խորանարդ մետր ծավալ ունեցող դոմնային վառարաններ։ Դրանք 200 հազար խորանարդ մետր ծավալ ունեցող վառարանների համեմատությամբ կապահովեն աշխատանքի արտադրողականության աճ 60 տոկոսով, իսկ տեսակարար կապիտալ ներդրումների իջեցում՝ 12 տոկոսով։ Նման մեկ հզոր վառարան տարեկան կարտադրի 4 միլիոն տոննա չուգուն, այսինքն այնքան, որքան 1913 թ. արտադրել է ամբողջ ցարական Ռուսաստանը։

Արդյունաբերության մեջ տեխնիկական առաջընթացի առանձնահատկությունը ներկայումս այն է, որ անջատ գործող առանձին մեքենաների և սարքերի փոխարեն այժմ ստեղծվում են մեքենաների այնպիսի սիստեմներ, որոնց միջոցով հնարավոր է դառնում համակողմանիորեն մեքենայացնել արտադրության թե՛ հիմնական և թե՛ օժանդակ պրոցեսները։ Խոսքը, այսպիսով արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման մասին է։ Այս խնդրի լուծման ասպարեզում, համաարդյունաբերական բնույթի միջոցառում-

ներից դուրս, շատ անելիքներ ունեն արդյունաբերական ձեռնարկությունների անխտիր բոլոր կոլեկտիվները: Ամենուրեք, տեղերում եղած ներքին ռեսուրսների մոբիլիզացման և օգտագործման շնորհիվ, հնարավորի սահմաններում, պետք է մեքենայացնել օժանդակ պրոցեսները, հատկապես բեռնման, բեռնաթափման, բեռնափոխադրումների, փաթեթման, պահեստային տնտեսության հաճախ անհրապույր ծանր աշխատանքները:

Ի դեպ, ՍՍՀՄ Կենտրոնական վիճակագրական վարչության տվյալներով, 1969 թվականին առանց մեքենաների ու սարքավորումների օգնության, զուտ ձեռքի աշխատանք կատարողները կազմել են ՍՍՀՄ արդյունաբերության բոլոր աշխատողների կեսից ավելին: Վիճակը նույնն է նաև Հայաստանում:

Որոշ տնտեսավարների հաշվարկներով, օժանդակ պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումը գրեթե 20 անգամ բարձրացնում է դրանցում զբաղված բանվորների աշխատանքի արտադրողականությունը: Այդ հիման վրա, ինչպես նաև օժանդակ աշխատանքների մասնագիտացման ու կենտրոնացման հաշվին, հնարավոր կլիներ արդյունաբերական արտադրության մեջ ազատել շուրջ 3,5—4 միլիոն բանվոր, որ հավասարազոր է աշխատանքի արտադրողականության 10—15 տոկոսի բարձրացման: Այս կապակցությամբ հարկ կա կանգ առնել մեր ձեռնարկությունների հերթափոխության գործակցի բարձրացման վրա: Այն արդարացիորեն համարվում է արդյունաբերական արտադրության արդյունավետության բարձրացման չափազանց ուշագրավ ռեզերվներից մեկը: Բավական է ասել, որ հերթափոխության գործակցի ավելացումը միայն ՍՍՀՄ մեքենաշինության մեջ, ՍՍՀՄ պետպլանի հաշվարկումներով, կարող է ապահովել 7—8 միլիարդ ռուբլի լրացուցիչ արտադրանք, միաժամանակ ժողովրդական տնտեսության մեջ խնայելով 6—7 միլիարդ ռուբլի կապիտալ ներդրումներ: Բայց ինչպե՞ս բարձրացնել հերթափոխության գործակիցը, երբ ամենուրեք բանվորական ձեռքերի պակաս է զգացվում:

Գործող արդյունաբերական ձեռնարկություններում երկրորդ և երրորդ հերթափոխությունները հնարավոր կլինի աշխատող ձեռքերով կոմպլեկտավորել հիմնականում արտադրության մեջ արդեն զբաղված աշխատուժը վերաբաշխելու միջոցով: Դրա համար անհրաժեշտ է լրջորեն զբաղվել հիմնական և, նամանավանդ, օժանդակ արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման, աշխատաժամանակի կորուստների վերացման, հաստոցների սպասարկման գոտիների ավելացման և բանվորների կողմից հարակից պրոֆեսիաների տիրապետման հարցերով: Այդ տեսակետից չափազանց ուսանելի է Շչոկինսկի քիմիական կոմբինատի փորձը: Այդ ձեռնարկությունում 1966—70 թվականների ընթացքում արտադրության ծավալը ավելացել է 98 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել՝ 140 տոկոսով: Հնարավոր է եղել վերաբաշխել հազար աշխատող:

Արդյունաբերության մեջ տեխնիկական առաջադիմությունը արտահայտվում է ոչ միայն մեքենաների, հաստոցների, այլև աշխատանքի առարկաների կատարելագործման մեջ: Խոսքը նոր, լավագույն հատկություններով օժտված շահեկան նյութերի ու հումքի տեսակների ստեղծման ու օգտագործման մասին է: Դրան պետք է ավելացնել էներգիայի նոր, առավել արդյունավետ աղբյուրների հայտնաբերումն ու օգտագործումը, ինչպես նաև արտադրության մեջ հնուց գործադրվող նյութերի հատկությունների բարելավումը: Աշխատանքի առարկաների կատարելագործումը մեծապես նպաստում է արտա-



դրանքի նյութատարության կրճատմանը, հետևապես և արդյունաբերական
արտադրության արդյունավետության բարձրացմանը:
Իններորդ հնգամյակում պետք է ստեղծվեն բարձր արդյունավետ շատ
նոր նյութեր. հատուկ պողպատներ, համաձուլվածքներ, մամլափոշիներ, մե-
տաղապլաստիկատներ, նոր կիսահաղորդչային, գերզուտ մագնիսական
նյութեր: Կընդլայնվի գերկարծր նյութերի, արհեստական բյուրեղների, քի-
միական թելանյութերի, պլաստմասսաների, սինթետիկ կաուչուկի և քիմիական
ծագում ունեցող այլ նյութերի արտադրությունն ու օգտագործումը:
Միջոցառումներ են կիրառվում, որպեսզի ձուլման համար անհրաժեշտ
հանքաքարերի նախնական վերամշակումը կատարելագործվի: Դա պետք է
նպաստի մետալուրգիական գործարանների արտադրական կարողությունների
օգտագործման բարելավման: Մյուս կողմից խնդիր է դրվում, որպեսզի մետա-
լուրգիան մեքենաշինությանը մատակարարի լայն ասորտիմենտի նախապատ-
րաստուկներ, որոնք նորմալ չափերի տեսակետից նվազագույն շեղումներ
կունենան: Այդ հիման վրա նախատեսվում է զգալիորեն կրճատել մեքենա-
շինական արտադրանքի աշխատատարությունը:
Տեխնիկական առաջընթացն իր ցայտուն արտահայտությունն է գտնում
տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման մեջ:
Խոսքը բարձր արդյունավետություն ունեցող տեխնոլոգիական պրոցես-
ների, արտադրության առաջավոր փորձի, գիտության և տեխնիկայի ժամա-
նակակից պահանջների համապատասխան հումքի, նյութերի մշակման նոր,
առաջավոր եղանակների ստեղծման ու յուրացման մասին է: Կարևոր է ընդ-
գծել գործող տեխնոլոգիական պրոցեսների ինտենսիվացման անհրաժեշտու-
թյունը:
Տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործումը կոմպլեքս բնույթ
ունի: Այն բարձրացնում է ձեռնարկության հիմնական և շրջանառու միջոցնե-
րի ու աշխատանքային ռեսուրսների օգտագործման աստիճանը: Այս հիման
վրա բարելավվում է նաև արտադրանքի որակը և, ամենակարևորը, հնարա-
վորություն է ստեղծվում արտադրության մեջ աշխատանքի պայմանների
առողջացման, նրա անվտանգության ապահովման համար:
Արդյունաբերական արտադրության արդյունավետության բարձրացման
տեսակետից առանձնապես մեծ նշանակություն ունի, այսպես կոչված, ընդ-
հատվող, պարբերական տեխնոլոգիական պրոցեսների փոխարինումը անընդ-
հատ, միափուլ տեխնոլոգիական պրոցեսներով: Տեխնոլոգիական պրոցեսների
անընդհատության շնորհիվ արտադրության ցիկլի տևողությունը կրճատվում
է, բարձրանում է հիմնական ֆոնդերի և շրջանառու միջոցների օգտագործ-
ման աստիճանը, բարելավվում է արտադրանքի որակը:
Տեխնիկական առաջընթացը զուգահեռաբար բարձրացնում է արտադրա-
կան պրոցեսների ճշգրտության աստիճանը և դրա խստիվ պահպանման ան-
հրաժեշտությունը: Այդ հիման վրա բարձրանում է նաև արտադրանքի որակը,
հատկապես մեքենաների աշխատանքի հուսալիությունը, երկարակեցությունը:
Արդյունաբերության մեջ տեխնիկական առաջընթացն իրոք ընդգրկում է
ոչ միայն բուն արտադրության պրոցեսը, այլև նրա պլանավորումն ու կառա-
վարումը: Այս բնագավառում արդյունաբերական արտադրության արդյունա-
վետության բարձրացման հնարավորությունները հիրավի անսպառ են: Խոսքը
տարբեր տնտեսական օբյեկտների համար (ձեռնարկություն, արտադրական

միավորում, մինիստրություն, արտադրական տերիտորիալ կոմպլեքս) պլանավորման և կառավարման ավտոմատացված սիստեմների ստեղծման և ներդրման մասին է։ Մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի օգտագործումը, որոնց վրա են հենվում հիշատակված սիստեմները, հնարավորություն է տալիս կառավարման տարբեր մակարդակների ոլորտում փնտրել և գտնել տեխնիկա-տնտեսական ամենաբարդ խնդիրների օպտիմալ, լավագույն լուծումները։

Չերնիգովի քիմիական թելանյութերի կոմբինատում ներդրվել և հաջողությամբ գործում է պլանավորման և կառավարման ավտոմատացված այդպիսի մի սիստեմ։ Դրա միջոցով կատարվում են այնպիսի հաշվարկներ, ինչպիսիք են՝ պատրաստի արտադրանքի ասորտիմենտի շահութաբերությունը, արտադրական օպտիմալ ծրագրի մշակումը, պատրաստի արտադրանքի վաճառահանման կոնյուկտուրան, իրացվող արտադրանքի ծավալի որոշումը և այլն։ Այս բոլորը կոմբինատին տալիս է հսկայական տնտեսական օգուտ։ Օրինակ, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների միջոցով կոմբինատում կազմվել և կիրառվում է տեխնոլոգիական սարքավորման աշխատանքի սինխրոն գրաֆիկ։ Այդ հիման վրա կրճատվել է սարքավորումների պահանջը, իսկ դրանց արտադրողականությունը բարձրացել է 5—12 տոկոսով։ Կրճատվել է նաև անավարտ արտադրանքի ծավալը։ Առանց ԷՀՄ նման գրաֆիկների հաշվարկն ու ներդրումը անհնարին կլիներ։ Բավական է ասել, որ միայն մեկ արտադրամասի սարքավորումների գրաֆիկի հաշվարկը կպահանջեր երկու ինժեներների մեկ տարուց ավելի աշխատանք։

Տեխնիկական պրոգրեսի վերոհիշյալ բոլոր ձևերի խնդիրը, վերջին հաշվով այն է, ուպեսզի ամուր բազա ստեղծվի հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։



Կուսակցական ուսուցման
սիստեմի ունկնդիրների համար

# ԳԻՏԱ-ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

Դ. ԳՎԻՇԻԱՆԻ, Ս. ՄԻԿՈՒԼԻՆՍԿԻ

Գիտա-տեխնիկական հեղափոխությունը ժամանակակից դարաշրջանի
կարևորագույն առանձնահատկություններից մեկն է։ Այն խոր վերափոխում-
ներ է առաջացնում հասարակության կյանքի նյութական հիմքի արտադրու-
թյան մեջ։ Առավել է դրսևորվում գիտության՝ որպես անմիջական արտա-
դրական ուժի դերը։ Գիտական ու տեխնիկական նվաճումների ներգործմամբ
ստեղծվում և մասսայաբար կիրառվում են սկզբունքորեն նոր արտադրամի-
ջոցներ և տեխնոլոգիական պրոցեսներ, առաջանում են արդյունաբերական
նոր ճյուղեր, որակական տեղաշարժեր են կատարվում աշխատանքի բնույթի
մեջ, արտադրության կազմակերպման ու կառավարման ոլորտում։
Անսահմանորեն մեծացել է գիտության սոցիալական դերը, դրա ներգոր-
ծությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։ Բայց գիտության և
սոցիալական առաջընթացի միջև եղած կապը ամենևին սովորական չէ։ Այն իր
բնույթով խորապես դիալեկտիկական է։ Գիտության ազատ, համակողմանի
զարգացման և վերջինիս նվաճումներն աշխատավորների, ողջ հասարակու-
թյան շահերին ծառայեցնելու համար պահանջվում են որոշակի սոցիալական
պայմաններ։ Այդպիսի պայմաններ են ստեղծվում հասարակության սոցիա-
լիստական հիմունքներով վերափոխմամբ։ Սոցիալիզմն իր ամրապնդման և
աստիճանաբար կոմունիզմի վերաճելու համար կարիք ունի գիտության հա-
մակողմանի զարգացման, հասարակական ողջ արտադրությունը գիտական
հիմունքներով վերափոխելու։ Գիտության զարգացումը և դրա նվաճումներն
արտադրության մեջ կիրառելը սոցիալիզմի պայմաններում վերածվում են
աշխատանքի արտադրողականության բարձրացման, հասարակական արտա-
դրության աճի, դրա ինտենսիվացման, ողջ ժողովրդի նյութական բարեկե-
ցության և կուլտուրական մակարդակի բարձրացման անսպառ աղբյուրի։
Գիտության ու տեխնիկայի առաջընթացը— կոմունիզմի նյութա-տեխնիկա-
կան բազայի ստեղծման գլխավոր ազդակն է։

## 1.

Հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման վրա բարերար ազդե-
ցություն ունենալով, գիտա-տեխնիկական հեղափոխությունն ինքը դրա ար-
դյունքն է։ Այն հնարավոր դարձավ միայն արտադրության առավել հանրայ-
նացման, այսինքն՝ շնորհիվ այն պրոցեսի, որն օբյեկտիվ նախադրյալներ
է ստեղծում արտադրության կապիտալիստական եղանակից սոցիալիստականին
անցնելու համար։ Սրելով կապիտալիզմի արմատական հակասությունները,
այն սաստկացրեց այդ անցման օբյեկտիվ անհրաժեշտությունը, դարձավ
կարևոր գործոն համաշխարհային հեղափոխության այն պրոցեսի, որն ապրում
է ժամանակակից աշխարհը։
Սովետական Միությունում և մյուս սոցիալիստական երկրներում գիտա-
տեխնիկական առաջընթացն արմատական, սոցիալական վերափոխումների
ուղղակի շարունակությունն ու արդյունքն է։ Այն սկզբից ևեթ իրականացվում

*) Տպագրվում է աննշան հապավումներով— Խմբ.։

քաղում մարդկանց տառապանք սովից։ Երկիրը պառակտվում է, մեր ըմբոստացած երիտասարդության ու հասարակության մյուս անդամների միջև օտարում է սկսվել։ Մենք աննկատելիորեն գահավիժում ենք։ Գիտության կրած դժվարությունները՝ ընդհանուր ճգնաժամի մի մասն է միայն, և գիտության ճգնաժամը հասկանալու համար հարկավոր է ուսումնասիրել առավել մեծածավալ աղետի արմատները»։ Այդպիսի աղետ Ա. Սենտ-Դերդին համարում է երկրի միլիտարիզացիան, Վիետնամի պատերազմը, գիտության նվաճումների օգտագործումը՝ ոչնչացման միջոցների մշակման համար։ «Հարկ չի լինի գիտության հատկացումների բյուջեն կրճատել,— գրել է նա,— եթե մենք դադարեցնենք գիտական հետազոտությունների արդյունքները մահվան զենքի փոխարկելու պրոցեսը... Մենք՝ գիտնականներս, ազգային գիտական հիմնարկությունների օժանդակությամբ, առողջապահության բնագավառում տարեկան ծախսում ենք 1,3 մլրդ դոլար, իսկ քիմիական և բիոլոգիական զենքի մշակման ու արտադրման համար տարեկան՝ 2,6 մլրդ դոլար։ Ես չեմ կարող լռությամբ մատնել Վիետնամի պատերազմը, բռնության և քայքայման աղբյուրը, որն ամեն օր կլանում է ավելի շատ միջոցներ, քան դրանք կարելի է խնայել գիտության նպաստավորության բոլոր առաջարկվող խնայողություններով...»։

Գիտության, էկոնոմիկայի և սոցիալական հարաբերությունների զարգացման սուր հակասություններն ԱՄՆ-ում և կապիտալիստական մյուս երկրներում դրսևորվում են, մասնավորապես, այսպես կոչված՝ «հակագիտական շարժումների» ձևով, որոնք գիտությունը համարում են մարդու համար անօգտակար և հումանիստական իդեալների տեսանկյունից անգամ վտանգավոր, սաստկացող ձգտում հանդեպ իռացիոնալիզմը, միստիցիզմը, ինտուիտիվիզմը և այլն։ Արևմտաեվրոպական և ամերիկյան որոշ գիտնականներ այս երևույթները դիտում են իբրև «ռեակցիա գիտության նկատմամբ»։ Իրականում խոսքը բուրժուական գաղափարախոսների տարածած պատրանքներին վերաբերող ռեակցիայի մասին է, իբր թե, սոցիալական բոլոր ողբերգական պրոբլեմները կարող են լուծվել առանց սոցիալական պայքարի, շնորհիվ միայն գիտության ու տեխնիկայի հաջողությունների։ Այն, ինչ համարում են «ռեակցիա գիտության նկատմամբ», սոցիալական խոր հակասությունների ռեակցիա է կապիտալիստական երկրներում, որոնք ո՛չ միայն չեն լուծվել հետպատերազմյան ժամանակաշրջանում, այլ ավելի են սրվել։

Հասարակության արտադրաուժերում գիտա-տեխնիկական հեղափոխությամբ հարուցած հեղաշրջումը չի կարող չուղեկցվել արմատական սոցիալական տեղաշարժերով։ Կապիտալիզմի ջատագովները պնդում են, որ ժամանակակից կապիտալիզմի զարգացումն ընթանում է մի ինչ-որ «պոստինդուստրիալ հասարակության» ուղիով, որը ծառայում է նույն բուրժուական, կապիտալիստական հասարակությանը, միայն թե փոքր-ինչ մոդեռնացված՝ համապատասխան գիտա-տեխնիկական առաջընթացի տենդենցներին։ Սակայն պատմության ռեալ ընթացքը հաստատում է, որ գիտա-տեխնիկական հեղափոխությունը, լիովին երևան է հանում կապիտալիզմի հակասությունները, վերջինիս՝ հանուն ողջ հասարակության շահերի, անհամատեղելիությունն արտադրաուժերի հետագա առաջընթացին, հասարակական հարաբերություններում արմատական հեղաշրջումը կենսականորեն անհրաժեշտ է դարձնում։

## 2.

Սոցիալիզմը գիտա-տեխնիկական հեղափոխության անարգել և համակողմանի ծավալման ճանապարհ է բացում՝ գիտության ու տեխնիկայի վիթխարի նվաճումները ծառայեցնելով ժողովրդական լայն զանգվածների շահերին, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցմանը։ «...Գիտա-տեխնիկական առաջընթացի բնագավառը,— ընդգծում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— այսօր ներկայացնում է երկու սիստեմների պատմական մրցության գլխավոր ճակատներից մեկը։ Այդ հանգամանքը մեր կուսակցության համար գիտության ու տեխնիկայի հետագա ինտենսիվ



զարգացումը և արտադրության մեջ գիտա-տեխնիկական նվաճումների լայն արմատավորումը դարձնում է ոչ միայն կենտրոնական տնտեսական, այլև կարևոր քաղաքական խնդիր։ Ներկա փուլում գիտա-տեխնիկական առաջընթացի հարցերը, կարելի է ուղղակի ասել, վճռական նշանակություն են ստանում (Լենինյան կուրսով, հ. 2, էջ 471)։

Ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության էությունը չի կարելի հանգեցնել գիտության ու տեխնիկայի բնագավառի այս կամ այն, անգամ ամենախոր, հայտնագործությանը կամ ուղղությանը։ Վ. Ի. Լենինը ժամանակին խոսելով երկրի էլեկտրիֆիկացման մասին, նկատի ուներ ո՛չ միայն էներգիայի նոր ձևի օգտագործումը, այլև էլեկտրիֆիկացման հիմունքներով ողջ ժողովրդական տնտեսության ու ժողովրդական կենցաղի արմատական վերափոխումները։ Եվ այժմ, գիտա-տեխնիկական հեղափոխությունը ո՛չ միայն էներգիայի նոր ձևերի, նոր նյութերի, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների գործադրում և նույնիսկ արտադրության կոմպլեքսային ավտոմատացում է նշանակում, այլև արտադրության ողջ տեխնիկական բազայի, դրա կազմակերպման ձևերի ու կառավարման խոր վերափոխում։

Մենք թևակոխում ենք Կ. Մարքսի կանխատեսած դարաշրջանը, երբ մարդը դադարում է մեքենայի սոսկ կցորդը լինելուց և անսահման հնարավորություններ է ստանում ստեղծագործաբար աշխատելու բնության ուժերի օգտագործման, իր կյանքի պայմանների և միջավայրի վերափոխման համար։ Դա արմատական փոփոխություններ է առաջացնում ո՛չ միայն արտադրության տեխնոլոգիայի ու դրա կառուցվածքի, այլև աշխատանքի բնույթում։ Այն առավել մեծ չափերով ստեղծագործական բնույթ է ձեռք բերում։



Այդ պրոցեսի համակենտրոնացված արտահայտությունն է արտադրության ու կառավարման կոմպլեքսային ավտոմատացումը։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ նման վիթխարի թռիչքը չի կարող միանգամից իրականացվել։ Այն պահանջում է լուրջ ու մտածված նախապատրաստություն, յուրաքանչյուր առանձին դեպքում ընդունվող որոշումների ռեալ հնարավորությունների և տնտեսական նպատակահարմարության հստակ հաշվարկ, կադրերի՝ բանվորներից սկսած մինչև արտադրության ղեկավարները, գիտա-տեխնիկական պատրաստականություն, ընդհանուր կրթություն, կուլտուրայի համակողմանի բարձրացում, բոլոր աշխատավորների ակտիվ մասնակցություն արտադրության ստեղծման, կազմակերպման և կառավարման ոլորտում։

Ավտոմատացումն արտադրության տեխնոլոգիայի ու կազմակերպման արմատական փոփոխություններ է ենթադրում։ Առանց այդ կոմպլեքս միջոցառումների նախապես ձեռնարկման այն չի կարող ցանկալի արդյունք տալ։ Դրա համար էլ մոտակա հեռանկարի կարևորագույն խնդիրն է մնում՝ հիմնական արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ավարտումը և կոմպլեքսային ավտոմատացման անցնելու համար պայմաններ ստեղծելը, կիրառելով վերջինս բոլոր տեղամասերում աստիճանաբար, եթե դա թելադրվում է նպատակահարմարությամբ և հաստատված է ճշգրիտ տնտեսական հաշվարկով։ Արտադրության, վերահսկողության և կառավարման կոմպլեքսային ավտոմատացումը սոցիալիստական տնտեսության զարգացման օրինաչափ հեռանկարն է։ Դրանում իր արտացոլումն է գտնում ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության էական կողմերից, նրա կարևորագույն արդյունքներից մեկը։ Սակայն ճիշտ չէր լինի միայն գործի այս կողմին ուշադրություն նվիրել։ Ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության մյուս էական առանձնահատկությունը, եթե այն դիտելու լինենք առավել ընդհանուր պլանով, գիտություն–տեխնիկա–արտադրություն սիստեմի հարաբերակցության փոփոխությունն է, ամբողջովին վերցրած, արտադրության և հասարակության զարգացման գործում գիտության անշեղ մեծացող դերը։

Ժամանակակից պայմաններում սոցիալիստական ժողովրդական տնտեսության հետագա հաջող զարգացումը, արտադրության ինտենսիվացումը, ավելի քան երբևէ կախված են հիմնարար և կիրառական գիտական հետազոտությունների անշեղ զարգացումից, դրանց արդյունքների արագ օգտագոր-





ծումից: Դրա համար տնտեսական ղեկավարների առաջնահերթ պարտականությունն է— ամեն կերպ նպաստել գիտա-տեխնիկական հետազոտություններին, ուշի-ուշով հետևել գիտության զարգացմանը, որսնել և արագ յուրացնել գիտության ու տեխնիկայի ողջ նորը, նպաստել տեխնոլոգիայի բարելավմանը, տեխնիկայի նոր նմուշների ստեղծմանը, ձեռնարկության և ճյուղի աշխատանքի ժամանակակից կազմակերպմանը: Այդ բոլոր միջոցառումների արդյունավետության չափանիշն աշխատանքի արտադրողականության աճն է, քիչ նյութեր ու միջոցներ օգտագործելով մեծ քանակությամբ լավորակ արտադրանքի թողարկումը, աշխատանքի պայմանների բարելավումը: Անհրաժեշտ է, որ, ինչպես Վ. Ի. Լենինն է գրել, «Մեզնում գիտությունը մեռած տառ կամ մոդայական ֆրազ չմնա..., որ գիտությունն իրոք միս ու արյուն դառնա, վերածվի կենցաղի բաղկացուցիչ տարրի՝ լրիվին և իսկապես» (Երկեր, հ. 33, էջ 581): Նա, ով չի նայում առաջ, գիտության ու տեխնիկայի զարգացման ուղղությամբ, անխուսափելիորեն և անհուսալի կերպով հետ կմնա:

Սովետական պետությունն այսօր իր տրամադրության տակ ունի վիթխարի գիտա-տեխնիկական պոտենցիալ, որը հնարավորություն է ընձեռում առաջադրելու և հաջողությամբ լուծելու գիտական և տեխնիկական ամենաբարդ պրոբլեմները: 1971 թ. սկզբներին ՍՍՀՄ-ում կար մոտ 930 հազար գիտական աշխատող, իսկ գիտության և գիտությանը սպասարկող բնագավառում, եթե հաշվի առնենք գիտա-տեխնիկական սպասարկող այլ անձնակազմը, զբաղված է ավելի քան 3 միլիոն մարդ:

Միանգամայն ակնհայտ է, որ երկրագնդի մեկ վեցերորդը կազմող մեր երկրի մասշտաբով գիտա-հետազոտական աշխատանքի հաջող ծավալման համար կարևորագույն նշանակություն ունի գիտա-տեխնիկական առաջընթացի պետական ղեկավարումը, միասնական գիտա-տեխնիկական քաղաքականություն վարելը, գիտա-հետազոտական աշխատանքների կազմակերպման ու կառավարման ձևերի ու մեթոդների անընդմեջ կատարելագործումը, գիտության կենտրոնացած կառավարման արգասավոր զուգակցման ապահովումը՝ գիտական կոլեկտիվների և յուրաքանչյուր գիտնականի ստեղծագործական ողջ հնարավորությունների իրականացման հետ մեկտեղ:

Սոցիալիստական արտադրամիջոցի հենց բնույթով է պայմանավորված գիտության ու տեխնիկայի պլանավորման հնարավորությունը ողջ հասարակության մասշտաբով, նրա ջանքերի համախմբումը հանուն կարևորագույն պրոբլեմների լուծման: Սակայն այդ օբյեկտիվ հնարավորությունների իրականացումը ենթադրում է համապատասխան պայմաններ, կազմակերպական մեխանիզմի արդյունավետ աշխատանք: Գիտա-հետազոտական և փորձա-կոնստրուկտորական աշխատանքների պետական կառավարման սոցիալիստական սիստեմը հնարավորություն է ընձեռում ողջ հասարակության մասշտաբով հասնելու այնպիսի խնդիրների օպտիմալ լուծման, ինչպիսիք են՝ գիտական հետազոտությունների հատկացումների չափերի հիմնավոր որոշումը, կարևորագույն գիտական և տեխնիկական պրոբլեմների մշակումների երկարաժամկետ և ընթացիկ պլանավորումը, գիտա-հետազոտական հիմնարկությունների աշխատանքների պլանների կոորդինացիան, նրանց աշխատանքի արդյունավետության վրա անդրադարձող գործոնների սիստեմատիկ ուսուցումը, ինչպես և գիտական գործունեության արդյունավետությունը և գիտական հետազոտությունների արդյունքների արագ ներդրումը պրակտիկայում ապահովող անհրաժեշտ միջոցների իրականացումը:

Գիտա-հետազոտական աշխատանքների ծրագրավորումն ունի իր յուրահատկությունը: Առանձին բարդություն է հարուցում հիմնարար գիտական հետազոտությունների պլանավորումը, քանի որ նախապես դժվար է կանխորոշել դրանց արդյունքները: Անորոշության աստիճանը, որ գերակշռում է հիմնարար հետազոտությունների փուլում, պակասում է կիրառական հետազոտությունների և տեխնիկական մշակումների փուլում: Գիտությունը պլանավորելիս, անհրաժեշտ է տարբերակել զանազան կատեգորիաների և փուլերի գիտա-հետազոտական ու փորձա-կոնստրուկտորական աշխատանքները: Հիմնարար



հետազոտությունների համար պլանային կարգավորումը կարող է սահմանափակվել առավել հեռանկարային ուղղություններով և կոմպետենտ գիտնականների ու մասնագետների համար բարվոք պայմաններ ստեղծելով: Կիրառական փուլում, ուր ծախքերը զգալի չափով մեծանում են, պլանավորումն առավել կոնկրետ բնույթ է ձեռք բերում: Պլանավորման ֆունկցիաներն ավելի են մեծանում տեխնիկական մշակումների փուլում, ուր դրանք ընդհուպ մոտենում են նյութական արտադրության պլանավորմանը:

Հիմնարար և կիրառական հետազոտությունների պլանավորման ճիշտ զուգակցումը, գիտական հետազոտությունների և կոնստրուկտորական մշակումների անընդմեջ պրոցեսը բոլոր փուլերում՝ ընդհուպ մինչև մասսայական արտադրության ներդրումը— այս ամենն այսօր առավել բարդ կազմակերպական խնդիր է դարձել: Դրա լուծումը սոցիալիստական հասարակության պայմաններում ապահովվում է միասնական պետական պլանավորման հիմունքով: Կարևորագույն պրոբլեմներ մշակող, համապետական նշանակություն ունեցող գիտա-հետազոտական և փորձա-կոնստրուկտորական աշխատանքների պլանները, որպես կանոն, նախատեսում են անհրաժեշտ ամեն բան, որպեսզի ապահովվի պրոբլեմի անխափան և կոմպլեքսային լուծումը՝ սկսած հիմնարար ուսումնասիրություններից ու որոնման աշխատանքներից մինչև մասսայական արտադրության տեխնոլոգիայի մշակումը: Իրենց հերթին, գիտա-հետազոտական և փորձա-կոնստրուկտորական աշխատանքների պլանները, ինչպես համապետական, այնպես էլ ճյուղային (առանձին մինիստրությունների և գերատեսչությունների շրջանակներում) դառնում են արդյունաբերական արտադրության զարգացման պլանների օրգանական բաղադրիչ մասը:

Կուսակցությունը խնդիր է առաջադրում՝ առավել լրիվ և համակողմանի կիրառել գիտության նվաճումները և դրա հիման վրա ապահովել արագ անցումը նոր, պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսների, նոր արտադրանքի թողարկման, ներդնել արտադրական ձեռնարկությունների կազմակերպման ու կառավարման ժամանակակից ձևերը: Այդ խնդրի լուծումը պահանջում է գիտա-հետազոտական կազմակերպությունների աշխատանքի արդյունավետության բարձրացում, դրանց է՛լ ավելի մեծ շրջադարձ՝ արտադրության առավել կարևոր պրոբլեմների հանդեպ, ինչպես և այնպիսի նպաստավոր պայմանների ստեղծում, որ արտադրական ձեռնարկություններն իրենք ամեն կերպ ձգտեն ներդնելու նոր տեխնիկան: Ձեռնարկությունների գիտա-տեխնիկական նվաճումների առավել ակտիվ օգտագործման տնտեսական խթանումը տնտեսական ռեֆորմի հետագա զարգացման կարևորագույն գործոններից մեկն է մեր երկրում:

Ակներև է, որ եթե անմիջաբար, արտադրության իսկ ոլորտում մեծանա նոր տեխնիկայի, գիտա-հետազոտական նոր մշակումների «պահանջարկը», ապա դա օբյեկտիվ կարևոր խթան կլինի գիտական գործունեության վերելքի համար, հնարավորություն կընձեռի գիտական և փորձա-կոնստրուկտորական կազմակերպություններում լայնորեն կիրառելու տնտհաշվարկի սկզբունքները: Իր հերթին, գիտության մեծ արդյունավետությունը, հիմնարար հետազոտությունների հետագա ծավալումը, գիտա-տեխնիկական առավել կարևոր ու հեռանկարային ուղղությունների առաջընթացի համար, գիտական ուժերի կենտրոնացումը ժողովրդական տնտեսության մեջ նոր տեխնիկայի արագ ներդրման օբյեկտիվորեն անհրաժեշտ պայման են:

### 3.

Առանձին խումբ են կազմում բուն գիտությանը վերաբերող հարցերը: Դրա բարձր տեմպերով զարգացումն արդեն չի կարող շարունակվել հիմնականում գիտական աշխատողների թվի և հետազոտությունների վրա կատարվող ծախսերի աճի հաշվին: Այժմ իրականացվում է անցումը գիտական գործունեության էքստենսիվ ձևերից՝ ինտենսիվին: Իսկ դա ենթադրում է գիտական հետազոտությունների արդյունավետության խիստ բարձ-

կան մաշումից դեռ շատ վաղ, բարոյապես հնանում են։ Մինչդեռ բազմաթիվ կազմակերպություններ խիստ կարիք ունեն այնպիսի տվյալների, որոնք թերևս ստացվեն դրանց օգնությամբ։ Արագ արդյունք կարող էր տալ հաշվողական կենտրոնների ցանցի նման գիտական հիմնարկությունների, գիտական սարքեր ու սարքավորում, պարագաներ մատակարարող տնտհաշվարկային կազմակերպությունների ստեղծումը։ Դա հնարավորություն կընձեռեր միանգամից ապահովելու գիտական սարքավորման որակյալ և ինտենսիվ օգտագործումը և միաժամանակ արագացնել գիտական շատ հետազոտություններ։

4.

Տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում գիտա-հետազոտական, փորձա-կոնստրուկտորական աշխատանքների արդյունավետության բարձրացումը և դրանց մեծ չափերի ներդրումն արտադրության մեջ իրականացվում են պլանաչափորեն։ Մեր ժողովրդական տնտեսությանը ներհատուկ կարևորագույն այդ առավելությունը դեռևս ոչ միշտ և ոչ ամենուր է պատշաճ օգտագործվում։

Հայտնի է, որ պետպլանի ինքնուրույն մի մասն են՝ գիտա-հետազոտական և փորձա-կոնստրուկտորական աշխատանքների պլանները, որոնց խնդիրն է՝ ապահովել առավել հեռանկարային, հիմնարար և կիրառական հետազոտությունների, գիտա-տեխնիկական մշակումների զարգացումը, ստեղծել նոր տեխնիկա, տեխնոլոգիա, նոր արտադրանք, սարքավորումներ ու նյութեր։ Սակայն դեռևս միշտ չեն այդ պլանները օրգանապես կապված ժողովրդատնտեսական պլանների այն մասերի հետ, որոնք պետք է նախատեսեն գիտա-հետազոտական և փորձա-կոնստրուկտորական աշխատանքների ավարտուն արդյունքների ներդրումը մասսայական արտադրության մեջ։ Այդ թերությունները կվերացվեն գիտության ու տեխնիկայի և արտադրության կոմպլեքսային ծրագրավորման միջոցով՝ ժողովրդական պլանի ողջ հատվածներում աշխատանքի բոլոր փուլերը համապատասխանորեն արտացոլելով։

Գիտա-տեխնիկական հեղափոխությունը խիստ սրում է բնական հարստությունների և ռեսուրսների օգտագործման պրոբլեմը։ Սոցիալիստական հասարակությունը չի հանդուրժում միակողմանի մոտեցում բնական հարստությունների յուրացմանը և արտադրության զարգացմանը։ Ժամանակակից արդյունաբերական և գյուղատնտեսական կոմպլեքսները զգալիորեն ներգործում են իրենց շրջապատող բնական միջավայրի ողջ բնույթի վրա։ Ուստի, կենսական խնդիրն այն է, որ արտադրության բոլոր ճյուղերի զարգացման պլանները հենվեն բնության և հասարակության փոխներգործությանը վերաբերող խիստ հիմնավորված գիտական հանձնարարականների վրա։

Անհրաժեշտ է հատկապես ընդգծել «անկախ, արտագերատեսչական» փորձաքննության վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի ցուցումի նշանակությունը՝ արտադրության նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ստեղծման առթիվ։ Արտագերատեսչական փորձաքննությունը մեր երկրում խիստ զարգանում է, մասնավորապես, շինարարական խոշոր նախագծերի քննարկման ժամանակ, ստեղծվում են պետական հանձնաժողովներ այս կամ այն խոշոր օբյեկտն ընդունելու համար։ Փորձագիտական հսկայական աշխատանք են տանում երկրի ստանդարտավորման ծառայությունները։ Նշանակալի չափով գիտա-տեխնիկական փորձաքննության դեր են կատարում ՍՍՀՄ Մինիստրների սովետի գիտության ու տեխնիկայի գծով պետական կոմիտեի գիտական խորհուրդները և ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան։ Սակայն նոր պայմանները պահանջում են ծավալել այդ աշխատանքը։ Գիտա-տեխնիկական առաջընթացի արագ տեմպերի հետ մեկտեղ մեծանում է նոր տեխնիկայի զարգացման տենդենցների ու հեռանկարների, տեխնիկա-տնտեսական օպտիմալ լուծումների որոնման խոր վերլուծության անհրաժեշտությունը։ Անկախ, արտագերատեսչական փորձաքննությունը կոչված է այս կամ այն լուծումների առավելությունների կամ թերությունների, երբեմն նեղ գերատեսչական կամ տեղայնական շահերից թելադրված սուբյեկտիվ մեկնաբանմանը հակադրելու ողջ հա-



սարակության շահերը և գիտության ու տեխնիկայի ժամանակակից հնարավորություններն արտացոլող, իրոք օբյեկտիվ բանիմաց փորձաքննությունը։ Ո՛չ միայն գիտա-տեխնիկական պրոբլեմների օպտիմալ լուծումները սահմանելու և ձևակերպելու հնարավորությունը, ելնելով ողջ հասարակության հնարավորություններից ու շահերից, այլև միասնական տեխնիկական քաղաքականության կենսագործումն է տնտեսության սոցիալիստական սիստեմի անվիճելի առավելությունը։

Իններորդ հնգամյակում սովետական հասարակության զարգացման վեհասքանչ ծրագրի կենսագործումը ակնհայտորեն կախված է էկոնոմիկայի զարգացման ինտենսիվ գործոնների դերի բարձրացման համար կիրառվող կուրսի հիմքն հանդիսացող գիտա-տեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումից։ Այդ ենթադրում է ժողովրդական տնտեսության բազում ճյուղերի տեխնիկական վերազինում, աշխատանքի, նյութերի և տեխնոլոգիական պրոցեսների նոր միջոցների ստեղծում և արմատավորում։ Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական հագեցման համար անհրաժեշտ աշխատագործիքների արտադրությունը հնգամյակում կավելանա 1,6 անգամ։ Կիրառման համար նախատեսվող նոր արտադրաֆոնդերի բաժինը 1975 թ. արդյունաբերության մեջ կկազմի 46 տոկոս, գյուղատնտեսության՝ 60։

Տեխնիկայի ձեռք բերած մակարդակը և դրա արտադրության ծավալները հնարավորություն են ընձեռում ներկա պայմաններում հարց հարուցելու աշխատատար աշխատանքների առավել մեծ չափերի մեքենայացման, ձեռքի աշխատանքը մեքենայականով փոխարինելու վերաբերյալ։ Չնայած արտադրության մեքենայացման ու ավտոմատացման անշեղ աճին, մի շարք ճյուղերում դեռևս գերակշռում է ձեռքի աշխատանքը, որը կարող է և պետք է փոխարինվի մեքենաներով ու մեխանիզմներով։ Իններորդ հնգամյակում նախատեսվում է նոր, առաջնակարգ տեխնոլոգիայով հագեցած արդյունաբերական ձեռնարկությունների կառուցման հետ մեկտեղ առավել պատշաճ իրականացնել բանող գործարանների ու ֆաբրիկաների մոդեռնացումը՝ հնացած սարքավորումները, տեխնոլոգիան փոխելու և ժամանակակից տեխնիկայով հագեցնելու միջոցով։ Դրա հիման վրա ապահովվում է աշխատանքի արտադրողականության արագ աճ, աշխատանքային պայմանների բարելավում և արտադրության աշխատողների մեծ զանգվածների կուլտուր-տեխնիկական մակարդակի զգալի վերելք։

Սարքավորումների տեխնիկական մակարդակի բարձրացումը, ժամանակակից բարձր արտադրողական մեքենաների և ագրեգատների ներդրումը չեն սպառում գիտա-տեխնիկական արագ առաջընթացի խնդիրները։ Հնգամյակում հատուկ ուշադրություն է նվիրվելու արտադրության նյութատարողության իջեցմանը՝ սկզբնահումքի և նյութերի որակական բնութագրի բարելավման, դրանց ռացիոնալ կոմպլեքսային օգտագործման և այլ միջոցառումների հաշվին։ Այդ խնդրի լուծումը կապահովվի նոր, առավել խնայողունակ, մասնավորապես, պոլիմերային և բացառիկ զուտ նյութերի ստեղծմամբ և արտադրմամբ, արդյունաբերության թողարկված նյութերի նմուշատեսակների ամրապնդմամբ և ընդլայնմամբ։

Գիտա-տեխնիկական հեղափոխությունը նպաստեց ժողովրդական տնտեսության կառավարման մեթոդների և ողջ սիստեմի կատարելագործման համար հսկայական տեխնիկական միջոցների ստեղծմանը։ Տնտեսա-մաթեմատիկական մեթոդների, էլեկտրոնային-հաշվողական մեքենաների, կազմտեխնիկայի և կապի միջոցների կիրառումը նոր հնարավորություններ են ընձեռում կառավարման գործունեության հետագա ռացիոնալացման համար։ Իններորդ հնգամյակում տեխնոլոգիական պրոցեսների կառավարման ավտոմատացված սիստեմների, ձեռնարկությունների, միավորումների, ճյուղերի կառավարման նպատակով ինֆորմացիայի հավաքման ու մշակման միասնական ավտոմատացված սիստեմի ներդրումը կզուգակցվի հաշվողական կենտրոնի և կապի միասնական ավտոմատացված ցանցի պետական սիստեմի մշակմանը։ Այսպիսով, ընթացիկ հնգամյակում արտադրության անմիջական ոլորտում, մե-

քենայացման ու ավտոմատացման հետագա զարգացման հետ մեկտեղ, կարևոր քայլ կարվի կառավարման գործունեության մեքենայացման և ավտոմատացման, դրա հետագա կատարելագործման բնագավառում։

Ժամանակակից գիտությունը տեսական հիմքեր և գործնական հանձնարարականներ է տալիս ներկայիս արտադրապրոցեսների ռացիոնալ կազմակերպման, արտադրության տարբեր բնագավառների տնտեսապես շահավետ տեղաբաշխման, դրա բոլոր ռեսուրսների արդյունավետ օգտագործման համար՝ հասարակության զարգացման հիմնական նպատակներին համապատասխան։ Աշխատանքի գիտական կազմակերպումը յուրաքանչյուր աշխատատեղում ու ձեռնարկության մասշտաբով, ճյուղերի և արտադրության գիտական կառավարումը ողջ երկրի առումով՝ արտադրության արդյունավետության աճի վիթխարի աղբյուր է։

Գիտական և ինժեներական մտքի նորագույն նվաճումների լիարժեք օգտագործումը յուրաքանչյուր աշխատողից, ղեկավար կադրերից պահանջում են ո՛չ միայն բարձր գիտակցականություն, նախաձեռնություն և էներգիա, այլև պրոֆեսիոնալ խոր գիտելիքներ և, ամենից առաջ, կազմակերպվածություն։ Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ կազմակերպվածությունից, կառավարելու ունակությունից են վճռապես կախված մեր առաջընթացի տեմպերը։ Գիտության ու տեխնիկայի վերջին խոսքի զուգակցումը կազմակերպման ու կառավարման վերջին խոսքին— գիտա-տեխնիկական հեղափոխության ընձեռած հնարավորությունների լիովին իրացման պարտադիր պայմանն է։

Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները բազմիցս նշել են, որ կոմունիզմն ու գիտությունն անբաժանելի են, թե կոմունիստական հասարակությունը կլինի մարդկային գիտելիքների բոլոր բնագավառների մեծ ծաղկումը, իր բոլոր անդամների ունակությունների լիովին դրսևորումն ապահովող ու նրանց խիստ զարգացած պահանջմունքներն ամբողջովին բավարարող հասարակություն։ Բայց այն կարող է կառուցվել միայն գիտության, տեխնիկայի ու կազմակերպական մեծ նվաճումների բազայի վրա։ Կոմունիզմի հաղթանակի համար պահանջվում է գիտա-տեխնիկական հեղափոխության պոտենցիաների առավելաչափ օգտագործում։ Միաժամանակ, գիտա-տեխնիկական հեղափոխությունն իր հաղթանակի համար պահանջում է սոցիալիստական հասարակական հարաբերությունների հետագա ամրապնդում և դրանց աստիճանաբար վերաճում կոմունիստականի։ Միայն այդ հարաբերությունները կարող են ապահովել գիտնականների և ինժեներների, արտադրության կազմակերպիչների, աշխատավորական լայն զանգվածների ստեղծագործական հնարավորությունների լիակատար դրսևորումը, որոնց ստեղծագործությունից ու էներգիայից է կախված, վերջին հաշվով, հասարակական արտադրաուժերի գիտա-տեխնիկական և կազմակերպական նորագույն հիմունքներով նորացումն ու վերակառուցումը։

Սոցիալիստական արտադրահարաբերությունները տնտեսական մրցակցության, գիտության ու տեխնիկայի զարգացման վճռական առավելություններ են ընձեռում կապիտալիստականի հանդեպ։ Մենք պետք է օգտագործենք դրանք գիտա-տեխնիկական առաջընթացի բարձր տեմպերն ապահովելու, ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության ընձեռած հնարավորությունները լիովին իրականացնելու համար։

«Коммунист», № 17, 1971




Կ. Ի. ԱՌՈՒՍՏԱՄՈՎԱ

Վ. Ն. ԽԱՉԱՏՐՅԱՆ

(դոցենտ, տնտեսական գիտությունների թեկնածու)


# ԿՈՆՎԵՐԳԵՆՑԻԱՅԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՌԵԱԿՑԻՈՆ ԲՆՈՒՅԹԸ

Հասարակական զարգացման արդի էտապում, երբ դարաշրջանի հիմնական հակասությունն արտահայտող պայքար է տեղի ունենում կապիտալիզմի և սոցիալիզմի միջև, հակակոմունիզմը եղել և մնում է իմպերիալիստական պրոպագանդայի գաղափարական-քաղաքական գլխավոր զենքը։ «Ներկայումս բուրժուական գաղափարախոսները, բուրժուական պրոպագան,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— սոցիալիզմի ու կոմունիստական շարժման դեմ մղվող պայքարում ամենից հաճույքով օգտագործում են հենց նացիոնալիստական միտումները և դրանց հատկապես այն մասը, որոնք հակասովետիզմի ձև են ընդունում (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին, 1971, էջ 32)։

Եթե մինչև վերջերս բուրժուական պրոպագանդային հատուկ էր փաստերի կոպիտ կեղծումը, ապա այժմ, դրա հետ մեկտեղ, այն օգտագործում է կապիտալիզմի գովերգման ավելի նրբին մեթոդներ ու ձևեր։ Այդ կապակցությամբ մեծ դեր է հատկացվում կոնվերգենցիայի տեսությանը, որն առանձնապես վերջին ժամանակներս բավական լայն տարածում է գտել կապիտալիստական արևմուտքի բուրժուական գիտնականների շրջանում։

«Կոնվերգենցիա» տերմինը փոխառնված է կենսաբանության բնագավառից և նշանակում է միևնույն միջավայրում զարգացող օրգանիզմների կառուցվածքի կամ ֆունկցիաների համանմանություն։ Հակամարքսիստական տեսության ջատագովները փորձում են համոզել լայն մասսաներին, թե կապիտալիզմը և սոցիալիզմը նույնպես գտնվում են ծավալվող գիտատեխնիկական հեղափոխության, էկոնոմիկայի ծրագրավորման միևնույն «միջավայրում» և որ դրա հետևանքով երկու սիստեմները կենսաբանական օրգանիզմների նման իրենց հիմնական գծերով իբր սկսում են «մերձենալ» միմյանց։ Ըստ որում, կոնվերգենցիայի տեսության հեղինակներն ու պաշտպաններն ընդգծում են ո՛չ թե կապիտալիզմի և սոցիալիզմի սոսկ նմանությունը, այլ

նրանց ընդհանուր հատկանիշների արագ աճը, նրանց փոխադարձ մերձեցումը և նույնիսկ վերջնական միաձուլումը։

Կոնվերգենցիայի տեսությունը բազմադեմ է և տարբեր վարիանտներով սևռված է Ռ. Արոնի, Ու. Ուստոուի, Է. Ֆրոմի, Հ. Մարկուզեի և բուրժուական գիտնականների այլ աշխատություններում ու շատ կողմերով նման է Ջ. Կ. Հելբրեյտի «միասնական ինդուստրիալ հասարակության» տեսությանը։

Բանն այն է, որ կապիտալիզմը վերդասակարգային «ինդուստրիալ հասարակությամբ» քողարկելու միջոցով փրկելու փորձերն ըստ իրենց դարն ապրած հասարակարգի նորելուկ փաստաբանների տրամաբանության, պահանջում են «ընդուստրիալ հասարակություն» հասկացությունը տարածել աշխարհի տնտեսապես զարգացած բոլոր երկրների վրա՝ անկախ այդ երկրներում տիրող արտադրահարաբերությունների բնույթից։ Ուստի, առաջ է քաշվում «միասնական ինդուստրիալ հասարակության» գլոբալ տեսությունը, հասարակություն, դեպի որը, իբր, ընթանում են բոլոր ժողովուրդները՝ անկախ իրենց երկրներում գոյություն ունեցող սոցիալ-տնտեսական սիստեմից։

Հարկ է նշել, որ կոնվերգենցիայի տարբեր կարգի տեսաբաններին միավորում է մի ընդհանուր բան։ Եթե կառուցելու լինենք նրանց հայացքների մոդելը, ապա կստացվի մոտավորապես հետևյալ պատկերը։

Նրանք իրենց տեսական կոնցեպցիաները զարգացնում են, օգտագործելով կապիտալիզմի մարքսյան քննադատությունը, քանի որ այդ քննադատությունը խորապես բացահայտում է կապիտալիստական հարաբերությունների բուն էությունը, ցույց է տալիս անհաշտելի հակասությունների վրա հիմնված բուրժուական հասարակության ձևավորման իսկական բնույթը։

Իհարկե, կոնվերգենցիայի տեսաբանները դրանով մարքսիստներ չեն դառնում, որովհետև հենվելով հաճախ յուրովի մեկնաբանվող Մարքսի առանձին դրույթների վրա, նրանք անում են բնավ ոչ-մարքսիստական հետևություններ արդի հասարակության զարգացման հեռանկարների մասին։

Կոնվերգենցիայի տեսության պաշտպաններն իրենց տեսական կոնցեպցիաները, վերջ ի վերջո, ավարտում են մի ինչ-որ «նոր» ուտոպիական սոցիալիզմով։ Ամերիկյան փիլիսոփա Հերբերտ Մարկուզեն, վերլուծելով արդի կապիտալիստական հասարակությունը, մի կողմից՝ նրա նկատմամբ արձակում է այսպիսի խիստ դատավճիռ. «Լինելով անհոգի, մինչև ուղնուծուծը ռացիոնալացված, ստանդարտացված, անհատին առանց մնացորդի լուծելով սառը ընդհանրության մեջ, նա արժանի է միայն մի ճակատագրի՝ լիակատար ժխտման»։ Մյուս կողմից՝ գտնում է, որ մասնավոր սեփականության վերացումն ինքնին դեռ ոչինչ չի վճռում։ Եթե արտադրամիջոցներն ազգայնացման ձևով հանրայնացնելը «չի օգտագործվում ազատ անհատի զարգացման ու բավարարման համար, ապա դրանք պարզապես հանգում են անհատներին աստիճանի բարձրացված ինչ-որ ընդհանրության ենթարկելու մի նոր ձևի»[1]։ Ավելին, Մարկուզեն ժխտում է սոցիալիստական սեփականությունը, որը, իբր, նոր օտարման ու սարկացման հիմք և աղբյուր է։

Նույնն է պնդում նաև ամերիկյան գիտնական, սոցիոլոգ Էրիխ Ֆրոմը։ «Կապիտալիզմի օրոք,— գրում է նա,— տնտեսական գործունեությունը, հաջողությունը, նյութական շահն ինքնանպատակ են դառնում։ Մարդը դարձել է

[1] См. Э. Я. Баталов, Л. А. Никитич, Я. Г. Фогелер, «Поход Маркузе против марксизма», М., 1970 г.



վիթխարի մեքենայի պտուտակը, որը կարևոր է, եթե մեծ կապիտալ ունի,
անկարևոր, եթե կապիտալ չունի»։
Քննադատելով արդի կապիտալիստական հասարակության սոցիալ-տըն-
տեսական հակասությունները, Ֆրոմը նույնպես հանդես է գալիս հանրային
սոցիալիստական սեփականության դեմ։ Նույնացնելով տարբեր հասարակա-
կան-տնտեսական սիստեմները, նա պնդում է, թե սոցիալիզմը բնավ ավելի
լավ, ավելի խելացի և մարդասիրական սոցիալական պայմաններ չի ստեղ-
ծում, քան կապիտալիզմը։
Ինչպես երևում է այդ վկայություններից, կապիտալիզմն այլևս չի պատ-
կերվում որպես հասարակական կառուցվածքի իդեալ։ Չափազանց պարա-
դոքսային է այն, որ եթե առաջ բուրժուական գաղափարախոսները խոսում
էին սովետական էկոնոմիկայի վերասերման մասին, որը, իբր, «դրեյֆում» է
դեպի կապիտալիզմ, իսկ վերջինը մնում է անսասան, ապա այժմ շեշտը
դրվում է այն բանի վրա, որ ընդգծվի երկու հակադիր սիստեմների «նմա-
նությունը», նրանց «սինթեզի» անխուսափելիությունը։
Իր Նոր ինդուստրիալ ճասարակությունը գրքում Ջ. Կ. Հելբրեյտն ուղղակի
պնդում է, թե բավական է սովետական էկոնոմիկան ազատել պետական պլա-
նային ապարատի և կոմունիստական կուսակցության վերահսկողությունից,
որպեսզի այն որպես ջրի երկու կաթիլ նմանվի «կապիտալիստական էկոնո-
միկային առանց կապիտալիստի»։ Նշելով գիտա-տեխնիկական առաջընթացի
վրա հիմնված ժամանակակից արտադրության զարգացման հսկայական
մասշտաբները, նա ազդարարում է. «Այսպիսով, մենք տեսնում ենք, որ երկու
կարծես հակադիր ինդուստրիալ սիստեմների կոնվերգենցիա է տեղի ունենում
բոլոր կարևորագույն բնագավառներում»[1]։
Իսկ բուրժուական տեսաբանների կարծիքով, ի՞նչ ուղղություններով են
փոխադարձաբար իրար մերձենում երկու հակադիր սոցիալ-տնտեսական սիս-
տեմները։ Ամենից առաջ, գիտա-տեխնիկական հեղափոխությամբ, որը համա-
նման պրոցեսներ է առաջացնում երկու սիստեմների արտադրական ոլոր-
տում, այն է՝ ձեռնարկությունների խոշորացում, արդյունաբերության տեսա-
կարար կշռի ավելացում երկրի էկոնոմիկայում, աշխատուժի քանակի կըր-
ճատում գյուղատնտեսության մեջ։
Կոնվերգենցիայի տեսության հեղինակների կարծիքով, այդպիսի պրո-
ցեսները վերացնում են երկու տնտեսական սիստեմների տարբերությունները
և ուժեղացնում նրանց նմանությունը։ «Տեխնիկայի զարգացման մակարդակի
տեսակետից,— գրում է ամերիկյան սոցիոլոգ Պ. Սորոկինը,— երկու երկըր-
ներն էլ (ԱՄՆ-ը և ՍՍՀՄ-ը) էապես արդեն նման են միմյանց։ Երկու ազգերն
էլ օգտագործում են միևնույն արդյունաբերական տեխնիկան՝ ընդհուպ մինչև
մասսայական արտադրության ավտոմատացման կիրառումը»։
Ինչպես հայտնի է, նմանության տարրեր կարելի է գտնել նույնիսկ փո-
խադարձաբար իրար բացառող ամեն տեսակ պրոցեսների ու երևույթների
մեջ։ Իհարկե, տեխնիկան կապիտալիստական և սոցիալիստական երկրներում
նույնպես կարող է նման լինել։ Սակայն անգամ տեխնիկայի և ճյուղային
կառուցվածքի քիչ թե շատ նմանության դեպքում էլ սոցիալիզմի տնտեսա-
կան սիստեմը արտադրահարաբերությունների տիպով արմատապես տար-

[1] Дж. К. Гэлбрейт, «Новое индустриальное общество», Москва, «Прогресс», 1969 г., стр. 454.

բերվում է կապիտալիստական տնտեսական սիստեմից։ Արտադրամիջոցների հանրային սեփականությունը միանգամայն հակադիր է մասնավոր սեփականությանը, իր և հասարակության համար կատարվող սոցիալիստական աշխատանքը՝ շահագործողների համար կատարվող վարձու աշխատանքին, հասարակության անդամների պահանջմունքների լիակատար բավարարմանը ծառայող արտադրությունը՝ կապիտալիստական շահույթին ծառայող արտադրությանը։

Որպես կարևոր փաստարկ հօգուտ այն բանի, թե կապիտալիզմը և սոցիալիզմը զարգանում են կոնվերգենցիայի ուղիով, բուրժուական տեսաբանները վկայակոչում են նաև պետության իբր թե փոխված դերը, որն անմիջականորեն ներգործում է կապիտալիստական երկրների տնտեսական կյանքի վրա։ Նրանք հավասարության նշան են դնում կապիտալիստական ծրագրավորման և սոցիալիստական պլանավորման միջև, առաջ են քաշում այն կոնցեպցիան, թե արդի պայմաններում դասակարգային հակասությունները «անհետանում են»։ Այս վերջին կոնցեպցիան բուրժուական պրոպագանդայի զինանոցում գրավում է առաջատար տեղերից մեկը և գիտա-տեխնիկական հեղափոխության հետևանքների հակամարքսիստական աղճատման առավել տարածված տարատեսակն է։

Ընդ որում, բուրժուական սոցիոլոգներն ու տնտեսագետները վկայակոչում են այն փոփոխությունները, որ իրոք տեղի են ունեցել մեր ժամանակներում— ծառայողների թվի աճը, ծառայությունների ոլորտի ընդլայնումը, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների լայն կիրառումը հասարակական կյանքի տարբեր ոլորտներում և այլն։

Այս բոլորից արվում է այն հետևությունը, թե արդի պայմաններում կապիտալիզմի մասին չի կարելի խոսել այդ բառի ավանդական իմաստով, քանի որ տեղի է ունենում բանվոր դասակարգի և բուրժուազիայի «անհետացման» պրոցես։ Օրինակ, Հելբրեյթը գտնում է, որ այսօր կապիտալիստական հասարակության պայմաններում «իշխանությունն անցել է տեխնոստրուկտուրայի ձեռքը»։ Ըստ Հելբրեյթի, տեխնոստրուկտուրան մարդկանց բավական մեծաթիվ մի խումբ է, որոնք ունեն ժամանակակից արդյունաբերական արդյունաբերության համար անհրաժեշտ մասնագիտական տեխնիկական գիտելիքներ։ Այդ մասնագիտական խումբն ընդգրկում է ինչպես կորպորացիաների ղեկավարներին, այնպես և ստորին ծառայողներին։ Նրա կարծիքով, ներկայումս գլխավորը ոչ թե աշխատանքի և կապիտալի, աղքատության և հարստության հակասությունն է, այլ կրթվածության և տգիտության միջև եղած կոնֆլիկտը։ Ուստի, տեխնոստրուկտուրան «խորապես կախված է մանկավարժների ու գիտնականների դասից, քանի որ այդ դասը նրան ուսյալ կադրեր է մատակարարում»։

Հետևաբար, «գիտնականների և մանկավարժների դասին,— գրում է նա, — վճռական դեր է պատկանում հասարակության վերափոխման գործում»[1]։

Կրկնելով բուրժուազիայի ջատագովների գաղափարները, ռևիզիոնիստ Ռ. Գարոդին իր Սոցիալիզմի մեծ շրջադարձը գրքում նույնպես խոսում է գիտա-տեխնիկական ինտելիգենցիայի թվի ավելացման և նրա աճող դերի մասին։ Այդ հիման վրա նա ենթադրում է «բանվոր դասակարգ» հասկացությունը փոխարինել «պատմական նոր բլոկ» հասկացությամբ, մի բլոկ, որը

[1] Дж. К. Гэлбрейт, Новое индустриальное общество, стр. 435.



նա բնութագրում է որպես ֆիզիկական ու մտավոր աշխատողների ամբողջություն, անտեսելով ինտելիգենցիայի տարբեր խմբերի միջև եղած սոցիալական մեծ տարբերությունները։ Այդ կերպ նա բանվորներին և ինտելիգենցիայի լայն շրջաններին միավորում է մեկ միասնական սոցիալ-քաղաքական ամբողջության մեջ։ Ավելին, մարդկանց աչքերին թոզ փչելով «պատմական նոր բլոկ» հասկացությամբ, Գարոդին պնդում է, թե գիտնականներն ու հետազոտողները «ներկայումս. աշխարհի վերափոխման վճռական ուժի կրողներն են»։ Ըստ նրա տրամաբանության, բանվոր դասակարգը դադարում է
արդի հեղափոխական պրոցեսի հեգեմոնը լինելուց։

Անտարակույս, ժամանակակից տեխնիկան և արտադրության կազմա-
կերպումը կարիք ունեն բարձրորակ ու տաղանդավոր մասնագետների, որոնց
կարծիքը հաշվի են առնում կապիտալիստական կորպորացիաների ղեկավար-
ները կոնկրետ տնտեսական խնդիրները լուծելիս։ Բայց վճռական խոսքը,
այնուամենայնիվ, պատկանում է կապիտալի սեփականատերերին։ Այդ տե-
սակետից Հելբրեյթի և Գարոդիի հայացքների ուտոպիականությունը հազիվ
թե կասկած հարուցի։ Մոնոպոլիստական կապիտալի ներկայացուցիչները,
դրամապարկի ասպետները ո՛չ միայն իշխանությունը կամավոր չեն զիջի
գիտնականների և մանկավարժների դասին, այլ, ընդհակառակը, կձգտեն
ստրկացնել նրան։ Վերջին հաշվով, գիտական ինտելիգենցիան միշտ եղել է
քաղաքականության հլու սպասավորը, իշխող վերնախավի կամակատարը։
Ինչ վերաբերում է «տեխնոստրուկտուրայի տեսությանը», ապա այն, ըստ
էության, ժխտում է դասակարգային պայքարը և բանվոր դասակարգի հեղա-
փոխական դերն արդի պայմաններում։
Ինչպես հայտնի է, աշխատանքի բնույթի փոփոխությունը դասակարգա-
յին պատկանելություն չի նշանակում։ Դասակարգային պատկանելության
վճռական հատկանիշը ոչ թե արտադրության մեջ ֆիզիկական կամ մտավոր
էներգիայի ծախսումն է, այլ այն տեղը, որ մարդկանց այս կամ այն խումբը
գրավում է հասարակական հարաբերությունների որոշակի սիստեմում։ ««Պրո-
լետար» ասելով,— գրել է Կ. Մարքսը,— տնտեսագիտական իմաստով պետք
է հասկանալ բացառապես վարձու բանվորին, որը «կապիտալ» է արտադրում,
մեծացնում է նրա արժեքը և փողոց է շպրտվում, հենց որ ավելորդ է դառ-
նում «պարոն կապիտալի» ինքնաճման պահանջների համար» (Կ. Մարքս,
Կապիտալ, հ. 1, Հայպետհրատ, 1954, էջ 644)։
Փաստերը վկայում են, որ գիտա-տեխնիկական հեղափոխությունը ո՛չ
միայն չի փոխում շահագործման վրա հիմնված կապիտալիստական հասա-
րակարգի բնույթը, այլ, ընդհակառակը, ավելի է խորացնում և սրում դասա-
կարգային շերտավորումը։ Պրոլետարիատի կազմը դառնում է ավելի բարդ ու
բազմազան։ Գրասենյակային և առևտրական ծառայողների մասսան, տեխ-
նիկներն ու շարքային ինժեներները, որոնք, իբր, դուրս են մղում բանվոր
դասակարգին, կորցնում են նրանց բանվորներից տարբերող վերջին արտո-
նությունները։ Երևան է գալիս պրոլետարիատի հետ միաձուլվելու տենդենցը։
Որոշ հաշվարկումներով այժմ Ամերիկայում առանց աշխատանքի են
մնացել ոչ պակաս, քան հարյուր հազար գիտա-տեխնիկական աշխատողներ։
Գիտական աստիճան ունեցող 20 հազար ֆիզիկոսից 3 հազարն արդեն
անցյալ տարվա վերջերին առանց հաջողության իրենց գիտելիքների կիր-
առումն էին որոնում։ «Տնտեսական առողջացման ոչ մի մասշտաբ,— գրում

է այդ առթիվ ԱՄՆ-ի գործարար շրջանների օրգան «Բիզնես ուիկ» հանդեսը, — չի կարող աշխատանքի վերադարձնել այն մասնագետներին ու գիտնականներին, որոնք առաջ զբաղված էին պետական ծրագրերի կատարմամբ»[1]։

Այսպիսով, արդի պայմաններում պետք է խոսել ոչ թե դասակարգային պայքարի մարման, այլ այդ պայքարի ճակատի ընդլայնման մասին՝ պրոլետարիատի հետ ծառայողների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ավելի սերտ միասնություն հաստատելու համար։

«Առատության հասարակության», «ընդհանուր բարեկեցության» վերաբերյալ կոնվերգենցիայի տեսաբանների դեմագոգիական ու կեղծավոր հայտարարությունները, ըստ էության, կոչված են քողարկելու կապիտալիստների դասակարգի և աշխատավոր լայն զանգվածների միջև խորացող սոցիալական անդունդը։

Իսկ որո՞նք են արդի հասարակության հետագա զարգացման հեռանկարները և կապիտալիզմի սոցիալ-տնտեսական հակասությունների վերացման կոնկրետ ուղիները։ Կոնվերգենցիայի բուրժուական տեսության գաղափարախոսները, հանդես գալով ապագան գուշակողների՝ ֆուտուրոլոգների դերում, ստեղծված դրությունից դուրս գալու ելքը տեսնում են «նոր» ուտոպիական սոցիալիզմի զանազան մոդելներ կառուցելու մեջ։

Մարկուզեն, ըստ էության, ժխտում է բանվոր դասակարգի կուսակցության՝ որպես բանվորական շարժման «ուղեղակենտրոնի», դերի մարքսիստական դրույթը և այդ ֆունկցիան հանձնում է բուրժուական «ձախ» ինտելիգենցիային ու կապիտալիստական հասարկության այլ ամեթսայդերներին։

Հ. Մարկուզեի ուտոպիական սոցիալիզմի բնորոշ առանձնահատկությունը համաշխարհային հեղափոխական շարժման մեջ «երրորդ աշխարհի» դերի վերաբերյալ նրա կոնցեպցիան է։

«Երրորդ աշխարհը» (այսինքն՝ զարգացող երկրները) հանդես է գալիս որպես բազմաթիվ «հեղափոխական», ձախ-արմատական տեսությունների մատակարար, տեսություններ, որոնք համերաշխվում են Մարկուզեի տեսության հետ։

Ելնելով «բուրժուա-ազգերի» և «պրոլետար-ազգերի» տեսությունից, որը միացած է կոնվերգենցիայի «զտված» տեսության հետ, Մարկուզեն իրար է հակադրում «երրորդ աշխարհը» և սոցիալիստական երկրները, վերջիններիս և զարգացած կապիտալիզմի երկրներին միավորելով մեկ բլոկի մեջ։

Միջազգային հեղափոխության և «երրորդ աշխարհի» ազատագրման մարկուզեական տեսության հիմնական արատը սոցիալիզմի երկրների՝ որպես համաշխարհային հեղափոխական պրոցեսի ավանգարդային ուժի, անտեսումն է։

Չնայած Ջ. Հելբրեյտի, Ռ. Արոնի, Յա. Տինբերհենի և կոնվերգենցիայի մյուս տեսաբանների առաջարկած ապագա «սինթեզված հասարակության» մոդելների տարբերությանը, դրանց բոլորի հիմքում ընկած է ամերիկյան տնտեսագետ Ու. Բակինհեմի սխեման, որը նա ներկայացրել է իր՝ Տնտեսական, տնտեսագիտական սիստեմներ, համեմատական անալիզ գրքում։ Հեղինակը պնդում է, թե «սինթեզված հասարակությունը» կապիտալիզմից փոխառնում է արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը, մրցակցությունը, շուկայական սիստեմը, շահույթը և մյուս նյութական խթանները։

1 «За рубежом», № 90, 1971 г.



Նրա խոսքերով, սոցիալիզմից ապագա տնտեսական սիստեմին կանցնեն պլանավորումը, բանվորական վերահսկողությունն աշխատանքի պայմանների նկատմամբ և բնակչության եկամուտների հավասարությունը։

Արդի կապիտալիստական հասարակության բնեռայնացման հիման վրա ապագա հասարակությունը կանխագուշակելու այս բոլոր փորձերը գիտականորեն սնանկ են։ Այն փաստը, որ ներկայումս իրոք նկատվում են կոնվերգենցիայի առանձին տարրեր, բնավ չի հակասում այն սկզբունքային պնդմանը, որ սոցիալիզմի և կապիտալիզմի զարգացման մեջ, ամենից առաջ, որոշիչ ու վճռական դեր է խաղում դիվերգենցիան՝ միևնույնն է, մենք քննարկում ենք ներկան, թե ապագայի հեռանկարները։ «Միասնական ինդուստրիալ հասարակության» կամ «պոստինդուստրիալ հասարակության» և այլ կոնցեպցիաները բուրժուազիայի գաղափարախոսներն առաջ են քաշում, որ հերքեն պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի վերաբերյալ մարքսիստական հայացքը, ապացուցեն, թե պետության հետ մոնոպոլիաների միաձուլումը հավասարազոր է սոցիալիզացիային։

Այսպիսով, կոնվերգենցիայի տեսաբանները, քննարկելով արդի բուրժուական հասարակության սոցիալ-տնտեսական հակասությունները, հետապնդում են սոսկ հեռավոր նպատակներ։ Նախ, նույնացնելով իրենց էությամբ տարբեր երկու սոցիալ-տնտեսական սիստեմները, նրանք դրանով իսկ միաժամանակ իրենց քննադատության սուր ծայրն ուղղում են սոցիալիզմի դեմ։ Երկրորդ, կոնվերգենցիայի տեսաբանները հասարակական զարգացման անաչառ վերլուծման պատրվակով, ըստ էության ձգտում են անցկացնել «նոր» ուտոպիական սոցիալիզմի վերաբերյալ իրենց կոնցեպցիաները, ավելի ճիշտ՝ «բարելավված կապիտալիզմի» քողարկված մոդելը։

Վերջապես, երրորդ, կոնվերգենցիայի քարոզիչները, հանդես գալով մոնոպոլիստական կապիտալիզմի ջատագովների դերում, «նոր տեսություններ» են թխում՝ աշխատավոր մասսաներին մշտապես հոգևոր գերության մեջ պահելու, նրանց ուշադրությունն իր դարն ապրած շահագործողական հասարակարգի դեմ մղվող պայքարից շեղելու համար։

Այսպիսով, փորձելով վարկաբեկել գիտական կոմունիզմի գաղափարները, նրանք օգտագործում են ավելի նրբին մեթոդներ, քան իրականության կոպիտ կեղծումն է, որը հատուկ է բուրժուական գաղափարախոսների առավել ռեակցիոն թևին։ Իր ֆունկցիայով կոնվերգենցիայի տեսությունը սոցիալիստական հասարակության դեմ ուղղված սուր և վտանգավոր զենք է։ Ահա թե ինչու այդ և իրենց ոգով նրան մոտիկ մյուս ձախ-արմատական տեսությունների քննադատությունը գաղափարական պայքարի կենսական խնդիրն է և մարքս-լենինյան տեսության հետագա զարգացման կարևոր պայմանը։



Հ. Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ

ՀՍՍՀ վաստակավոր ճարտարապետ

# ՔԱՂԱՔԱՇԻՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Հայաստանը Սովետական Միության ամենահարավային եզրամասերից
է և, լեռնային երկիր լինելով, հարուստ է առողջարանների ու հանգստավայ-
րերի համար նպաստավոր կլիմայական պայմաններ ունեցող գեղեցիկ վայ-
րերով, որոնք գտնվում են նախալեռնային ու լեռնային գոտիներում, ծովի
մակերևույթից 1200—2000 մետր բարձրություններում: Համարյա այդ բոլոր
վայրերում կան բուժիչ հատկություններ ունեցող հանքային ջրեր և հնարա-
վոր է զուգակցել կլիմայական բուժումը բալնեոլոգիականի հետ:

Սակայն նախասովետական Հայաստանում առողջարաններ չկային: Ստե-
փանավանը, Կիրովականը, Ծաղկաձորն ու Դիլիջանը հովեկների ամառանո-
ցային վայրերն էին: Առողջարանների կառուցումն սկսեց ծավալվել միայն
Հայրենական պատերազմից հետո: Մինչ այդ նորաստեղծ հանրապետության
առաջ ծառացած էին տնտեսական զարգացման առավել կարևոր, կենսական
խնդիրներ: Պետք էր վերացնել ողջ երկրի տեխնիկական ու տնտեսական դա-
րավոր հետամնացությունը: Երկրին հացի պես անհրաժեշտ էին երկաթ,
պղինձ, ալյումին, կաուչուկ, կիր, ցեմենտ, պարարտանյութեր...:

Մեր լեռների ընդերքում կային այդ բոլոր հարստությունները: Եվ, քանի
որ գյուղատնտեսության զարգացման համար չկային լայն հնարավորություն-
ներ, Հայաստանը շատ վաղ ընտրեց արդյունաբերական զարգացման ուղին:

Սակայն, նախապատերազմյան տարիներին արդյունաբերության տեղա-
բաշխումը կատարվում էր անհամաչափ ձևով, հանրապետության մի քանի՝
հիմնականում երկաթգծի մոտ գտնվող վայրերում և կառուցված հիդրոէլեկ-
տրակայաններից ոչ հեռու (Երևան, Լենինական, Ալավերդի): Զնախատեսված
արագ տեմպերով զարգացավ մայրաքաղաքի արդյունաբերությունը, անեց
բնակչությունը: Փոքր-ինչ դանդաղ երևան եկան արդյունաբերական այլ օջախ-
ներ: Հանրապետության որոշ բնակավայրերում բնակչությունը դանդաղ էր
անում, իսկ գյուղական վայրերից մեծ հոսք էր տեղի ունենում դեպի քաղաք-
ները:



Հետպատերազմյան տարիներին և, մանավանդ, վերջին երեք հնգամյակ-
ներում, Հայաստանի արդյունաբերության զարգացումը և, դրա հետ կապված,
քաղաքաշինական աշխատանքները ծավալվեցին մեծ մասշտաբներով, տեղի
ունեցան և որակական փոփոխություններ:

Հայաստանի կկ կենտկոմի, Մինիստրների սովետի և պլանավորող մար-
մինների ձեռնարկած միջոցների շնորհիվ հաջողվեց բեկում առաջացնել այդ
գործում, արդյունաբերական ձեռնարկությունները տեղաբաշխել թույլ զար-
գացած քաղաքներում, շրջկենտրոններում, նույնիսկ՝ գյուղատնտեսական
վայրերում:

Այժմ, երբ մեր հանրապետության բնակչության 55 տոկոսն ապրում է
քաղաքներում, և նրանց մեծ մասն զբաղված է արդյունաբերության ոլորտում,
պետք է ճշտել նրա հետագա զարգացման ուղիներն ու ընթացքը, ելնելով
ստեղծված դրությունից և երկրի յուրահատուկ պայմաններից:

Մենք չենք կարող չօգտագործել մեր երկրի հանքային հարստություննե-
րը, չզարգացնել դրանց հիման վրա ստեղծված արտադրությունը: Բայց ար-
դյո՞ք դա միակ հնարավորն է, միակ միջոցը աշխատող ձեռքերն զբաղեցնե-
լու, արժեքներ ստեղծելու, բարեկեցիկ կենսապայմաններ ապահովելու և ար-
դյո՞ք միայն դա է անհրաժեշտ ո՛չ միայն մեր հանրապետությանը, այլև ողջ
Միությանը: Ժամանակակից տրանսպորտային հնարավորությունների պայ-
մաններում արտադրական ձեռնարկություններ կարելի է հիմնել երկրի ցան-
կացած վայրում, իսկ առողջարանների համար պիտանի բնակլիմայական
պայմաններ ու հանքային ջրեր կան միայն որոշակի տեղերում:

Այս հարցը կարևոր է, առաջին հերթին, արտադրուժերի զարգացման
պլանավորման համար, սակայն դրանով է պայմանավորված նաև քաղաքա-
շինության զարգացման ընթացքը: Ահա այս հարցի լուծման առնչությամբ
իսկ բնավ չպետք է անտեսել մեր հանրապետության բնակլիմայական պայ-
մանների առավելությունները առողջարանների և հանգստավայրերի ստեղծ-
ման նպատակով:

Աշխարհում կան շատ քաղաքներ և անգամ երկրներ, որոնց տնտեսական
հիմքն են առողջարանային գործոնները — ծովը, հանքային ջրերը, կլիմա-
յական առողջարար պայմանները և դրանց հետ կապված հիմնարկություննե-
րը, սպասարկման համար անհրաժեշտ արտադրական ձեռնարկությունները:

Դիլիջանի կլիմայական բուժիչ գործոնները ոչնչով չեն զիջում լավագույն
առողջարաններին՝ Շվեյցարական Դավոսին, մեր Աբասթումանին և Տեբեր-
դային, իսկ որոշ առումով գերազանցում են: Դիլիջանն ունի նաև հանքային
շատ արժեքավոր բուժիչ ջուր, հար և նման Ֆրանսիայի հանրահայտ Վիշիի
հանքային ջրին: Մենք ունենք բազմաթիվ լեռնային բնակավայրեր Սևանի
ավազանում, Լոռիում, Ստեփանավանի, Կալինինոյի, Շամշադինի, Իջևանի,
Նոյեմբերյանի, Կրասնոսելսկի շրջաններում և Զանգեզուրում, որոնք նույնպես
կարող են կլիմայական առողջարաններ դառնալ: Մեր՝ արդեն հայտնի հան-
քային ջրերի թվում կան Կիսլովոդսկի Նարզանի, Եսենտուկիի, Կարլովի-Վա-
րիի և շատ ու շատ այլ ջրերի նմանակները Արզնիում, Ջերմուկում, Սևանի
ափին, Հանքավանում և այլուր: Դրանց թիվն ու տեսակներն օրեցօր ավելա-
նում են:

Հարց է ծագում, ո՞րն է նպատակահարմար. Դիլիջանում, Արզնիում,
Ստեփանավանում, Սևանի ափերին, Հանքավանում և նման այլ վայրերում

հիմնել առողջարաններ և տեղի բնակչությանն աշխատանքով ապահովել, ա՞յդ հաստատություններում, թե՞ դրա համար կառուցել արտադրական նոր ձեռնարկություններ:

Քսանական-երեսնական թվականներին այդպիսի հարցադրում չէր կարող լինել. մարդկանց անհրաժեշտ էր, նախ կերակրել, հագցնել, ապա միայն մտածել նրանց առողջարան ուղարկելու մասին: Առողջարանների հարցն այն ժամանակ էլ թեև կարևոր, բայց Հայաստանի համար դեռևս հասունացած չէր նաև այն պատճառով, որ չկային հարմար տրանսպորտային կապեր: Այժմ Խաբարովսկից, Մագադանից, Տոմսկից, Միջին Ասիայից ինքնաթիռով գալիս են Ջերմուկ և Արզնի՝ բուժվելու: Սովետական Միությունում այժմ մեծ է լեռնային և հանքային ջրերով հարուստ առողջարանների կարիքը: Անհամեմատ բարձրացել են և մեր հանրապետության բնակչության պահանջմունքներն այս ասպարեզում: Հայաստանի բնակչության մեծ մասը բուժվելու և հանգստանալու է գնում Միներալնիե Վոդի, Սև ծովի ափերը, Ղրիմ և այլուր ոչ թե նրա համար, որ այնտեղ բուժիչ ջրերը և կլիմայական գործոններն ավելի լավ են, բնա՛վ. գնում են, որովհետև մեր առողջավայրերում չկան անհրաժեշտ պայմաններ— հարմարավետ բնակարաններ, անբավարար է առողջարանների ու հանգստյան տների թիվը, ինչպես հարկն է չեն կազմակերպվում կուլտուր-կենցաղային սպասարկումը, կոմունալ տնտեսությունը, մատակարարումն ամառվա ամիսներին:

Տնտեսական կարևոր նշանակություն ունի նաև առողջարանների հանքային ջրերի օգտագործումը (խմելու համար) թե՛ մեզ մոտ և թե արտասահմանում: Դրա համար անհրաժեշտ են ջրի լցման գործարաններ, փոխադրամիջոցներ, շշերի արտադրության կազմակերպում: Այս ասպարեզները ևս եկամտի, բնակչությանն աշխատանքով ապահովելու հնարավորությամբ քաղաքաստեղծ գործոններ են: Մինչդեռ առողջարար գերազանց պայմաններով օժտված Դիլիջանում, առողջարաններ հիմնելու փոխարեն, կառուցվեց գործարան (բնակչության աշխատող ձեռքերն զբաղեցնելու նպատակով):

Հետայսու, արտադրական ձեռնարկությունները տեղադրելիս, անհրաժեշտ է հարցն ուսումնասիրել *բազմակողմանիորեն*, հաշվի առնել քաղաքաշինության ու բնակչության կյանքի բարգավաճման բուն հեռանկարները:

Սակայն պետք է նշել, որ այս մարզում կարևորը ո՛չ միայն տեղի հարցն է, այլ, առհասարակ, վնասակար արտադրությունների վնասազերծման խնդիրը: Ո՛ւր էլ տանելու լինենք սինթետիկ կաուչուկի գործարանը, հեռացնենք մի բնակավայրից, միևնույն է՝ մեր փոքրիկ հանրապետությունում մոտեցնելու ենք այն մի այլ բնակավայրի: Միաժամանակ այդ գործարանից անբաժան են մնում այնտեղ բանող բազմաթիվ բանվորներ, որոնց առողջության հոգսը համապետական նշանակություն ունի:

Աշխատավորների առողջապահության խնդիրը պետք է մտահոգի ամենքին: Արտադրապրոցեսների կատարելագործմամբ, դրանք հերմետիկ դարձնելու միջոցով միայն հնարավոր կլինի վերացնել արտադրության վնասակարությունը: Այս խնդրի լուծումն առավել կարևոր է քիմիայի զարգացմամբ աչքի ընկնող, քիմիայի հումքով հարուստ մեր հանրապետության համար. մեր գիտահետազոտական հաստատությունները պետք է ավելի արդյունավետ գործունեություն ծավալեն այս ասպարեզում: Գիտությունն ու տեխնիկան ստեղծեցին անխուսափելի մի բնագավառ, որն ունի և իր բացասական հետևանքները: Այդ նույն գիտությունն ու տեխնիկան կարող են և պետք է միջոցներ ստեղծեն արտադրական պրոցեսների վնասազերծման համար: Կարևոր է նաև գործարանների հզորությունը. չպետք է մի տեղում կուտակել մեծ թվով, կամ հզոր քիմիական գործարաններ:

Պլանավորող օրգանները, կանխորոշելով հանրապետության տնտեսական զարգացման ուղիները, պետք է հաշվի առնեն այս հանգամանքը և քաղաքաստեղծ գործոնների թվում, գործարաններից բացի, նոր և շատ կարևոր համարեն առողջարանային բնակավայրերի ստեղծման անհրաժեշտությունը մեր հանրապետությունում:

Ավտոմոբիլային և օդային հաղորդակցությունների զարգացման շնորհիվ երկրագնդի բնակչությունն այժմ շատ ավելի շարժունակ է, քան 20—30 տարի առաջ: Միաժամանակ բարձրացել է մարդկանց կենսամակարդակը, ավելացել ազատ ժամանակը: Այդ ամենը խթանում է տուրիզմի զարգացմանը. առավել մասսայական է դարձել ուրիշ երկրների բնությանը, մարդկանց, արվեստի կոթողներին ծանոթանալու ձգտումը: Աշխարհի բոլոր երկրներում զգալի միջոցներ են հատկացվում տուրիզմի ծավալմանը. դրա նպատակն է բնության և կենդանական աշխարհի հարստությունների պահպանումը, դրանց զարգացումը, ինչպես և ճարտարապետության ու արվեստի կոթողների ցուցադրումը:

Կապիտալիստական երկրներում այդ ամենն արվում է, մեծ մասամբ, մասնավոր նախաձեռնությամբ: Օտարերկրյա տուրիստներն են մեծ չափով ապահովում Հունաստանի և Իսպանիայի տնտեսական դրությունը: Եվ այդ շնորհիվ այն բանի, որ նշված երկրներն ունեն տուրիստներին ընդունելու անհրաժեշտ պայմաններ— ժամանակակից հյուրանոցներ՝ լավագույն հարմարություններով, ուր պատշաճ ձևով է կազմակերպված սպասարկումը:

Ֆրանսիան, որ տուրիզմի ամենաճանաչված երկրներից էր, վերջերս ետ է մնացել այդ մարզում և այժմ խոշոր միջոցներ է հատկացնում դրան: Ծրագրվում է այնտեղ ընդարձակել արգելանոցների և ազգային այգիների տարածությունները՝ լանդշաֆտի և կենդանիների պահպանման նպատակով. քաղաքաշինարարներին և ճարտարապետներին հանձնարարվում է մշակել տուրիստական գոտիներ. ամբողջովին տուրիզմին է հատկացվում Կորսիկա կղզին, իսկ Իտալիայում՝ Սիցիլիան: Առանձնապես մեծ ուշադրություն է նվիրվում տուրիզմի և հանգստի հետ առնչվող սպորտային միջոցառումների զարգացմանը (ամռանը՝ լող և նավարկություն, ձմռանը՝ դահուկային, չմշկային սպորտ):

Հայաստանի ինքնատիպ բնությունը, ձևերի ու գույների հարուստ բազմազանությունը՝ լերկ ժայռերով, անդնդախոր ձորերով, կուսական անտառներով և սառնորակ աղբյուրներով, Արարատյան դաշտավայրով, Սևանով ու Արագածով և հիշատակված առողջարանային վայրերով, մեր հանրապետությանն ընձեռում են տուրիզմի զարգացման ռեալ հնարավորություններ:

Բացի բնական գեղեցկություններից, Սովետական Հայաստանի փոքր տարածության վրա կան 2000-ից ավելի ճարտարապետական պատմական հուշարձաններ, որոնցից շատերն արվեստի համաշխարհային արժեք ունեցող կոթողներ են: Այդ հուշարձանները դարերով անհայտ են եղել քաղաքակիրթ ժողովուրդներին, որոնք հայերի մշակույթի մասին շատ աղոտ, թերի պատկերացում են ունեցել: Մոռացված են եղել այդ հուշարձանների ճանապարհները և մեր՝ հոգսերով ծանրաբեռն ժողովուրդը միայն այժմ, ազգային վերա-

ծնության օրերին է ի վիճակի պատշաճ ուշադրություն նվիրել դրանց: Հուշարձանները պահպանվում և նորոգվում են պետության ու հասարակական կազմակերպությունների կողմից, կառուցվում են ճանապարհներ... Այժմ աշխարհի բոլոր կողմերից ո՛չ միայն հայ տարագիր հայրենասերներ, այլև բազում օտար տուրիստներ են գալիս Հայաստան՝ նրա հին ու նոր մշակույթին ծանոթանալու, այնքան ինքնատիպ բնության գեղեցկություններով հիանալու:

Եվրոպական երկրների արվեստասեր շատ գիտնականների, ճարտարապետների համար Հայաստանը և նրա ճարտարապետական հուշարձանները ուսումնասիրության կարևոր բնագավառ են: Դրանց մասին աշխատություններ են գրվում, հրատարակվում են գրքեր, ալբոմներ: Իտալիայում, Ֆրանսիայում և այլ երկրներում կազմակերպվում են ցուցահանդեսներ, դասախոսություններ:

Տուրիստների այցը Հայաստան մինչև այժմ սահմանափակված էր նրանց ընդունման և անհրաժեշտ մակարդակով սպասարկելու նվազ հնարավորություններով: Այժմ Միութենական ընդհանուր ծրագրերում մշակվում են տուրիզմը Հայաստանում զարգացնելու ընդարձակ պլաններ: Կազմված է Հայաստանում տուրիստական հենակետերի տեղաբաշխման նախագիծ, որի մեջ մտնում են բնության գեղատեսիլ վայրերը, առողջարանները, հուշարձանները, հին բնակավայրերը:

Առաջին հերթին ծրագրվում է և արդեն նախագծեր են կազմվում տուրիստական խոշոր կենտրոն ստեղծելու Սևանի արևկա ափերին, մոտ 12000 տուրիստների համար, 5000 տեղանոց մանկական առողջարան, տեղական արդյունաբերության և այլ մասերով. այնտեղ սպասարկող անձնակազմի համար կհիմնվի 20—30 հազարանոց բնակչությամբ բնակավայր:

Տուրիստական բազաներ են ստեղծվում Հայաստանի բազմաթիվ այլ վայրերում՝ Երևանում, Լենինականում, Կիրովականում, Դիլիջանում, Զանգեզուրում, որի Շինուհայր գյուղը կդառնա գլխավոր բազա: Նախատեսվում է այդ շրջաններում հուշանվերների արտադրություն՝ տեղի ժողովրդական տրադիցիոն իրերի նմուշներով:

Այդ ծրագրով ութսունական թվականներին Հայաստան կայցելեն տարեկան ավելի քան կես միլիոն տուրիստ՝ Սովետական Միությունից ու արտասահմանից. գալիք տասնամյակում կստեղծվեն բոլոր հարմարությունները նրանց ընդունման և սպասարկման համար: Տուրիզմի հետ կապված այդ բոլոր միջոցառումներն ու հարմարությունները շատ կարևոր են նաև հանրապետության բնակչության պահանջմունքների բավարարման առումով:

Մասնավոր մեքենաների թվի արագ աճը, Երևան—Սևան և Սևանն օղակող երկաթգծի կառուցումը, այդ գծի շարունակումը դեպի Դիլիջան, Իջևան, Դիլիջան—Կիրովական և այլ ուղղություններով՝ լայն հնարավորություններ կընձեռեն հանրապետության բնակչության հանգստի կազմակերպմանը: Աշխատավորության համար ավելի ու ավելի մեծ անհրաժեշտություն է դառնում նաև սպորտի զանազան ձևերով զբաղվելը (հատկապես դահուկայինը՝ ձմռանը, ջրայինը՝ ամռանը): Մինչդեռ Հայաստանի ցածրադիր մասերում գտնվող շատ բնակավայրեր (ինչպես Արարատյան դաշտավայրը) չունեն հանգստի ու սպորտի կազմակերպման նպաստավոր պայմաններ:

Նման հնարավորություններից զուրկ է նաև Երևանը: Այդ է պատճառը, որ մայրաքաղաքի հանգստի գոտու մեջ են ընդգրկված Ապարանի ջրամբարը և



նրա շրջակայքը, Աբովյանի, Հրազդանի շրջանի որոշ վայրեր և Սևանը: Երևանի բնակչությունը պետք է հնարավորություն ունենա արձակուրդների ընթացքում և շաբաթ ու կիրակի օրերը հանգստանալու, սպորտով զբաղվելու նույն վայրերում, որոնք օգտագործվելու են տուրիզմի համար:

Այսպիսով, նորանոր առողջարանների ստեղծման, տուրիզմի զարգացման նպատակով նախատեսվող բոլոր միջոցառումները— ճանապարհների ցանցի ու տրանսպորտի միջոցների ընդլայնումը, առողջարանների, հանգստյան տների, պանսիոնատների ու հյուրանոցների կառուցումը, սպորտային հարմարանքները, կուլտուրայի, կենցաղի, առևտրի և սպասարկման այլ օբյեկտների ստեղծումը— այս ամենը խիստ անհրաժեշտ են հանրապետության բնակչության համար, որի զգալի մասը կաշխատի հենց առողջարանների և տուրիզմի սպասարկման ոլորտում:

Այս առիթով անհրաժեշտ ենք համարում անդրադառնալ նշված բնագավառների հետ կապված որոշ խնդիրների:

Դրանցից կարևորագույններից է՝ նոր ստեղծվելիք առողջարանների և տուրիստական բազաների տարածքի ընտրությունը. մեր հանրապետության հողային սուղ պայմաններում նպատակահարմար է դիմել մի հնարքի, որը վերջերս հաճախակի կիրառվում է լեռնային երկրներում՝ Շվեյցարիայում և այլուր: Մեր պապերը, դեռևս շատ հնուց, եղած քարքարոտ լանջերն օգտագործել են իբրև բնակավայրեր, կառուցել աստիճանաձև դասավորված շենքեր (հին Մեղրիում, Խնձորեսկում, Խոտում, Շինուհայրում), դրանով տնտեսելով գյուղատնտեսության համար պիտանի հողերը:

Հանրապետության նախագծային ինստիտուտներում այժմ մշակվում են այդ տիպի շենքերի նախագծեր (օժտելով դրանք ժամանակակից բոլոր հարմարություններով): Այդ իսկ առումով ցավով ենք նշում, որ հիշատակված հին բնակավայրերը, ժողովրդական ստեղծագործության շատ հետաքրքրական, յուրահատուկ ճարտարապետության, քաղաքաշինության նմուշները՝ ծեփված խոր կիրճերի լանջերին, չեն պահպանվել: Այդ բնակավայրերը տեղափոխվեցին սարահարթի վրա և ո՛չ միայն լքվեցին, այլև քանդվեցին այդ ինքնատիպ կառուցվածքները, դրանց շինանյութն օգտագործելով նոր բնակավայրում: Մինչդեռ, պահպանվելով, որոշ վերակառուցումից հետո, դրանք կարող էին օգտագործվել տուրիզմի նպատակներով, ինչպես արվում է Շինուհայրում: Նախատեսված է վերափոխել այստեղ պահպանված մի շարք շենքեր, վերականգնելով դրանց հին ձևը, ավելացնելով նոր շենքեր ու հարմարություններ՝ Շինուհայրը դարձնել Զանգեզուրի տուրիստական կենտրոններից մեկը:

Մտահոգիչ է մեր առողջարանների զարգացման դանդաղ ընթացքը. Ջերմուկն է միայն տարբերվում դրանցից. պատերազմից հետո այն համեմատաբար արագ է կառուցվում: Մեզ թվում է, որ առաջիկայում հարկավոր է անհամեմատ արագացնել հանրապետության առողջարանների կառուցման ընթացքը և դրանց վայրերի ընտրությունը կատարել լուրջ ուսումնասիրություններից հետո: Համեմատաբար հաջող է ընթանում Սևանի շուրջն ընկած խճուղու և երկաթուղու կառուցումը, սակայն պետք է նշել, որ ճանապարհները շինվում են՝ նկատի ունենալով միայն տեխնիկական հարմարություններն ու տնտեսական ցուցանիշները, հաշվի չառնելով լճափերի նպատակահարմար օգտագործումը հանգստավայրերի, առողջարանների, տուրիզմի համար: Շատ

տեղերում երկաթգիծը և խճուղին ընդհուպ մոտենում են լճին, կամ մասնատում օգտակար, առանց այն էլ շատ սակավ հողատարածությունները: Այս հանգամանքը հատկապես կարևոր է Արեգունիի ափերի համար, ուր հարթ տարածությունները շատ փոքր են և չի կարելի հատկացնել դրանք երկաթգծին, խճուղուն:

Հայաստանի ճարտարապետների միությունը, ուսումնասիրելով Սևանի շուրջը ծավալված շինարարությունը, հանգեց այն եզրակացության, որ այն կատարվում է առանց փոխհամաձայնեցված, ընդհանուր նախագծերի, հողամասերը հատկացվում են պատահականորեն, երբեմն էլ՝ առանց իրավասության: Անթույլատրելի է նման վերաբերմունքը Սևանի ափերի կառուցապատման նկատմամբ: Սևանի ափերն անհրաժեշտ է կանաչապատել այնտեղ շինարարություն սկսելուց առաջ, մանավանդ արևկա, բոլորովին լերկ ափերին:

Վերջին ժամանակներս զգալի գործ է արված մեր լավագույն ճարտարապետական կոթողների մոտ ճանապարհներ կառուցելու, դրանց նորոգման, շրջակայքի բարեկարգման ասպարեզում (Հաղարծին, Գոշ, Գեղարդ և այլն): Սակայն բազմաթիվ նույնատիպ հուշարձաններ և տեսարժան վայրեր դեռ մնում են անբարեկարգ, ճանապարհներից դուրս: Դեպի այդ վայրերը տանող ճանապարհների կառուցման հետ մեկտեղ անհրաժեշտ է հոգալ դրանց պատշաճ հսկողության, ինչպես և այն մասին, որ այցելուների համար ստեղծվեն սպասարկման անհրաժեշտ պայմաններ, ավտոմեքենաների կանգառներ, բարեկարգ հյուրանոցներ, ճաշարաններ և այլն:

Տեղին է նշել, որ մի շարք վայրերում հուշարձանների նկատմամբ չկա պատշաճ վերաբերմունք. դրանց շատ մոտիկ կառուցվել են նոր շենքեր, խախտելով հուշարձանների պահպանության կանոնները, աղարտելով դրանց տեսքը, արտահայտչականությունը, խախտելով դրանց կապը շրջապատի հետ (Էջմիածին, Աշտարակ, Ծաղկաձոր):

Այսպիսով, առողջավայրերը և տուրիզմը դառնում են Հայաստանում քաղաքաշինության զարգացման նոր խթան, նրա տնտեսության առաջընթացի գործոն, ինչպես աշխարհի շատ երկրներում՝ Իտալիայում, Շվեյցարիայում, Հունաստանում: Այս հանգամանքը պետք է մեծ չափով նպաստի մեր հանրապետության բնության և պատմական հուշարձանների պահպանմանը, որն արդի քաղաքաշինության կարևորագույն խնդիրներից է:



Մ. Ի. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ

# ՌԵՖՈՐՄԻԶՄԸ ՕՊՈՐՏՈՒՆԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆ Է

XX դարն իրավ կարելի է անվանել որպես մարքս-լենինյան գաղափարախոսության հաղթարշավի դար: Այն դառնում է բովանդակ աշխարհի աշխատավորների աշխարհայացքը:

Այդ գաղափարախոսության հարահուն ազդեցությամբ աներևակայելի ուժով ծավալվեց աշխատավորների ազատագրական պայքարը իմպերիալիստական երկրներում: Անդրադառնալով այդ պայքարում բանվոր դասակարգի ավանգարդային դերին, Լ. Ի. Բրեժնևը մատնանշում է, որ «Այսօր, ինչպես և երեկ, հեղափոխական ուժերի մարտական փորձված ավանգարդի դերը խաղում է *միջազգային բանվորական շարժումը*»: «Կապիտալիստական աշխարհում վերջին հնգամյակում տեղի ունեցած իրադարձությունները,— ընդգծում է այնուհետև Լ. Ի. Բրեժնևը,— լիովին հաստատեցին բանվոր դասակարգի նշանակությունը որպես մոնոպոլիաների իշխանության գլխավոր և առավել զորեղ հակառակորդի, որպես հակամոնոպոլիստական բոլոր ուժերի ձգողության կենտրոն» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարում, էջ 26): Այնուամենայնիվ, հեղափոխական շարժումը վկայում է նաև այն, որ այդ շարժման մեջ բանվոր դասակարգի գործողությունների լիակատար միասնություն չկա: Վերջինիս առանձին ջոկատներ գործում են անջատ-անջատ, որը հեշտացնում է այնտեղ խորթ մարդկանց թափանցումը և հնարավորություն է ստեղծում մոնոպոլիստական կապիտալի համար պառակտելու բանվորական շարժումը: Այստեղ քաղաքական պատասխանատվությունը լիովին կրում է արդի ռեֆորմիզմն իր բոլոր տարատեսակություններով:

Չի կարելի, իհարկե, ժխտել ռեֆորմիզմի ըզգալի ազդեցությունը բանվոր դասակարգի շարժման վրա: Այդ կապակցությամբ հարց է ծագում, թե որն է բանվորական շարժման մեջ ռեֆորմիստական գաղափարախոսության կենսունակության պատճառը:

Բնութագրելով կապիտալիստական երկրներում կոմունիստական շարժման ճանապարհին ծագող մի քանի դժվարությունների պատճառները, Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ մեր օրերում «ակտիվ քաղաքական գործողությունների են ներգրավվում տարբեր սոցիալական խմբերին պատկանող նորանոր միլիոնավոր մասսաներ: Նրանցից շատերը քաղաքականության մեջ են մտնում հեղափոխական էներգիայի մեծ լիցքավորումով, բայց դրա հետ միասին՝ իրենց հուզող պրոբլեմների լուծման ուղիների մասին բավականին անորոշ պատկերացումներով: Այստեղից էլ բխում է նրանց տատանումները բուն քաղաքական պայքարություններից մինչև քաղաքական պասսիվությունը, ռեֆորմիստական պատրանքներից դեպի անարխիստական անհամբերությունը» («Международное совещание коммунистических и рабочих партий. Документы и материалы, М., 1969, стр. 66):

Երկրորդ, ինչպես մատնանշում է Վ. Ի. Լենինը, կապիտալիստական տնտեսական հարաբերությունները շարունակ տանում են դեպի բանվորական շարժման այնպիսի կողմնակիցների երևան գալը, որոնք յուրացնում են մարքսիզմի մի քանի կողմերը միայն, նոր աշխարհայեցողության առանձին մասերը, առանձին լոզունգները, պահանջները, ի վիճակի չլինելով վճռականորեն իրենց կապերը խզել ընդհանրապես բուրժուական աշխարհայեցողության և, մասնավորապես, բուրժուա-դեմոկրատական աշխարհայեցողության բոլոր տրադիցիաներից (տե՛ս Երկեր, հ. 16, էջ 451—455):

Երրորդ, ինչպես ցույց տվեց Լ. Ի. Բրեժնևը XXIV համագումարին տված իր զեկուցման մեջ, «Սոցիալիզմի հետ հակամարտության պայմաններում կապիտալի երկրների իշխող շրջանները, ինչպես երբեք, վախենում են, որ դասակարգային պայքարը կվերաճի մասսայական հեղափոխական շարժման: Այստեղից էլ բուրժուազիայի... պատրաստակամությունը՝ մի շարք դեպքերում դիմելու մասնակի ռեֆորմների, որպեսզի մասսաներին ըստ կարելվույն պահի իր գաղափարական ու քաղաքական ազդեցության տակ» (էջ 22):

Վ. Ի. Լենինը նկատի ունենալով նոր պայմաններին բուրժուազիայի այդպիսի հարմարվողականությունը, մատնանշում է, որ ռեֆորմիստներն ընդունում են այդ մասնակի զիջումները, ընդ որում բուրժուազիան մասսաների ճնշման տակ հարկադրված էր ռեֆորմների դիմել «հանուն սոցիալիզմի»:

Վերջապես, բանվոր դասակարգի հեղափոխա-

կան շարժման դեմ մղվող պայքարում զիջումների բուրժուական այդ տակտիկան, ինչպես նկատել է Վ. Ի. Լենինը, խաբում է բանվոր դասակարգի մի մասին և «առաջ է բերում բանվորական շարժման մեջ ռևիզիոնիզմի ուժեղացում և հաճախ ներքին տարաձայնությունները ուղղակի պառակտման են հասցնում» (Երկեր, հ. 16, էջ 459):

Մարքսիզմը, տիրելով աշխատավորների մտքերին, դառնում է արդի կապիտալիստական հասարակության հեղափոխական վերափոխման նյութական մեծ ուժ: Սա դառնությամբ ընդունում են նաև բուրժուական գաղափարախոսները:

Ամերիկյան սոցիոլոգ Ֆրեդ Շվարցը տագնապահար նշում է, որ «Կոմունիզմի հիվանդությունն առաջադիմում է և դառնում համաճարակ, և մենք կանգնած ենք ոչ միայն այնպիսի հնարավորության, այլև այն հավանականության առաջ, որ ներկայիս տեմպերով դրա տարածման դեպքում այն կընդգրկի ամբողջ երկրագունդն արդեն մեր սերնդի օրոք»:

Այդ պատճառով արդի մոնոպոլիստական կապիտալն իր բոլոր միջոցներով պայքար է մղում մարքս-լենինյան գաղափարախոսության դեմ, ընդ որում, հատուկ ուշադրություն դարձնելով այդ ուսմունքի հիմնական սկզբունքների աղճատմանն ու կեղծմանը: Այդ բանում վերջին դերը չի խաղում արդի ռեֆորմիզմը, որի շատ ներկայացուցիչներ, հանդես գալով «նորարարների», «նոր», «առաջավոր» կամ «մարդասիրական, դեմոկրատական սոցիալիզմի» դրոշի ներքո, փորձում են ժխտել մարքսիզմի, գիտական կոմունիզմի հիմնական սկզբունքները:

Արդի ռեֆորմիզմի տեսաբանները պնդում են, թե իրենք, իբր, հանդես են գալիս ո՛չ թե ընդհանրապես մարքսիզմի, այլ նրա այնպիսի «ավանդույթային» դրույթների դեմ, ինչպես, օրինակ, կապիտալի և վարձու աշխատանքի սոցիալ-տնտեսական շահերի հակադրությունն է, քաղաքական իշխանության բռնի գրավումը, կապիտալիստական հասարակական-տնտեսական հարաբերությունների հեղափոխական վերափոխումը սոցիալիստականի, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման պատմական անհրաժեշտությունը և այլն: Այդ պատճառով մարքսիզմի ռևիզիան, նրա հեղափոխական բովանդակության ամլացումը, մարքսիզմի հիմնական սկզբունքների տարրալուծումը բուրժուական գաղափարախոսության մեջ՝ եղել և մնում է ռեֆորմիզմի տեսաբանների առաջնահերթ խնդիրը:

Ի հակադրություն գիտական կոմունիզմի սկզբունքների, ռեֆորմիզմի ժամանակակից տեսաբանները առաջ են քաշել մի այլ կոնցեպցիա, որը տարբեր երկրներում ընդունելով զանազան ազգային երանգներ, երևան է գալիս մե՛րթ «հումանիստական», մե՛րթ դեմոկրատական, մե՛րթ աֆրիկյան, մե՛րթ մուսուլմանական, մե՛րթ «քրիստոնեական սոցիալիզմի», մե՛րթ «ընդհանուր բարօրության պետության» և այլ անուններով:

Կապիտալիզմի՝ աստիճանաբար սոցիալիզմի վերափոխվելու մասին իրենց դատողություններում ռեֆորմիստներն աղճատում են նախ կապիտալիստական հասարակական հարաբերությունների էության մարքսիստական ըմբռնումը: Այդ կապակցությամբ հարկավոր է նշել, որ բուրժուական գաղափարախոսության զարգացման վերջին մի քանի տասնամյակներն աչքի են զարնում ավանդույթային գռեհիկ ջատագովության հին դոգմաների «վերանայման» անշեղ և գնալով ավելի ընդլայնվող պրոցեսով: Տնտեսագիտական մտքի բուրժուական ականավոր պատմաբան Էմիլ Ժամսը նշում է, թե բուրժուական սոցիալական պետությունն իր արդի վիճակով կորցրել է XIX դարի բուրժուական գաղափարախոսության համար բնորոշ իր լավատեսությունը: Բուրժուական շատ սոցիոլոգներ այժմ հարկադրված են կապիտալիզմը դիտել ո՛չ որպես համընդհանուր, այլ որպես հնարավոր տնտեսական սիստեմներից մեկը: «Մեր աշխարհում, որը տրոհված է երկու՝ կոմունիստական և կապիտալիստական, գաղափարախոսական լագերի,— գրում է Ժամսը,— արդարացի կլինի այն հարցադրումը, թե կապիտալիզմն ունա՞կ է արդյոք զարգանալ, ապրել և կատարելագործվել» (Э. Жамс, История экономической мысли XX века, М., 1959, стр. 464): Իսկ ֆրանսիական ոչ անհայտ տնտեսագետ և սոցիոլոգ Շալանդոնը, անհանգստանալով կապիտալիզմի՝ որպես որոշակի տնտեսական սիստեմի ճակատագրի համար, առաջարկում է ձևակերպել այնպիսի ուսմունք, որն ուղղված լինի կապիտալիզմի և կոմունիզմի միջև հակադրությունների հաղթահարմանը:

Բայց այդպիսի ուսմունք արդեն վաղուց են ստեղծել ռեֆորմիզմի տեսաբանները: Արդի կապիտալիզմի վերաբերյալ նրանց ելակետային դրույթը մշտական «սոցիալական կերպափոխության», կապիտալիզմի մշտական «բարելավման» վերաբերյալ թեզն է: Այդ տերմինի օգնությամբ նրանք փորձում են ապացուցել, որպես թե Մարքսից հետո Արևմուտքում կատարվել է, հիրավի, «մեծ սոցիալական հեղափոխություն», որը մեծ չափով փոփոխել է կապիտալիստական հասարակության սոցիալ-տնտեսական կառուցվածքը:

«Մարդասիրական սոցիալիզմի» տեսաբանները քննության առնելով արտադրամիջոցների կապիտալիստական սեփականության նոր ձևի՝ պետական սեփականության առկայությունը, փորձում



են այն դիտել որպես մեծ առաջընթաց քայլ կապիտալիզմից դեպի սոցիալիզմ: Ուստի Ֆրանսիայի սոցիալիստական կուսակցության գաղափարախոսներ Բուրժենը և Ռեմբերը հայտարարում են, թե «պետական էկոնոմիկան կապիտալիզմից դեպի սոցիալիզմ տանող անցումային էկոնոմիկա է»:

«Ժխտելով» պետության ֆունկցիաների և հատկանիշների ծագման պատճառների վերաբերյալ մարքսիստական դրույթը, ռեֆորմիզմի գաղափարախոսները փորձում են ապացուցել, թե իր էությամբ պետությունը մի յուրահատուկ մարմին է, որը կոչված է սպասարկելու հասարակությանն ամբողջությամբ վերցրած, միատեսակ պաշտպանել նրա բոլոր անդամների շահերը: Ուստի, դասակարգերի և տարբեր սոցիալական խավերի նկատմամբ նա, իբր, գրավում է չեզոք դիրք: Այդ չեզոք հասարակական ինստիտուտի ներգործությամբ էլ, իբր, սկսվում է կապիտալիզմից աստիճանաբար սոցիալիզմին անցնելու պրոցեսը, դրանով իսկ շրջանցելով դասակարգային ընդհարումները, հեղափոխությունները և քաղաքական ցնցումները:

Ֆրանսիական սոցիալիստական կուսակցության ծրագրային փաստաթղթում ընդգծվում է, որ պետական մարմինները, զանազան միջոցառումներ կենսագործելով աշխատաժամանակի տևողությունը սահմանափակելու, աշխատանքի պաշտպանության, վճարովի արձակուրդների, կոլեկտիվ պայմանագրերի, երաշխավորված աշխատավարձի, հատուկ սոցիալական ապահովագրական ծառայությունների համար և այլն, աստիճանաբար, սահմանափակում են կապիտալիզմի գործունեության ոլորտը, խանգարելով նրան պահպանել մարդու շահագործման նախկին ռեժիմը: Դրա վկայությունը, ըստ այդ փաստաթղթի հեղինակների կարծիքի, իբր թե այն էվոլյուցիան է, որ ապրել է կապիտալիզմը իր պատմական զարգացման պրոցեսում:

Նկատենք, որ ռեֆորմիստական տեսաբանների մեծամասնությունը, որպես կանոն, հանդես է գալիս մարքսիզմի դրոշի տակ: Վկայակոչելով Մարքսի և Էնգելսի անունները, ռեֆորմիզմի գաղափարախոսներն արտահայտվում են կապիտալիստական հասարակական-տնտեսական հարաբերությունների շրջանակներում պետության մահացման, բուրժուական պետության վարչական ֆունկցիաների մասին և այլն: Նրանց կարծիքով արդի կապիտալիզմի էվոլյուցիոն զարգացման պրոցեսում պետությունը աստիճանաբար կորցնում է իր նախկին ճնշման ֆունկցիան, հօգուտ վարչականի: Աղճատելով պետության մահացման պայմանների վերաբերյալ մարքսիստական դրույթի ողջ իմաստը, ռեֆորմիզմի տեսաբանները պնդում են, թե արդի կապիտալիստական պետությունը, իբր, իր ձեռքը վերցնելով արտադրամիջոցները, ճնշման գործիք լինելուց վեր է ածվել հասարակության վարչական խորհրդի: Դրա վկայությունը, նրանց կարծիքով, պետության գործունեությունն է կապիտալիստական երկրների տնտեսական կյանքում: «Այդպիսով,— պնդում են Բուրժենը և Ռեմբերը,— պետական էկոնոմիկան, ընդլայնելով պետության վարչական ֆունկցիան, ձգտում է այն դարձնել հասարակության վարչական խորհուրդ, դրանով իսկ վերացնել պետությունը որպես այդպիսին»:

Ցույց տալով ռեֆորմիզմի գաղափարախոսների այն պնդման ողջ կեղծությունը, թե բուրժուական պետությունն իր ձեռքը վերցնելով արտադրամիջոցները, աստիճանաբար կորցնում է իր նախկին ֆունկցիան, այսինքն՝ դադարում է ճնշման մարմին լինելուց, Վ. Ի. Լենինը նշել է, «Աշխատավոր մասսաների հրեշավոր ճնշումը պետության կողմից, որն ավելի ու ավելի սերտորեն է ձուլվում կապիտալիստական ամենազոր միությունների հետ, քանի գնում՝ այնքան ավելի հրեշավոր է դառնում» (Երկեր, հ. 25, էջ 491):

Ռեֆորմիստական դատողություններում այն պատկերացումն է իշխում, թե իբր բուրժուական դեմոկրատիան ինքնին ունակ է փոխելու կապիտալիստական պետության բնույթը՝ պահպանելով արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը և կապիտալիստական արտադրահարաբերությունները: Իրականում փաստերը վկայում են, որ բուրժուական պետության տնտեսական միջոցառումները ո՛չ միայն չեն կորցրել իրենց կապիտալիստական բնույթը, այլև կյանքի են կոչվել կապիտալիստական հասարակության զարգացման կոնկրետ պայմաններով: Բուրժուական պետության իրականացվող սոցիալական միջոցառումները, որպես հարկադրական զիջում աշխատավորներին դեմոկրատական և կենսական իրավունքների համար մղած նրանց համառ պայքարում, ածանցյալ նշանակություն ունեն:

Այդ միջոցառումները չեն փոփոխում և չեն կարող փոփոխել կապիտալիստների և բանվորների եկամուտների և կենսամակարդակի խոր տարբերությունները: Մոնոպոլիստական բուրժուազիայի կառավարող վերնախավը շահագրգռված չէ այնպիսի սոցիալական միջոցառումներ կենսագործելու հարցում, որոնք ուղղված լինեն բնակչության լայն խավերի սոցիալ-տնտեսական դրության արմատական փոփոխությանը: Այդ վերնախավը ջանք չի խնայում աշխատավորներին շահագործելու և կողոպտելու միջոցով, առավելագույն շահույթների յուրացման համար բարենպաստ պայմաններ ստեղծել:

Ռեֆորմիզմի տեսաբանների դատողությունների սխալականությունն ամենից առաջ այն է, որ սեփականության բնույթը որոշվում է ո՛չ թե սեփականատերերի քանակով, այլև հասարակական արտադրությունում նրանց խաղացած դերով:

Գաղտնիք չէ, որ կապիտալիստական սեփականության բաժնետիրական ձևը վարձու աշխատանքի միջոցով հավելյալ արժեքի ապահովումն է, այն ժամանակ, երբ սոցիալիստական հասարակական սեփականությունը բացառում է մարդու կողմից մարդու շահագործումը:

Իմպերիալիզմի պայմաններում, երբ ձեռնարկությունների բաժնետիրական ձևը դարձել է տիրապետող, սեփականության՝ որպես կապիտալի առանձնացում կապիտալի ներդրումից և, դրա հետ միասին, կապիտալիստների փոխարկվելը ավելորդ մակաբուծական դասակարգի, է՛լ ավելի է ուժեղացել:

Բայց բուրժուազիայի վերածվելը մակաբուծական դասակարգի ամենևին չի նշանակում, թե խոշոր կապիտալի իշխանությունը և բաժնետիրական ընկերությունների քաղաքականության վրա նրա ազդեցությունը թուլացել է: Այն հանգամանքը, որ մակաբուծական բուրժուազիան արտադրությունից խզում է կապերը, սոսկ նշանակում է, որ ինչպես բուն բաժնետիրական ընկերությունների, այնպես էլ ձեռնարկությունների ղեկավարությունը գտնվում է կամ ֆինանսական օլիգարխիայի անդամների, կամ դրանց կողմից վստահված անձանց ձեռքին: Կապիտալիստական բարձրագույն կառավարիչների զգալի մասն իրենից ներկայացնում է մոնոպոլիստական բուրժուազիայի դասակարգի մի հատուկ մաս, որն ամբողջապես ենթակա է ֆինանսական օլիգարխիային:

Բուրժուական և ռեֆորմիստական տեսաբանները «վերդասակարգային» պետության վերաբերյալ իրենց պնդումները հիմնավորում են վկայակոչելով բուրժուական «դեմոկրատիայի» ինստիտուտները, որոնք, նրանց կարծիքով, հասցնում են «իշխանության դիֆուզիայի», «պետական կառավարման վերածմանը ժողովրդական կառավարման»: Այսպես, արևմտագերմանական սոցիոլոգ Յու. Հաբերմասը պնդում է, թե իբր պետության և հասարակության առանձնացումը, որ բնորոշ է «կապիտալիզմի զարգացման լիբերալ փուլին, դարձել է փոխադարձ սահմանափակում կազմակերպված կապիտալիզմի ստադիայում», ուստի և «պետությունը և հասարակությունն այլևս չեն գտնվում վերնաշենքի և բազիսի կլասիկ հարաբերության մեջ»: Դրա հետևանքով, պնդում են կապիտալիզմի ժամանակակից պաշտպանները, գործում է նոր տիպի էկոնոմիկա, որին այլևս չի կարելի կապիտալիստական համարել և որը կրում է «կոլեկտիվիստական բնույթ»: Էկոնոմիկային բուրժուական պետության այդ միջամտությունը հայտարարվում է ոչ ավելի, ոչ պակաս, քան որպես «հեղափոխություն»:

Վ. Ի. Լենինը դեռ կես դար առաջ ցույց տվեց, որ կապիտալիզմի զարգացման որոշակի փուլում տեղի է ունենում կապիտալիզմի հսկայական ուժի հետ պետության հսկայական ուժի այնպիսի միացում, որը տասնյակ միլիոնավոր մարդկանց դնում է պետական կապիտալիզմի մեկ կազմակերպության մեջ (տե՛ս Երկեր, հ. 24, էջ 506—507):

Սոցիալիզմի և անգամ կոմունիզմի տնտեսական օրենքներն ու կատեգորիաները նույնացնելով կապիտալիզմի տնտեսական օրենքներին ու կատեգորիաներին, բուրժուական գաղափարախոսները պնդում են, թե այժմ սոցիալիստական սիստեմի և կապիտալիստական երկրների միջև եղած արմատական որակական տարբերությունները վերացել են:

Ի հակակշիռ սոցիալիզմի և կոմունիզմի մարքս-լենինյան տեսության, ստեղծելով կեղծ սոցիալիզմի վերացական-տրամաբանական սեփական կառուցվածքը, ռեֆորմիստներն այդ կոնցեպցիայի օգնությամբ վարկաբեկում են կոմունիստական շինարարության պրակտիկան ՍՍՀՄ-ում և սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մյուս երկրներում:

Բացառելով հակադիր հասարակական սիստեմների գլխավոր սոցիալական բնութագրումները, աչքաթող անելով վարձու բանվորների շահագործման և շահագործումից ազատ աշխատողների ընկերական համագործակցության միջև եղած արմատական հակադրությունը, ռեֆորմիզմի տեսաբանները փորձում են ապակողմնորոշել մասսաներին, նրանց ուշադրությունը շեղել իր դարն ապրած հասարակարգի դեմ մղվող հեղափոխական պայքարից, հավատացնել նրանց, թե իբր առանց հեղափոխության ամեն ինչ լավ է ընթանում այս աշխարհում:

Ժամանակակից ռեֆորմիստների մտացածին տեսությունները ընդհանուր ոչինչ չունեն հասարակական զարգացման օրինաչափությունների իսկական գիտական վերլուծության հետ: Հասարակական զարգացման մարքսիստական տեսությունն ու պրակտիկան ապացուցել են, որ ապագան պատկանում է կոմունիզմին՝ որպես մարդկային համակեցության կազմակերպման բարձրագույն ձևի:

# ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

## ԳԼԽԱՎՈՐԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄՆ Է

Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Իր «Մեծ նախաձեռնություն» աշխատության մեջ Վ. Ի. Լենինը խոսելով կոմունիստական շաբաթօրյակների և դրանց ընթացքում ձեռք բերված աշխատանքի արտադրողականության հսկայական բարձրացման մասին, ցույց է տալիս, որ դա համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող շրջադարձի սկիզբն է:

«Նոր հասարակարգի հաղթության համար կարևորագույնը, ամենագլխավորը, վերջին հաշվով, աշխատանքի արտադրողականությունն է: Կապիտալիզմն ստեղծեց ճորտատիրության օրոք աշխատանքի չտեսնված արտադրողականություն: Կապիտալիզմը վերջնականապես կարող է պարտվել և վերջնականապես կպարտվի այն բանով, որ սոցիալիզմն ստեղծում է աշխատանքի նոր, առավել բարձր արտադրողականություն: Դա շատ դժվարին և շատ երկարատև գործ է, որն սկսված է, ահա թե ո՛րն է ամենագլխավորը» (տե՛ս В. И. Ленин, соб. соч., т. 39, стр. 21):

Սոցիալիստական հասարակության զարգացման ողջ պրակտիկան լիովին հաստատեց սոցիալիզմի ժամանակ աշխատանքի արտադրողականության մասին լենինյան դրույթների ճշմարտացիությունը: Ելնելով Լենինի ցուցումներից, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն իր տնտեսական քաղաքականությունը մշակելիս, երկրի առաջընթացի յուրաքանչյուր փուլի գլխավոր առանձնահատկությունները հաշվի առնելով հանդերձ, ի թիվս մյուս խնդիրների, անչափ մեծ նշանակություն է տվել աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, որը վճռական դեր է խաղում սոցիալիստական ընդհանուր արտադրության աճման ու կատարելագործման, նրա զարգացման տեմպերի արագացման, արդյունաբերական ու գյուղատնտեսա-

կան արտադրանքի ավելացման գործում։ Բավական է նշել, որ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյակում աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստացվել է ամբողջ արդյունաբերական արտադրանքի աճի 51 տոկոսը, հինգերորդ հնգամյակում՝ 68, ութերորդ հնգամյակում՝ 73, իսկ նրա վերջին՝ 1970 թվականին՝ 84 տոկոսը։

Իսկ ինչ վերաբերվում է գյուղատնտեսությանը, ապա այստեղ աշխատանքի արտադրողականությունն աճել է նույնիսկ ավելի արագ, քան համախառն արտադրանքը։ Այսպես, վերջինս 1940—1970 թվականներին աճել է 2,2 անգամ, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 2,7 անգամ։

Աշխատանքի արտադրողականությունն ավելի կբարձրանա նոր հնգամյակում. այս հարցին ՍՄԿԿ XXIV համագումարը, հիրավի, հատուկ ուշադրություն նվիրեց։ Համագումարի նյութերում նշված են աշխատանքի արտադրողականության բարձրացման բոլոր արմատական միջոցառումները, որոնց իրագործմամբ է հիմնականում պայմանավորված նոր հնգամյակում նախատեսված տնտեսական ու սոցիալական վիթխարի պրոբլեմների լուծումը։ Պետք է նկատի ունենալ, որ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների համաձայն, մեր երկրի էկոնոմիկան իր բոլոր ճյուղերով արագաթափ առաջ է ընթանալու և հասնելու է մինչ այդ չտեսնված բարձունքների։ ՍՍՀՄ արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը հնգամյակի վերջին տարում՝ 1975 թվականին կգերազանցի ԱՄՆ-ի արդյունաբերական ու գյուղատնտեսական այժմեական մակարդակը։ Դա պլանաչափորեն զարգացող սոցիալիստական էկոնոմիկայի առավելությունների վառ դրսևորումը կհանդիսանա Սովետական Միության և կապիտալիստական երկրների տնտեսական մրցության մեջ։

ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, ընկ. Բրեժնևը, հանգամանորեն վերլուծելով ՍՍՀՄ էկոնոմիկայի զարգացման հեռանկարները, ասաց. «...այն գլխավորը, որի վրա մենք պետք է հույս դնենք, արտադրության արդյունավետության բարձրացումն է։ Եթե ավելի պարզ խոսելու լինենք, պրոբլեմի էությունն այն է, որպեսզի աշխատանքային, նյութական և ֆինանսական ծախսումների յուրաքանչյուր միավորի հաշվով էապես մեծացվի արտադրության և ազգային եկամտի ծավալը։ Դա էլ, վերջին հաշվով, հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացումն է» (Լ. Ի. Բրեժնև. ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարին, Ե., 1971, էջ 85—86)։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանում նախատեսված է արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 36—40 տոկոսով, կոլտնտեսություններում ու սովխոզներում՝ 37—40, շինարարության մեջ՝ 36—40, երկաթուղային տրանսպորտում՝ մոտավորապես 23 տոկոսով։ Այս առաջադրանքների կատարումը ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն ունեն։ Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ համագումարի դիրեկտիվների համաձայն ընթացիկ հնգամյակում աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին պետք է ստացվի ազգային եկամտի աճի 80—85 տոկոսը, արդյունաբերական



արտադրանքի աճի 87—90 տոկոսը, շինմոնտաժային աշխատանքների աճի՝ 95 տոկոսը, երկաթուղային տրանսպորտով բեռնափոխադրումների ծավալի ամբողջ աճը։ Գյուղատնտեսական արտադրանքի նախատեսված աճն ամբողջովին ապահովվելու է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

«Հենց այդ տեսանկյունով,— ՍՄԿԿ XXIV համագումարին տված զեկուցման մեջ մատնանշեց ընկ. Բրեժնևը,— նկատի ունենալով աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերն արագացնելու անհրաժեշտությունը, պետք է մոտենալ տնտեսական զարգացման հիմնական հարցերին։ Ընդ որում, ինչպես հերթական խնդիրների, այնպես էլ տևական հեռանկարների տեսակետից առաջին տեղն է գրավում գիտատեխնիկական պրոգրեսի արագացումը» (Նույն տեղը, էջ 86)։

Կենսագործելով կուսակցության համագումարի որոշումները, Սովետական Միությունը նոր հնգամյակում խոշոր առաջընթաց քայլ կկատարի գիտատեխնիկական հեղափոխության և այդ հիման վրա հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում։ Պետք է նկատի ունենալ, որ զարգացման ներկա ժամանակաշրջանում հենց այս ոլորտն է փոխադրվում համաշխարհային երկու տարբեր սիստեմների՝ սոցիալիզմի ու կապիտալիզմի տնտեսական մրցության ծանրության կենտրոնը։ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը մեծ նշանակություն տալով այդ մրցությանը և ողջ ժողովրդին մոբիլիզացնելով երկրի տնտեսական պոտենցիալի առավել հզորացման համար, առաջնորդվում է Վ. Ի. Լենինի այն հայտնի ցուցումով, որ «...հաղթում է նա, ով ունի մեծագույն տեխնիկա, կազմակերպվածություն, կարգապահություն և լավագույն մեքենաներ» (Երկեր, հ. 27, էջ 226)։ Սոցիալիզմն իր բուն էությամբ լայն հնարավորություններ է ընձեռում այդ բոլորի համար և, անտարակույս, այն էլ հաղթող դուրս կգա կապիտալիզմի նկատմամբ։

Ամբողջ սրությամբ դնելով գիտա-տեխնիկական հեղափոխության արագացման խնդիրը, կուսակցության XXIV համագումարը ելնում է այն բանից, որ աշխատանքի արտադրողականության աճն ամենից առաջ կախում ունի արտադրության տեխնիկական հագեցվածությունից, նորագույն բարձր արտադրողական մեքենաների ու սարքավորումների լայնորեն գործադրումից։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործոնների ուսումնասիրությունը ցույց է տվել, որ նրա աճի ոչ պակաս, քան 75 տոկոսը որոշվում է արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացմամբ։ Այստեղից պարզ հետևում է, որ աշխատանքի արտադրողականության աճը գլխավորապես գիտա-տեխնիկական պրոգրեսի արդյունք է, որը միաժամանակ արտացոլում է այդ պրոգրեսի նվաճումները, նրա տված տնտեսական արգասիքը։

ՍՄԿԿ XXIV համագումարը գիտահետազոտական ու նախագծային հիմնարկությունների, գիտնականների, կոնստրուկտորների, ինժեներների և մեքենաշինության աշխատողների առջև խնդիր դրեց՝ ավելի արագացնել տեխնիկական պրոգրեսը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար ստեղծել բարձր արտադրողական նոր մեքենաներ ու սարքավորումներ, ամենուրեք արմատավորել առաջավոր տեխնիկան, բարձրացնել նրա օգտագործման գործակիցը։ Անհրաժեշտ է լուրջ ուշադրություն նվիրել ստեղծվող նոր մեքենաների տեխնիկա-տնտեսական ցուցանիշներին, բարելավել դրանց որա-

կը, արդյունաբերությանն ու գյուղատնտեսությանը տալ միայն ավելի լավ մեքենաներ ու սարքավորումներ, որովհետև «...ավելի լավը,— համագումարում ասաց ընկ. Բրեժնևը,— համարյա միշտ նշանակում է նաև ավելի շատ։ Ծրագրային կառավարման մեկ ժամանակակից հաստոցը փոխարինում է հնացած կոնստրուկցիայի տասնյակ հաստոցների , ծանրաբեռ մեկ ավտոմոբիլը՝ մի քանի սովորական բեռնատարների, մեծացած ռեսուրսով մեկ ինքնաթիռային շարժիչը՝ նախկին տիպի երկու-երեք շարժիչի» (նույն տեղ, էջ 92)։

Նոր մեքենաներ ու սարքավորումներ արտադրելու հետ միասին, առաջ կտարվի նաև հների նորոգումն ու կատարելագործումը, որը նույնպես կնպաստի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Պրակտիկան ցույց է տալիս, որ 20 և ավելի տարիք ունեցող սարքավորումների աշխատանքի արտադրողականությունը 3—4 անգամ պակաս է, քան ժամանակակից սարքավորումներ կիրառելու ժամանակ։

Արտադրական ձեռնարկությունները նորագույն և կատարելագործված տեխնիկայով վերազինելու հետ միասին, իններորդ հնգամյակում համապատասխան միջոցառումներ են իրագործվելու սոցիալիստական բոլոր տնտեսությունների մասշտաբով արտադրության կառավարման կազմակերպական ձևերի կատարելագործման և, մասնավորապես, խոշոր արտադրական միավորումների ստեղծման համար, որոնք աշխատանքի արտադրողականության բարձրացման էֆեկտիվ գործոններից են։ Համանման ձեռնարկությունների միավորումը, առանձին ձեռնարկությունների համեմատությամբ, էական առավելություններ ունի։

Դրանք արտահայտվում են այն բանում, որ խոշոր արտադրական միավորումներում առավել արտադրողականությամբ են օգտագործվում հիմնական արտադրաֆոնդերը, ավելանում են վարկն օգտագործելու հնարավորությունները, հեշտանում է նոր տեխնիկայի, առանձնապես, էլեկտրահաշվիչ մեքենաների, արտադրության տեխնոլոգիական պրոցեսների կառավարման ավտոմատացված սիստեմների կիրառումը, վերանում են ավելորդ օղակները, տնտեսվում է աշխատուժը և այլն։ Օրինակ. մետալուրգիական արդյունաբերության մեջ խոշորացման ճանապարհով լիկվիդացվել են 80 ինքնուրույն ձեռնարկություն, 104 կազմակերպություն, 12 տրեստ ու գրասենյակ։ Կամ անցած հնգամյակում պետական էներգոսիստեմից էներգիայի օգտագործումը հնարավորություն ընձեռեց գյուղական վայրերում վերացնելու բազմահազար մանր էներգակայաններ, որի շնորհիվ այլ աշխատանքի համար ազատվեց 130 հազար մարդ։

Արտադրության կառավարման կազմակերպական ձևերի կատարելագործումը հանգեցնում է նաև վարչական և հաշվային ապարատի կրճատման, որը նույնպես նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Այստեղ խոսքն այն մասին է, որ արտադրության ենթաճյուղերն ունենան հիմնավորված ու ավելի ձեռնտու կառուցվածք, կրճատվեն վարչական ավելորդ օղակները, պարզեցվի ու արագացվի փաստաթղթերի կազմումը, ապահովվի հիմնավորված որոշումների ընդունումն ու ճիշտ ինֆորմացիայի ստացումը, լայնորեն գործի դրվի էլեկտրահաշվիչ տեխնիկան, մեքենայացման ու ավտոմատացման միջոցով ավելի արտադրողական դառնա ինժեներատեխնիկական անձնակազմի և ծառայողների աշխատանքը։

Հենց այս նպատակով էլ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում



նախատեսված է հնգամյակում հաշվողական տեխնիկայի թողարկումն ավելացնելու 2,4 անգամ, այդ թվում ԷՀՄ-ինը՝ 2,6 անգամ։

Մեր արդյունաբերության մեջ դեռևս մեծ է ձեռքի աշխատանքի տեսակարար կշիռը՝ հատկապես օժանդակ աշխատանքներում, որտեղ զբաղված է բոլոր բանվորների կեսը։ Ահա թե ինչու կուսակցության XXIV համագումարը պահանջեց՝ ընթացիք հնգամյակում զգալի չափով կրճատել ձեռքի և ֆիզիկական ծանր աշխատանքը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում լայնորեն մեքենայացնել արտադրության աշխատատար պրոցեսները, որը աշխատանքի արտադրողականության բարձրացման հզոր գործոն է։

ՍՍՀՄ ութերորդ գումարման Գերագույն սովետի երրորդ սեսիայում ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների պետական հնգամյա պլանի և ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1972 թվականի պետական պլանի մասին տված իր զեկուցման մեջ ընկ. Կոսիգինը նշեց, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման՝ սահմանված առաջադրանքների կատարմամբ հինգ տարում արտադրանքի մեկ միավորի արտադրության վրա աշխատանքի ծախսումները էապես կկրճատվեն։ Եթե մեկ միլիոն ռուբլու արժողությամբ հանրային համախառն պրոդուկտի արտադրության վրա 1960 թ. ծախսվում էր 267 աշխատողի աշխատանք, 1970 թ.՝ 150, ապա 1975 թ. դրա վրա կծախսվի միայն 118 աշխատողի աշխատանք։

«Աշխատանքի արտադրողականության նախատեսված աճի հետ մեկտեղ, — ասաց ընկ. Կոսիգինը,— նյութական արտադրության մեջ զբաղված աշխատողների թիվը հինգ տարում կպահանջվի ավելացնել միայն 4,5 միլիոնով, մինչդեռ աշխատանքի արտադրողականության 1970 թվականի մակարդակի դեպքում լրացուցիչ կպահանջվեր 37 միլիոն աշխատող։ Հետևաբար, արտադրության տեխնիկական վերազինման, նրա կազմակերպումը կատարելագործելու շնորհիվ աշխատանքի արտադրողականության աճը ապահովում է ավելի քան 32 միլիոն մարդու կենդանի աշխատանքի ռեալ խնայողություն։ Այդպիսի խնայողության հասնելը կլինի մեր սոցիալիստական տնտեսության խոշոր նվաճումը։

Այդ պրոբլեմի լուծումը հատուկ նշանակություն է ստանում, եթե հաշվի առնենք, որ հինգ տարում աշխատանքային ռեսուրսների ամբողջ աճը կկազմի մոտավորապես 10 միլիոն մարդ, նրանցից, ինչպես նշվեց, 4,7 միլիոնը լրացուցիչ կերպով կպահանջվի նյութական արտադրության համար, իսկ մնացած 5 միլիոնը կապահովեն լուսավորության, առողջապահության մեջ, սպասարկման ոլորտում և այլ ոչ-արտադրական ճյուղերում զբաղված աշխատողների թվի աճը»։

Այս ամենից միանգամայն պարզ է դառնում, թե նոր հնգամյա պլանով սահմանված աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքների կատարումը ինչպիսի կարևոր նշանակություն ունի աշխատուժի բալանսի կարգավորման գործում։ Միայն այդ ճանապարհով է հնարավոր աշխատուժով ապահովել ինչպես նյութական արտադրության, այնպես էլ բնակչության սպասարկման զգալիորեն ընդլայնվող ոլորտի զարգացման պահանջմունքները։ Արդյունաբերության այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են էլեկտրաէներգետիկան, նավթային նավթավերամշակման և գունավոր մետալուրգիան, արտադրանքի աճը բացառապես ստացվելու է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Այդ ճյուղերում նոր ձեռնարկու-

թյունները պետք է գործեն եղած ձեռնարկություններից ազատվող աշխատողներով։ Իսկ ինչ վերաբերում է ածխարդյունաբերությանն ու գյուղատնտեսությանը, ուր նորագույն տեխնիկան առավել մեծ չափերով է մուտք գործելու, նախատեսված աշխատանքի արտադրողականության աճը ապահովվելու է աշխատողների թիվը կրճատելով հանդերձ։

Գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման համար իրագործվելու են խոշոր միջոցառումներ։ Հնգամյակի տարիներին լայնորեն, մինչ այդ չտեսնված մասշտաբներով առաջ են տարվելու գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացումը, քիմիացումը, ոռոգման ցանցի ընդարձակումը, ցանքաշրջանառության կիրառումը, տնտեսությունների մասնագիտացումն ու արտադրության խոշորացումը, անասունների ցեղի բարելավումն ու արդյունաբերական հիմունքներով անասնաբուծական մթերքների արտադրության մեծացումը և այլն։ Այդ ամենի համար կատարվելու են կապիտալ խոշոր ներդրումներ, որոնք առաջիկայում կտան իրենց գոհացուցիչ արդյունքը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման նշանակությունը կայանում է նաև նրանում, որ այն էապես նպաստում է արտադրության տնտեսական ցուցանիշների բարելավմանը։ Նախ կրճատվում են յուրաքանչյուր միավոր արտադրանքի վրա կատարվող կենդանի և ընթացիկ աշխատանքի ծախսումները, այսինքն, պակասում է արտադրանքի աշխատատարությունը։ Բայց ամեն մի արտադրանք, բացի կենդանի աշխատանքից, իր մեջ պարունակում է նաև առարկայացած աշխատանք, որը ծախսված է տվյալ հումքի, վառելիքի և այլնի արտադրության համար։ Այստեղից էլ, որքան բարձր է աշխատանքի արտադրողականությունը, ասենք, վառելիքի և հումքի ճյուղերում, էներգետիկայում ու մեքենաշինությունում, այնքան էլ քիչ կենդանի աշխատանք է ծախսվում արտադրամիջոցների ստեղծման համար, այնքան էլ քիչ է առարկայացած աշխատանքը վերջնական արտադրանքի, այդ թվում և սպառման ապրանքների մեջ։ Հետևապես, աշխատանքի արտադրողականության բարձրացումը պակասեցնում է միավոր արտադրանքի արտադրության վրա կատարվող ընդհանուր ծախսերը, այդ թվում նաև նյութական ծախսերը։ Վերջինիս պակասեցման ու խնայողության ժողովրդատնտեսական մեծ նշանակությունը պատկերացնելու համար բավական է նշել, որ երկրում թողարկվող արտադրանքի նյութատարողության միայն մեկ տոկոսի իջեցումը հավասարազոր է ազգային եկամտի 3—4 միլիարդ ռուբլու լրացուցիչ աճին։

Ինչպես վերը նշել ենք, ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների համաձայն, նոր հնգամյակում ազգային եկամտի աճի 80—85 տոկոսը պետք է ստացվի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Եթե նկատի ունենանք, որ ութերորդ հնգամյակի մեկ տրիլիոն 166 միլիարդ ռուբլու դիմաց իններորդ հնգամյակում երկրի ազգային եկամուտը հասնելու է մեկ տրիլիոն 625 միլիարդ ռուբլու, կամ աճելու է 451 միլիարդ ռուբլով, ապա միանգամայն պարզ կդառնա, թե այդ պատասխանատու առաջադրանքի կատարման գործում ինչպիսի մեծ ու վճռական դեր է վերապահված աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Ազգային եկամտի աճը անխզելիորեն կապված է ինչպես անհատական (կենդանի), այնպես էլ հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ։ Անհատական աշխատանքի արտադրողականության բարձ-



րացումը միաժամանակ նպաստում ու հանգեցնում է առարկայացած աշխատանքի խնայողության, որի դերը ազգային եկամտի ֆիզիկական ծավալի ավելացման մեջ ներկա ժամանակաշրջանում առավել մեծանում է։ Դա օրինաչափ երևույթ է և պայմանավորված է այն բանով, որ արտադրաուժերի արագ զարգացմամբ հասարակական համախառն արդյունքի մեջ նյութական-արտադրական ծախքերի բաժինը, մյուս ծախքերի համեմատությամբ, ավելի է։

Այստեղից հետևում է՝ որքան արդյունավետ ու խնայողաբար օգտագործվեն առարկայացած ու կենդանի աշխատանքը, այնքան արագ կաճի ազգային եկամտի ֆիզիկական ծավալը, որով պայմանավորված է հասարակական աշխատանքի արտադրողականությունը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը շատ կողմերով պայմանավորված է նաև արտադրության պրոգրեսիվ ճյուղերի զարգացմամբ, ինչպես և նոր, ավելի խնայողաբեր նյութերի (նավթ, գազ, պլաստմասսա, սինթետիկ թել և այլն) գործածմամբ, որոնք պայմանավորում են հասարակական աշխատանքի ծախսերի կրճատում։ Օրինակ, ածուխի համեմատությամբ ավելի ձեռնտու է նավթի և գազի օգտագործումը։ Դրա համար էլ վառելիքի ընդհանուր հաշվեկշռի մեջ նավթի և գազի տեսակարար կշիռը 1950 թվականի 20 տոկոսի դիմաց 1970 թվականին կազմել է 60, իսկ 1975 թվականին կկազմի 67 տոկոս։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման ռեզերվներ ունեն արդյունաբերության բոլոր ճյուղերը և, առանձնապես, ծանր ինդուստրիան։ Նրա կառուցվածքի կատարելագործման միջոցով հնգամյակում արագ կզարգանան այն ճյուղերը, որոնք ապահովում են արտադրության ծախքերի պակասեցում, վերջնական արդյունքի ավելացում, աշխատանքի արտադրողականության բարձրացում ինչպես բուն ծանր արդյունաբերության մեջ, այնպես էլ մյուս ճյուղերում։ Կոնկրետ խոսքը վերաբերում է այն ճյուղերի զարգացմանը, որոնք «...թողարկում են բարձրարտադրողական նոր տեխնիկա, մեքենաների այնպիսի ամբողջական սիստեմներ, որոնք թույլ են տալիս անցնելու աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման և տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման։ Մեծ նշանակություն է ձեռք բերում նաև այն ճյուղերի ընդլայնումը, որոնք ապահովում են արդյունաբերության արտադրական-տեխնիկական սպասարկումը, օժանդակ աշխատանքների մեքենայացումը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին, Ե., 1971, էջ 91—92։)

Աշխատանքի արտադրողականության աճի մյուս կարևոր պայմանը բանվորների, կոլտնտեսականների, նյութական արտադրության ոլորտի բոլոր կադրերի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումն է։ ՍՄԿԿ XXIV համագումարն այս խնդրին ևս հատուկ ուշադրություն նվիրեց և իր դիրեկտիվներում կոնկրետ առաջադրանքներ տվեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար բազմակողմանիորեն զարգացած, անհրաժեշտ գիտելիքներով ու փորձով օժտված նոր կադրեր պատրաստելու համար։ Սրա կարևորությունն առանձնապես մեծ է այն առումով, որ ունեցած հարուստ տեխնիկան, որքան էլ այն կատարելագործված լինի, ինքնին անկարող է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Դրան հնարավոր է հասնել միայն տեխնիկայի, սարքավորումների ու գործիքների արդյունավետ օգտագործմամբ, որն ապահովում են արտադրության մեջ աշխատող մարդիկ։ Պետք

է հիշել, համագումարում ասաց ընկ. Բրեժնևը, որ «Ժամանակակից արտադրությունը արագ աճող պահանջներ է ներկայացնում ոչ միայն մեքենաներին, տեխնիկային, այլ նախ և առաջ բուն աշխատողներին, նրանց, ովքեր ստեղծում են այդ մեքենաները և կառավարում այդ տեխնիկան։ Մարդու մասնագիտական գիտելիքները, պրոֆեսիոնալ բարձր պատրաստությունը, ընդհանուր կուլտուրան դառնում են աշխատողների ավելի ու ավելի լայն խավերի հաջող աշխատանքի պարտադիր պայմանը» (նույն տեղ, էջ 64)։

Վ. Ի. Լենինն աշխատանքի արտադրողականության բարձրացման, սոցիալիստական տնտեսավարության կարևոր պայմաններից մեկը համարում էր մարդկանց նյութական շահագրգռության բարձրացումը։ «Այլ կերպ,— ասում էր նա,— դուք չեք մոտենա կոմունիզմին, այլ կերպ տասնյակ ու տասնյակ միլիոն մարդկանց չեք մոտեցնի կոմունիզմին» (Երկեր, հ. 33, էջ 46—57), որը «...Կամավոր, գիտակից, միավորված, առաջավոր տեխնիկա օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է, կապիտալիստականի համեմատությամբ» (Երկեր, հ. 22, էջ 524)։

Առաջնորդի այս ցուցումներն իրենց մարմնացումն են գտել կուսակցության ինչպես նախորդ, այնպես էլ XXIV համագումարի որոշումներում։ Իններորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նախագծված է հանրային արտադրության անշեղ աճի, գյուղատնտեսության արագ զարգացման, ժողովրդական սպառման ապրանքների թողարկման ընդլայնման և սպասարկման ոլորտի զարգացման հիման վրա ապահովել ժողովրդի կենսամակարդակի նոր, էական վերելք։ Հնգամյակում կատարելագործվելու է աշխատանքի վարձատրությունը՝ նրա քանակի ու որակի համեմատ։ Բանվորների ու ծառայողների աշխատավարձը միջին հաշվով բարձրանալու է 20—22 տոկոսով, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 30—35 տոկոսով, սպառման հանրային ֆոնդերի հետագա զարգացմամբ հանդերձ։ Դրա հետ միասին կատարելագործվելու են նյութական խրախուսման ֆոնդերի գոյացումն ու բաշխումը, տարիֆային սիստեմի դերը, ուժեղացվելու է աշխատողների նյութական շահագրգռությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության ծախքերի կրճատման, արտադրանքի որակի բարելավման, ինչպես և առաջավոր տեխնիկայի ստեղծման ու արմատավորման, նոր արտադրանքի արտադրության շուտափույթ յուրացման համար և այլն։ Նյութական շահագրգռության ուժեղացման ու բարձրացման զուգահեռ ամենուրեք ամրապնդվելու է նաև աշխատանքի բարոյական խթանների դերը։

ՍՄԿԿ XXIV համագումարն աշխատանքի արտադրողականության մյուս ռեզերվների թվում նշեց նաև արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական կազմակերպություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում բանվորական ժամանակի կորուստների կրճատումն ու լիկվիդացումը, որով էապես կավելանա արտադրանքի թողարկումը։ Դրան մեծապես կնպաստեն նաև աշխատանքի անընդմեջ պրոցեսի և բոլոր ձեռնարկությունների կոլեկտիվների համաչափ գործունեության ապահովումը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման անփոխարինելի պայմանն է տվյալ արտադրանքի արտադրության համար պահանջվող բանվորական ժամանակի կրճատումը և ազատ ժամանակի ավելացումը։ 1913 թվականին արդյունաբերության մեջ չափահաս բանվորների համար աշխատանքա-



յին շաբաթը սահմանված էր 58,5 ժամ, իսկ ներկայումս, հաշվի առնելով տոնական օրերը և բանվորական օրվա կրճատումը նախատոնական օրերին, բանվորական շաբաթվա միջին տևողությունը 40 ժամ է։ ՍՍՀՄ-ում ամբողջությամբ վերցրած բանվոր-ծառայողների աշխատանքային շաբաթի միջին տևողությունը (հաշված ուսուցիչների, բժիշկների և մյուս աշխատողների բանվորական օրերի կրճատումը) 39,4 ժամ է։ Սա մեր ժողովրդի մեծ նվաճումն է։ Իրենց տրամադրության տակ ունենալով բավական ազատ ժամանակ, մեր աշխատավորներն այն օգտագործում են կուլտուրական հանգստի, կենցաղի բարելավման, իրենց ընդհանուր և մասնագիտական գիտելիքների հարստացման համար, որոնք, բնականաբար, նպաստում են աշխատանքի արտադրողականության աճին։

Կյանքը, սոցիալիստական շինարարության ողջ պրակտիկան անհերքելիորեն ցույց են տալիս, որ միայն արտադրամիջոցների հանրային սեփականության վրա հենված սոցիալիստական կարգն է համընդհանուր պայմաններ ու շահագրգռվածություն ստեղծում աշխատանքի արտադրողականության առավել բարձրացման համար։ Չէ՞ որ այն ապահովում է էկոնոմիկայի պլանային ու արագաթափ զարգացումը, բացառում է արտադրության անարխիան, վերացնում է գործազրկությունը, մարդկանց դարձնում է ակտիվ, ստեղծագործող ու ժողովրդի շահերի համար անձնուրաց մաքառող։ Այս ամենը և, որ գլխավորն է, կոմունիստական կուսակցության գիտականորեն հիմնավորված տնտեսական ճիշտ քաղաքականությունը նյութական արտադրության բոլոր ճյուղերում աշխատանքի արտադրողականության աճի ու դրա տեմպերի արագացման հաստատուն գրավականն են։

Գոհունակությամբ պետք է նշել, որ սովետական շատ ձեռնարկություններ արդեն հասել են ավելի բարձր արտադրողականության, քան ԱՄՆ-ում է։ Այսպես. Մագնիտագորսկի մետալուրգիական կոմբինատում մեկ բանվորի հաշվով ավելի շատ չուգուն ու պողպատ է արտադրվում, քան միջին հաշվով ԱՄՆ-ի գործարաններում։ Թաթարիայի մի շարք նավթահորեր 1,5—2 անգամ արտադրողաբար են գործում, քան ԱՄՆ-ի նավթահորերը։ Այսպիսի օրինակներ կարելի է շատ բերել։ Առաջավոր ձեռնարկությունների փորձը մեզ մոտ լայն տարածում է ստանում և հետևողական ու կազմակերպված պայքար մղվում աշխարհում ամենաբարձր արտադրողականության հասնելու համար։ Դա սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման օբյեկտիվ տենդենցն է, որը գնալով ավելի լայն մասշտաբներով է դրսևորվում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործոնները բազմաթիվ են։ Դրանցից հարկ է նաև նշելու աշխատանքի ու արտադրության գիտական կազմակերպումը, արտադրության կառուցվածքի բարելավումը, ձեռնարկությունների մասնագիտացումը, արտադրաուժերի ճիշտ տեղաբաշխումն ու բնական պայմանները հաշվի առնելը, տնտեսական նոր ռեֆորմի հետևողական կենսագործումը և այլն, որոնց նոր հնգամյա պլանի դիրեկտիվներում առանձնահատուկ տեղ են հատկացված։

Սովետական ժողովուրդն անհուն խանդավառությամբ ձեռնամուխ է եղել իններորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված վիթխարի խնդիրների ու պրոբլեմների, դրանց թվում և աշխատանքի արտադրողականության բարձրացման ու դրա տեմպերի արագացման առաջադրանքների կատարմանը։ Բազմաթիվ ձեռնարկություն-

ներ, միավորումներ, մինիստրություններ ու հանրապետություններ կոմունիստական կուսակցությանն ու սովետական կառավարությանը զեկուցեցին իրենց աշխատանքի առաջին հաջողությունների՝ 1971 թվականի առաջադրանքների կատարման ու գերակատարման մասին։ Դրանց թվում է նաև մեր հանրապետությունը։ Մենք օրինական հպարտությամբ ենք արձանագրում, որ Հայկական ՍՍՀ արդյունաբերության աշխատողները, գործի վերածելով սոցիալիստական մրցությունում ստանձնած պարտավորությունները, ժամկետից չորս օր շուտ կատարեցին նոր հնգամյակի առաջին տարվա արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը։ Գիտության և տեխնիկայի նվաճումների արմատավորման շնորհիվ նրանք կատարեցին նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը։

Առավել նշանակալից հաջողությունների են հասել արդյունաբերական առաջավոր ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները։ Երևանի բամբակագործական ֆաբրիկայի կոլեկտիվը ժամկետից գրեթե մեկ ամիս շուտ կատարել է արտադրանքի թողարկման և իրացման 1971 թ. պլանը։ Այստեղ աշխատանքի արտադրողականությունը գերազանցել է աշխատավարձի ֆոնդին և 7,8 տոկոսով բարձր է եղել սահմանված պլանից։ Նման օրինակներ կարելի է բերել նաև հանրապետության մյուս քաղաքների ու շրջանների արդյունաբերական ու գյուղատնտեսական ձեռնարկություններից։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971 թվականի պլանի կատարման վերաբերյալ Կենտրոնական վիճակագրական վարչության օրերս հրապարակած հաղորդագրության մեջ բերված փաստերն ու թվերը վառ կերպով ցույց են տալիս ինչպես ընդհանուր արտադրանքի թողարկման, այնպես էլ աշխատանքի արտադրողականության բարձրացման բնագավառներում ձեռք բերված նշանակալից հաջողությունները։ Դրանք հաստատ հիմք են տալիս ասելու, որ կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվները կկատարվեն ժամկետից շուտ, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով սովետական ժողովուրդը փայլուն կերպով կլուծի հնգամյակի գլխավոր խնդիրը և նոր առաջընթաց խոշոր քայլ կկատարի կոմունիզմի կառուցման գործում։



# ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՎԵՀ ԻՄԱՍՏԸ

Հ. Ա. ՎԱԹՅԱՆ

ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակության շինարարությունն անհերքելիորեն ապացուցեց, որ ազգային հարցի ճիշտ լուծումը կապիտալիզմից սոցիալիզմին անցման կարևորագույն օրինաչափություններից մեկն է բոլոր երկրների համար։ Ժողովուրդների լենինյան համագործակցությունն ու փոխօգնությունն ապահովեցին սովետական հանրապետությունների էկոնոմիկայի և կուլտուրայի հսկայական աճը։

Դեռ 1903 թ. Վ. Ի. Լենինը գրում էր՝ «Ինքնակալության անիծյալ պատմությունը մեզ ժառանգություն է թողել այն զանազան ժողովուրդների բանվոր դասակարգի ահագին օտարացումը, որոնք ճնշվում են այդ ինքնակալության կողմից։ Այդպիսի օտարացումը մեծագույն չարիք է, մեծագույն խոչընդոտ է ինքնակալության դեմ մղվող պայքարում, և մենք չպետք է օրինականացնենք այդ չարիքը, սրբագործենք այդ այլանդակությունը կուսակցական առանձնության կամ կուսակցական «ֆեդերացիայի» ոչ մի «սկզբունքով»» (Երկեր, հ. 6, էջ 589)։

Ցարիզմի ռեակցիոն ազգային-քաղաքականության ծանր հետևանքը Ռուսաստանի ժողովուրդների փաստական անհավասարությունն էր։ Դրա պատճառը թաքնված էր ո՛չ միայն այդ ժողովուրդների պատմության, այլև ցարիզմի և ռուսական բուրժուազիայի քաղաքականության մեջ. նրանք ձգտում էին ծայրամասերը, հատկապես Միջին Ասիան, Ղազախստանը, Կովկասը դարձնել բացառապես հումքի աղբյուրներ՝ արդյունաբերական տեսակետից զարգացած կենտրոնական շրջանների համար։ Հասկանալի է, որ գործնականորեն հնարավոր չէր մեկ-երկու տարում հաղթահարել այդ անհավասարությունը։

ՌԿ(բ)Կ տասներորդ համագումարը նշեց, որ «փաստական ազգային անհավասարության ոչնչացումը... մի երկարատև պրոցես է, որը պահանջում է

համառ և հաստատակամ պայքար մղել ազգային ճնշման և գաղութային ստրկացման բոլոր մնացորդների դեմ»:

Երկրի հետամնաց ծայրամասերի և զարգացած ժողովուրդների եղբայրական համագործակցությունը գործնականորեն հնարավոր դարձավ միայն սոցիալիստական հեղափոխության շնորհիվ, ոչ միայն մեծապետական շովինիզմի, այլև տեղական նացիոնալիզմի դեմ մղվող հետևողական պայքարի շնորհիվ: Բայց առանց ժողովուրդների տնտեսական իրական անհավասարությունը վերացնելու, հնարավոր չէր կատարելագործել նրանց համագործակցությունն ու փոխադարձ օգնությունը միութենական պետության սիստեմում: Հարկավոր էր զարգացնել նրանց էկոնոմիկան, ստեղծել բանվոր դասակարգ և սովետական մտավորականություն: Այդ խնդիրները լուծելիս կուսակցությունը ելնում էր Վ. Ի. Լենինի այն ցուցումներից, որ «ճնշող կամ այսպես կոչված՝ «մեծ» ազգի... կողմից դրսևորվող ինտերնացիոնալիզմը պետք է ո՛չ միայն ազգերի ձևական հավասարության պահպանումը լինի, այլև այնպիսի հավասարության, որը ճնշող ազգի, մեծ ազգի կողմից հատուցի այն անհավասարությունը, որ փաստորեն առաջանում է կյանքում» (տե՛ս Երկեր, հ. 36, էջ 703):

Սոցիալիստական հեղափոխության առաջին իսկ օրերից սովետական սուվերեն հանրապետությունների միջև համագործակցություն հաստատվեց տնտեսական, տեխնիկական և կուլտուր-լուսավորական մարզերում: Սովետների տերիտորիայում նոր տնտեսության կազմակերպման գործում վճռական դերը խաղում էր ռուս ժողովուրդը, որը մեծապես օգնում էր մյուս ազգություններին:

Ի պատասխան ՌՍՖՍՀ եղբայրական օգնության, սուվերեն սովետական հանրապետություններն իրենց ունեցած արդյունաբերական արտադրանքով ու հումքով, ուժերի ներածին չափ, օգնում էին Ռուսաստանին: Երբ 1922 թ. Ռուսաստանում մոլեգնեց սովը, Անդրկովկասից բամբակի հումքով, ծխախոտով, մրգերով, հացով բեռնավորված գնացքներ էին սուրում Պովոլժիեի սովահար բնակչության համար: Սոցիալիստական հասարակությունում պրոլետարական ինտերնացիոնալիզմի, փոխադարձ օգնության և համագործակցության սկզբունքների կենսագործումը նշանակում էր՝ պետության կողմից նյութական միջոցների վերաբաշխում հօգուտ անցյալում ճնշված ժողովուրդների:

Առավել զարգացած ժողովուրդներին, առաջին հերթին, ռուս ժողովրդին վիճակվեց երկրի բնակչության մեծ մասին տնտեսական ու կուլտուրական հետամնացությունից դուրս բերելու ծանր բեռը: Այդ օգնությունը կրում էր կազմակերպական, տնտեսական, կուլտուրական բնույթ: Ռուսաստանի ֆեդերացիայում և Ուկրաինայում կուտակված միջոցների մի մասը տրամադրվում էր ազգային հանրապետությունների կարիքներին: Այսպես, 1924 թվականին հինգ տարով ընդհանուր-քաղաքացիական հարկեր վճարելուց ազատվեց Միջին Ասիայի, Թաթարական, Չուվաշական, Մարիական և Կալմիկական հանրապետությունների բնակչությունը: Այդ ժողովուրդներին ցույց տրվող օգնությունը հաշվի էր առնվում նաև ընդհանուր-միութենական բյուջեն պլանավորելիս (տե՛ս «История СССР» ժուռնալը, 1967, № 6, էջ 22): Եղբայրական ժողովուրդներին ցույց տրվող օգնության ձևերից մեկը կենտրոնական արդյունաբերական շրջանների շեֆությունն էր ասիական սովետական հանրապետությունների նկատմամբ:

Սոցիալիզմի շինարարությունը մի իսկական համաժողովրդական գործ է,



տրի իրականացման հարցում շահագրգռված են ՍՍՀՄ բոլոր ազգերն ու ազգությունները: Ընդհանուր շարքում, համատեղ ջանքերով նրանք հաղթահարեցին ցարիզմի և կապիտալիզմի «ժառանգությունը», դուրս եկան բարգավաճման ու աստիճանական մերձեցման լայն ճանապարհ:

Ռեակցիոն բուրժուական սոցիոլոգները թղթե լեռներ են ստեղծել սովետական ժողովրդի նվաճումներն արատավորելու համար: Նրանք լռության են մատնում զարգացած ազգերի կողմից հետամնաց շրջաններին վիթխարի օգնություն ցույց տալու փաստը, պնդում են, թե, իբր, ազգային հանրապետություններում գոյություն են ունեցել «արագ զարգացման համար շատ ավելի բարենպաստ պայմաններ, քան դրանք հիմա կան Ասիայում», թե, իբր, կապիտալ ներդրումները տեղաբաշխելիս, սովետական պետությունը հաշվի չի առել ՍՍՀՄ ազգային շրջանների շահերը:

Սովետական Հայաստանի պատմությունը ցայտուն օրինակ է սոցիալիստական տնտեսավարման արմատական սկզբունքներից մեկի՝ անցյալում հետամնաց ժողովուրդներին տնտեսական զարգացման բարձր մակարդակի հասնելու ասպարեզում: Հայաստանը, ցարական Ռուսաստանի նախկին կիսաֆեոդալական քայքայված գաղութը, պատմական կարճ ժամանակամիջոցում դարձավ ինդուստրիալ-ագրարային երկիր՝ բարձր զարգացած արդյունաբերությամբ ու մեքենայացված գյուղատնտեսությամբ, համակողմանիորեն զարգացած սոցիալիստական կուլտուրայով:

Հեռավոր Ալթայում խոպան հողերով դեպի նոր սովխոզներն են ձգվում էլեկտրական լարերը: Այդ այն պղինձն է, որ հանվել է, ձուլվել և էլեկտրալարեր ու կաբել է դարձել Հայաստանի ձեռնարկություններում: Վոլգայի, Անգարայի, Ենիսեյի վիթխարի տարածություններում ավտոմեքենաները լեռնաչափ բեռներ են փոխադրում Երևանի ավտոդողերի գործարանի մակնիշը կրող ավտոդողերով: Սովետական Միության հանրապետություններին Հայաստանը մատակարարում է տրանսֆորմատորներ, ալյումին, ցիանամիդ, ազբեստ-շիֆեր, հրակայուն արուրքներ, Արթիկի տուֆ (թեթև և ամուր), մարմար, ինքնատիպ էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, ճշգրիտ էլեկտրաչափիչ սարքեր:

1970 թ. Հայաստանում արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1913 թ. համեմատությամբ, աճեց 180 անգամ: Նման պատկեր ենք տեսնում մենք ՍՍՀՄ բոլոր միութենական և ինքնավար հանրապետություններում:

Այն բազում գործոնների թվում, որոնք կարևոր դեր են կատարել ՍՍՀՄ ազգերի ու ազգությունների միասնության ամրապնդման, նրանց համախմբման, էկոնոմիկայի ու կուլտուրայի ծաղկման ոլորտում, համագործակցության ու փոխօգնության ասպարեզում, առանձնահատուկ նշանակություն ունեցան բոլոր ազգերի ու ազգությունների ընդհանուր, ինտերնացիոնալ հատկանիշների լինելությունն ու զարգացումը: ՍՍՀՄ ժողովուրդների հարատևող բարեկամությունը ծնունդն է սոցիալիզմի և սոցիալիստական տիպի ազգային հարաբերությունների: Այն ազգային հարաբերությունների յուրահատուկ որակական վիճակ է, որն անընդհատ խորանում է իր էության մեջ ու ձևում՝ կախված ժողովուրդների մերձեցման մակարդակից, աստիճանից, նրանց համագործակցությունից և փոխօգնությունից: Խոսքը վերաբերում է ժողովուրդների նոր տիպի բարեկամությանը՝ սոցիալիստական բարեկամությանը:

Ժողովուրդների բարեկամության արտահայտման գլխավոր ոլորտը, ազգային հարաբերությունների հիմքն ընդհանրապես սոցիալիստական էկոնոմի-

կան է, մի գործոն՝ որը միավորում է սովետական սոցիալիստական ազգերն ու ազգությունները։ Ընդ որում, կարևոր է հաշվի առնել ո՛չ միայն հասարակական սեփականությունից բխող նրա ինտերնացիոնալիստական էությունը, այլև զարգացման աստիճանը, երբ տնտեսական կապերի ինտենսիֆիկացիան դառնում է առաջընթաց շարժման խիստ օբյեկտիվ անհրաժեշտություն։ Մասնագիտացումը և կոոպերացումը միջհանրապետական տնտեսական կապերի գլխավոր առանձնահատկություններն են։ Կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ ութերորդ հնգամյակի տարիներին «ընդլայնվել է մեր բոլոր ժողովուրդների դաշինքի և եղբայրության տնտեսական հիմքը»։

Ութերորդ հնգամյակի պլանի կատարողականում մարմնավորվեցին թե՛ ՍՍՀՄ ժողովուրդների աշխատանքային հերոսությունը, թե՛ կուսակցության լենինյան ազգային նպատակասլաց քաղաքականությունը, որն ուղղված է ժողովուրդների բարգավաճմանն ու աստիճանաբար մերձեցմանը, այն ժողովուրդների առաջընթացի արագ տեմպերին, որոնք տնտեսական զարգացման մակարդակով չեն հասել միջին միութենական ցուցանիշներին։ Չնայած միջոցների ծախսումն առավել շահույթ է տալիս ՌՍՖՍՀ այնպիսի տնտեսական շրջաններում, ինչպիսիք՝ Կենտրոնականն է, Հյուսիս-Արևմտյանը, Վոլգա-Վյատկայինը, Ուրալյանը, այնուամենայնիվ, կապիտալ ներդրումների ավելի բարձր մակարդակ է պահպանվել մյուս միութենական հանրապետություններում։ Եթե երկրում ընդհանուր առմամբ, ինչպես նաև ՌՍՖՍՀ-ում և Ուկրաինայում, այդ կապիտալ ներդրումները ութերորդ հնգամյակի ընթացքում աճել են 1,4 անգամ, ապա Հայաստանում և Կիրգիզիայում՝ 1,6, Լիտվայում, Մոլդավիայում և Բելոռուսիայում՝ 1,7, Վրաստանում՝ 1,9 անգամ։

Սոցիալիզմը և կոմունիզմն իրենց բնույթով ինտերնացիոնալ են։ Ուստի, ազգային շահը միացնում է իր մեջ ինչպես սեփական աճի տեմպերի ավելացման, այնպես և ընդհանուր, գլխավոր նպատակի՝ կոմունիզմի հաջող կառուցման ձգտումը։ Այլ կերպ չի կարող լինել, քանի որ, ինչպես Լենինն է ասել, մեր երկրի բոլոր ազգերը և ազգությունները մի մեծ, հզոր ընտանիք են։

ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական կյանքը բառիս բուն իմաստով, ի մի է ձուլված, նրանք բոլորը մի նպատակ ունեն՝ ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազան։ Երկրի զարգացման ընդհանուր ֆոնդում, ուժերի ներածին չափ, ներդրում կատարելով, ամեն մի հանրապետություն նաև անհրաժեշտ ամեն բան ստանում է իր սեփական առաջընթացի համար։

Միութենական հանրապետությունների էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերը պայմանավորեցին և մեծացրին նրանցից ամեն մեկի դերը աշխատանքի հասարակական բաժանման, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման ասպարեզում։ Ռուսաստանի ֆեդերացիան, օրինակ, տալիս է երկրի էլեկտրաէներգիայի արտադրանքի 64 տոկոսը, նավթի արտահանման՝ ավելի քան 81, գազի՝ 45, ածխի՝ 55, չուգունի ձուլման՝ 49, պողպատի՝ ավելի քան 54 տոկոսը։ Ուկրաինան յուրաքանչյուր տարի մյուս հանրապետություններին է ուղարկում սև մետաղների գլանվածքի արտադրանքի 57 տոկոսը, ածխի՝ 20, երկաթի հումքի՝ 28 տոկոսը, ինչպես նաև մեծ քանակությամբ մեքենաներ և տարբեր սարքավորումներ։ Եղբայրական հանրապետություններից նա ստանում է իրեն անհրաժեշտ նավթարտադրանք և անտառանյութ, մեքենաշինական և սարքաշինական արտադրանք և այլն։ Բելոռուսիայի



աշխատավորները մյուս հանրապետությունների իրենց եղբայրներին են ուղարկում հանքային պարարտանյութերի ինը տասներորդը, հաստոցներ, տրանսֆորմատորներ, քիմիական թելեր, տրակտորների ավելի քան երեք քառորդը, ավտոմեքենաներ, առանցքակալներ։ Բայց ԲՍՍՀ էկոնոմիկան չէր կարող զարգանալ, եթե մետաղ ու ածուխ չստանար Ուկրաինայից, նավթարտադրանք, մեքենաների բազմաթիվ տեսակներ՝ Ադրբեջանից և Թաթարիայից, էլեկտրատեխնիկական սարքավորումներ՝ ՌՍՖՍՀ-ից և մերձբալթյան հանրապետություններից, իրենց անհրաժեշտ հացահատիկի մոտավորապես 40 տոկոսը՝ ՌՍՖՍՀ-ից, Ուկրաինայից և այլն։ Հայաստան ներմուծվող ապրանքները կազմում են կուտակման և սպառման ֆոնդերի մոտ 53 տոկոսը։ Ութերորդ հնգամյակի սկզբում նա մյուս հանրապետություններից ստանում էր իրեն անհրաժեշտ էլեկտրաէներգիայի մեկ երրորդը, ցեմենտի՝ երկու հինգերորդը։ Միութենական ֆոնդերի հաշվին մեծաքանակ միջոցների առանձնացման և հենց Հայաստանում էլեկտրակայանների շինարարության շնորհիվ անդրկովկասյան եղբայրական հանրապետություններից ստացվող էլեկտրաէներգիայի պահանջը աստիճանաբար փոքրացավ՝ 1965 թ. այն կազմում էր 1.648 մլն կվտժ, իսկ 1968 թ.՝ արդեն միայն 810 մլն կվտժ։ Հայաստանի աշխատավորները, իրենց հերթին, արդյունաբերության և գյուղատնտեսության ամբողջ արտադրանքի 40 տոկոսը տալիս են մյուս հանրապետություններին։

Միջին Ասիայի հանրապետությունները եղբայրական ժողովուրդներին մատակարարում են բամբակի հումքի $^{9}/_{10}$, կարակուլի մորթու $^{8}/_{10}$, մետաքսյա բոժոժների $^{2}/_{3}$-ը։ Վերջին տարիներին ավելի է մեծանում երկրին բնական գազով ապահովելու գործում միջինասիական հանրապետությունների բաժինը։ Ուզբեկստանը, օրինակ, արդյունահանում է 32 մլրդ խորանարդ մետր գազ, որի հիմնական մասը ութերորդ հնգամյակի տարիներին կառուցված հինգ գազախողովակներով, այդ թվում աշխարհում մեծագույն՝ Բուխարա—Ուրալ—Միջին Ասիա—Կենտրոն գազուղիներով մատակարարում է մյուս հանրապետություններին։ Տաջիկստանի աշխատավորները եղբայրական հանրապետություններին են տալիս բամբակի, մետաքսյա գործվածքեղենի, գունավոր մետաղների հանքաքարերի կոնցենտրատների, պտղաբանջարեղենային պահածոների 80—90 տոկոսը և այլն։ Սովետական Էստոնիան ստանալով իրեն անհրաժեշտ նավթաքիմիական, մեքենաշինական և արդյունաբերության այլ ճյուղերի արտադրանք, մյուս հանրապետություններին է մատակարարում ֆոսֆատային պարարտանյութերի 60 տոկոսը, արտադրվող էլեկտրաէներգիայի ավելի քան $^{2}/_{3}$-ը, Լատվիական ՍՍՀ-ն իր արտահանույթի կեսն ուղարկում է ՌՍՖՍՀ-ի կենտրոնական և հյուսիսարևմտյան շրջանները, ինչպես նաև Ուկրաինա։ Այդ շրջաններից նա, իր հերթին, ստանում է արդյունաբերական ապրանքների և հումքի ամբողջ ներմուծման 55 տոկոսը (տե՛ս «Вопросы истории» ամսագիրը, 1971, № 9, стр. 17—18)։

ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների տնտեսական համագործակցության ժամանակակից էտապի համար բնորոշ են ո՛չ միայն արտադրանքի և հումքի փոխմատակարարումների ավելացումը, փորձի փոխանակումը, այլև անմիջական մասնակցությունն առանձին խոշոր ձեռնարկությունների և արդյունաբերության ճյուղերի կառուցմանն ու կարգավորմանը։ Այսպես, Սովետական Բաշկիրիան ութերորդ հնգամյակում դարձավ «մեծ քիմիայի» հանրապետություն։ Նրա նավթաքիմիական արդյունաբերությունը զարգացավ բոլոր միու-

թենական հանրապետությունների մասնակցությամբ։ Հատկանշական է, որ ներկայումս ազգային հարաբերությունների բարեկամական մթնոլորտում տեղի ունեցող աշխատանքային պաշարների ազատ վերաբաշխումը պայմանավորում է արտադրական կոլեկտիվների ինտերնացիոնալ բնույթը։ Ղազախստանի Մագնիտկայում ուս-ուսի աշխատում են 48 ազգությունների բանվորներ և մասնագետներ, Վոլժսկի ավտոգործարանի շինարարությունում՝ 44, Նուրեկի ՀԷԿ-ում՝ 41, Արփա-Սևան թունելում՝ 17 և այլն։

Ժողովուրդների եղբայրական համագործակցության խորացումն անխզելիորեն կապված է նրանց անշահախնդիր փոխօգնության հետ։ Ութերորդ հնգամյակի տարիներին այդ բանն ավելի ցայտուն երևաց, երբ ՍՍՀՄ բոլոր ժողովուրդները միահամուռ կերպով անհապաղ օգնության եկան երկրաշարժից տուժած Ուզբեկստանին և Դաղստանին։

Կոմունիզմի շինարարության ժամանակաշրջանում մեր կուսակցությունը կիրառում է հանրապետությունների և երկրի տնտեսական շրջանների տնտեսական և հոգևոր մակարդակների հավասարեցման քաղաքականություն։

Իններորդ հնգամյակում հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցման խնդրի լուծման կարևոր լծակներից մեկը, ինչպես և առաջ, շրջանառու հարկից ստացվող եկամտի արդարացի վերաբաշխումն է։ Միութենական կառավարությունը, դրանից բացի, առանձնացնում է նաև լրացուցիչ հատկացումներ այն հանրապետություններին, որոնց անհրաժեշտ է ապահովել արտադրության առավել զգալի աճ կամ որոնք ողջ երկրի շահերից ելնելով կազմակերպում են բնական հարստությունների շահագործում, նոր ձեռնարկությունների շինարարություն և այլն։

ՍՍՀ Միություն ստեղծող սովերեն սովետական հանրապետությունները էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման կողքին անընդհատ ամրապնդել են իրենց միասնության կապերը, մի կողմից՝ ողջ բազմազգ պետության ամրապնդմամբ, մյուս կողմից՝ իրենց ազգային պետականության կատարելագործմամբ, քաղաքական ակտիվության, սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության գործում նրա դերի բարձրացմամբ։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՀԱՍՏԱՏՈՒՆ ՔԱՅԼԵՐՈՎ

Բ. Ա. ՄԱԺԻՆՅԱՆ

ՀԿԿ Կալինինոյի շրջկոմի առաջին քարտուղար

### ՑԵՂԻ ԲԱՐԵԼԱՎՈՒՄՆ ԱՌԱՋԻՆ ՊԼԱՆՈՒՄ

Կուսակցության XXIV համագումարը «սելեկցիոն ցեղաբուծական աշխատանքի բարելավման» գործը համարեց գյուղատնտեսության վերելքի գրավականներից, կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից մեկը։ Այժմ Լոռվա տոհմաբուծարանում կոմունիստ մասնագետները հետևողական գիտափորձեր են կատարում կովկասյան գորշ ցեղի հետագա բարելավման համար, ջանում են ի հայտ բերել նրա կաթնային ու մսային նոր ու լավ հատկանիշները։ Շահնազարի, Ղարաքիլիսայի, Սարչապետի, Իլմազլուի սովխոզների և ոչ տոհմային մյուս տնտեսությունների կուսկազմակերպությունները ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման առթիվ մշակած իրենց միջոցառումներում առանձնահատուկ տեղ են հատկացրել հանրային հոտի որակական կազմի բարելավմանը, ցեղաբուծության գործի կազմակերպմանը։ Շահնազարի սովխոզի կուսկազմակերպության միջամտությամբ, օրինակ, կաթնապրանքային երկու ֆերմաներից յուրաքանչյուրում ստեղծվել է 100 գլխից բաղկացած տոհմային կորիզ։ Դրանք բարձրարժեք էգ հորթեր են, որոնք խնամվում են առանձնահատուկ պայմաններում։ Տոհմային կորիզ են ստեղծել նաև Ղարաքիլիսայի սովխոզը և Նորաշենի կոլտնտեսությունը։

Գաղտնիք չէ, որ կաթնատնտեսության զարգացման ամենաճիշտ ուղին սեփական հոտի վերարտադրության տոհմային խմբի ստեղծումն է, բարձրարժեք մատղաշների պահպանումն ու աճեցումը։ Մեր շրջանի փորձով վստահորեն կարելի է հաստատել այդ դրույթը։ Արդեն մի քանի տարի է, ինչ մեր պետական տնտեսությունները հրաժարվել են կով գնելու նախկին, ես կասեի, սխալ պրակտիկայից։ Սեփական մատղաշների հաշվին ապահովել հոտի վերարտադրությունը. սա է մեր գործունեության ելակետը։ 1970 թ. սկսած, մեզ մոտ ոչ մի էգ անասուն չի վաճառվում, մինչև որ նրանից սերունդ չստացվի։ Ահա թե ինչու շրջանի հանրային հոտի վերարտադրության համար անհրաժեշտ 1500-ի փոխարեն, 1971 թ. կովեր դարձան 2100 երինջներ։ Այս տարի այն կհասնի 2500 գլխի։ Ստեղծվել է այնպիսի բարենպաստ վիճակ, որ հենց այժմվանից շրջանի տոհմային տնտեսությունները կարող են տարեկան վաճառել 300—500 գլուխ առաջին անգամ ծնած կովեր։

Մեզ մոտ ցեղաբուծական աշխատանքի հիմնական խնդիրներից մեկը

տոհմային անասունի վաճառքն է։ Դա եկամտի կարևոր աղբյուր է տնտեսությունների համար։ Այդ գործը պատշաճ կազմակերպելու նպատակով՝ կառավարությունը նյութապես շահագրգռում է նրանց։ Ամեն տարի շրջանի տոհմային տնտեսությունները հանրապետության կոլտնտեսություններին ու սովխոզներին վաճառում են ավելի քան 600 գլուխ մատղաշ անասուններ։ Նախատեսվում է իններորդ հնգամյակի վերջում կրկնապատկել այդ թիվը։ Մեր շրջանի հեռանկարային խնդիրն է ցեղական մատղաշների տարեկան վաճառքը հասցնել ավելի քան 2500 գլխի։

Օգտվելով ամսագրի ընձեռած հնարավորությունից՝ ուզում եմ արծարծել մի կարևոր հարց, որը հրատապ նշանակություն ունի հանրապետության անասնաբուծության հետագա զարգացման համար։ Դա վերաբերում է հոտի վերարտադրության և մայրական կազմի բարելավման արդյունավետ կազմակերպմանը։ Հանրապետության շատ տնտեսություններ ամեն տարի Կալինինոյի ու Ստեփանավանի շրջանների կոլտնտեսականներից ու բանվոր-ծառայողներից գնում են կովեր, որպեսզի բարելավեն սեփական հոտը։ Սակայն, ինչպես ցույց է տալիս փորձը, դրանք շատ կարճ ժամանակում են լրացնում մայրական կազմի պակասը։ Բանն այն է, որ առանձին մարդիկ կովերի առ ու տուրը դարձրել են եկամտի աղբյուր և, իրականում, հրամցնում են ոչ թե Ստեփանավանի կամ Կալինինոյի անասունները, այլ, այսպես ասած, դրանց մակնիշը։ Ամեն տարի գարնանը նրանք Վրաստանի հարևան և մեր հանրապետության մի շարք շրջաններից ցածր արժեքով անասուններ են գնում, իսկ աշնանը, կովկասյան գորշի անվան տակ, վաճառում այդ նույն շրջաններին, հիմնականում Արարատյան դաշտի տնտեսություններին։

Առ ու ծախը դառնում է եկամտի աղբյուր առանձին մարդկանց համար, ստեղծում չարաշահումների լայն հնարավորություն, որը բնավ շահավետ չէ կոլտնտեսությունների և սովխոզների համար։ Հետևաբար, հարկավոր է հրաժարվել մասնավոր անձանցից կովեր ու մատղաշներ գնելու արատավոր պրակտիկայից և դրանք ձեռք բերել բացառապես տոհմային տնտեսություններից։

## ԳԼԽԱՎՈՐԸ ԿԱԹՆ Է

Մեր շրջանի էկոնոմիկան հիմնականում մասնագիտացված է կաթնաանասնապահությամբ։ Գերակշռողը կաթն է, այն համարվում է հանրային արտադրության առաջնակարգ, այսպես ասած № 1 մթերքը։ Կուսկազմակերպությունների գործունեության գնահատականը հիմնականում պայմանավորված է կաթի արտադրության խնդիրների լուծմամբ։ Մեր պարտքն է մշտապես հիշել ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն եզրակացությունը, որ նոր հնգամյակում լուծվելիք խնդիրների բնույթը որոշում է գյուղատնտեսական մարմինների, գյուղական կուսակցական կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների պատասխանատվության ավելի բարձր աստիճանը։ Այդ խնդիրների մեջ, ինչ խոսք, կենտրոնական տեղ է բռնում անասնապահական մթերքների արտադրության ավելացումն ընդհանրապես, կաթինն ու մսինը՝ մասնավորապես։

Հարկ է հիշել, որ հանրապետությունում արտադրվող կաթի ու մսի ընդհանուր հաշվեկշռում մեր շրջանը նշանակալի բաժին ունի։ Կաթի համախառն արտադրությամբ Հայաստանում Կալինինոյի շրջանը գրավում է առաջին տեղը։ Այդ նշանակում է, որ մեր գյուղական կուսկազմակերպությունները, սովետական ու տնտեսական մարմինները պետք է առավել մեծ ուշադրություն նվիրեն պետության ու ժողովրդի համար կենսական նշանակություն ունեցող այդ մթերքի արտադրության կազմակերպմանն ու աճին։ Անցած հնգամյակում մենք այդ ասպարեզում նշանակալից հաջողության հասանք։ Իններորդ հնգամյակում նախանշել ենք ավելի առաջավոր բնագծեր։ Մի շարք կուսկազմակերպություններ, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների հիման վրա, մշակել են լրացուցիչ միջոցառումներ՝ անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի նախատեսած պլանները զգալիորեն գերակատարելու համար։



Շահնազարի սովխոզի կուսկազմակերպության ժողովը, այդ հարցի քննարկման ժամանակ, որոշեց պետությանը պլանից դուրս վաճառել 100 տոննա կաթ և 20 տոննա միս։ Նման որոշումներ են ընդունել նաև մյուս տնտեսությունների կուսկազմակերպությունները։

Նոր հնգամյակի վերջին տարում շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները կունենան առնվազն 8400 գլուխ կով, կարտադրեն ավելի քան 21,8 հազար տոննա կաթ կամ 1970 թվականի համեմատությամբ աճը կկազմի համապատասխանաբար՝ 900 գլուխ և 3600 տոննա։ Նախատեսվում է մսի համախառն արտադրությունը հասցնել 2000 տոննայի կամ նախորդ հնգամյակի վերջին տարվա համեմատությամբ ավելացնել 25 տոկոսով։ Մեծ չափերով կաճի նաև ձվի ու բրդի արտադրությունը։ Զգալի աճ է նախատեսվում պետությանը անասնապահական մթերքների հանձնման ու վաճառքի ասպարեզում։

Մեր կոլտնտեսությունների և սովխոզների կովերի որակական լավ կազմի, կաթի արտադրության ավելացման թաքնված հնարավորությունների ու ռեզերվների առկայությունը թույլ է տալիս ենթադրելու, որ շրջանը կարող է հասնել ավելի բարձր արդյունքի։ Առաջիկա տարիներին ամեն մի կովից 3000 կգ կաթ ստանալու բնագիծ ենք նշել։ Դա իրագործելի է, քանի որ Կալինինոյի սովխոզի, Լոռվա տոհմաբուծարանի, Լոռվա փորձարարական կայանի, Մեդովկայի, Սարատովկայի, Նովոսելցովոյի և Բլագոդարնոյեի կոլտնտեսությունները վաղուց հասել են այդ աստիճանին։ Այս տնտեսությունների համար ամեն մի կովից տարեկան 4000 կգ կաթ ստանալը մոտակա ժամանակաշրջանում լուծելի խնդիր է, որովհետև մի շարք կթվորներ արդեն այդքան ստանում են։ 4000-ականների շարժման մեջ ընդգրկվել են տասնյակ կթվոր-կթվորուհիներ։

## ՄԵՔԵՆԱՅԱՑՈՒՄԸ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆ Է

Գաղտնիք չէ, որ անասնապահությունը հին, պապենական եղանակով վարելու ճանապարհով հնարավոր չէ նվաճել նախանշած բնագծերը, լուծել ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած նոր ու հոյակապ խնդիրները։ Գիտատեխնիկական առաջընթացի ներկա էտապում կուսակցությունը պահանջում է հետևողականորեն արմատավորել գյուղատնտեսական գիտության նորագույն նվաճումներն ու առաջավոր տնտեսությունների ուսանելի փորձը, արտադրության բոլոր ճյուղերը, առավել ևս անասնապահությունը վարել գիտականորեն, կիրառել աշխատանքի կազմակերպման պրոգրեսիվ եղանակներ և այդ ամենը ծառայեցնել հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը։

Մեքենայացումը, անտարակույս, արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր գործոն է, անասնապահությունն առաջ մղելու միջոց։ Անցած տարիներին մեր շրջանում վճռական քայլեր են արվել անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացման ասպարեզում։ Լոռվա տոհմաբուծարանն ու փորձարարական կայանը, Պրիվոլնոյեի ու Սարատովկայի կոլտնտեսությունները լրիվին անցել են կովերի էլեկտրակթին և լուծել անասնապահության կոմպլեքսային մեքենայացման հարցը։ Սակայն անասնապահության մեքենայացման ներկա վիճակը մեզ չի ոգևորում, որովհետև շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները վատ են օգտագործել եղած հնարավորությունները։ Այդ գործը հատկապես անբավարար է Շահնազարի, Ղարաքիլիսայի, Սարչապետի սովխոզներում, Կրզլդաշի, Էլլուի կոլտնտեսություններում։ Նրանցում անասնապահական տիպային շենքերի բացակայությունը կամ խիստ պակասը արգելակում է մեքենաների ներդրումը։

Ի դեպ, մեզ մոտ անասնապահական շենքերի շինարարությունը առաջնակարգ նշանակություն ունի։ Անասնապահության զարգացման ներկա տեմպերը հրամայական անհրաժեշտություն են առաջացնում կառուցել նոր, տիպային կովանոցներ ու այլ շենքեր։ Ցավոք, հանրապետության համապատասխան մարմինները, անասնապահական շենքերի շինարարությունը պլանավորելիս,

հաշվի չեն առնում գլխաքանակի աստիճանական աճի տեմպերը։ Մի շարք տնտեսություններում գոմերը հին են ու խարխուլ, կառուցվել են կոլեկտիվացման առաջին տարիներին և այժմ հնարավոր չէ այնտեղ տեղադրել որևէ սարքավորում, արմատավորել առաջավոր փորձը, ավելացնել գլխաքանակը։ Նման վիճակն անհանգստացնում է ինչպես կուսշրջկոմին, այնպես էլ սկզբնական կուսկազմակերպություններին։

Մենք, կուսակցության նոր պահանջներին համապատասխան, մշակում ենք գործնական միջոցառումներ։ Կոմունիստներն ակտիվ մասնակցում են դրան։ Ղարաքիլիսայի սովխոզի կուսկազմակերպության ժողովում, օրինակ, անցած տարվա մարտին, ՀԿԿ XXV համագումարի արդյունքները քննարկելիս, որոշվեց կառուցել տիպային կովանոցներ, բարելավել անասունների ավտոմատ ջրամատակարարումը, անցնել էլեկտրակթին։ Որոշմանը հետևեց գործը. սովխոզը ձեռնարկեց 104 գլխի համար տիպային կովանոցի կառուցումը։

## ԱՌԱՏՈՒԹՅԱՆ ՀԻՄՔԸ

ՍՄԿԿ XXIV համագումարում, խոսելով գյուղատնտեսության զարգացման համար կոլտնտեսությունների և սովխոզների ունեցած ռեզերվների մոբիլիզացման անհրաժեշտության մասին, Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ ամենից առաջ պետք է ամրապնդել անասնապահության հիմքը կազմող կերի բազան։ «Կարևոր խնդիր է մնում,— ասաց նա,— մարգագետինների և արոտավայրերի բարելավումն ու ավելի լրիվ օգտագործումը, խոտի, խոտալյուրի և սենաժի, սիլոսի և մյուս հյութալի կերի կուտակման ընդլայնումը, բոլոր կերային կուլտուրաների բերքատվության բարձրացումը» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը, «Հայաստան», 1971 թ., էջ 76)։

Հանրային հոտի կերի բազան ամրապնդելու խնդիրը մշտապես գտնվում է մեր ուշադրության կենտրոնում։ Կալինինոյի շրջանի փորձը ցույց է տվել, որ անասնապահական մթերքների արտադրությունը տատանումներ է տվել կերի կուտակման մակարդակին համապատասխան։ Անցած տարվանից շրջանի կուսկազմակերպությունները և գյուղատնտեսության աշխատողները ձեռնամուխ եղան կերի արտադրության հեռանկարային մի շարք հարցերի լուծմանը։

Առանձին գիտական հիմնավորում չի պահանջվում խոտհարքների և մարգագետինների պահպանումն ու պարարտացումը կազմակերպելու համար։ Մեր անասնապահները սեփական փորձից համոզվել են, որ վաղ գարնանը խոտհարքն արածեցնելը խիստ նվազեցնում է բուսածածկը և ավելացնում այնպիսի բույսերի քանակը, որոնք որպես կեր պիտանի չեն անասունների համար։ Այդ է պատճառը, որ արդեն մի քանի տարի է, ինչ մեր բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում գարնանը հրաժարվում են խոտհարքներն արածեցնելու վնասակար պրակտիկայից։ Դա նկատելի դրական ազդեցություն է թողնում բերքատվության և խոտի որակի վրա։ Այս տեսակետից մեծ արդյունք է տալիս նաև խոտհարքների պարարտացումը ձնածածկույթի կամ ձնհալի ժամանակ։ Վերջին երեք տարում շրջանի տնտեսությունները արոտավայրերի և մարգագետինների պարարտացման համար օգտագործել են 2262 տոննա ազոտական, 3096 տոննա ֆոսֆորական և 70700 տոննա տեղական պարարտանյութեր։ Ինչպես պիտի սպասվեր, արդյունքը գոհացուցիչ եղավ։

Կասկածից վեր է, որ անասնապահության զարգացման ասպարեզում միայն խոտով ու սիլոսով առաջ չես գնա։ Հարկավոր է Միության առաջավոր տնտեսությունների օրինակով ներդնել նոր կերատեսակներ, որոնել ու հայտաբերել նոր հնարավորություններ ու ռեզերվներ։ Այս տեսակետից շրջանի տնտեսությունները շոշափելի գործ են կատարել։ Հեռանկարային նշանակություն ունեն վերջին տարիներս արմատավորված վիտամինային խոտալյուրն ու սենաժը, որոնցից համապատասխանաբար անցած տարի պատրաստել ենք 700 և 900 տոննա, կատարել մեր առաջադրանքները։ Արդեն արտադրական փորձերով ապացուցված է կերի արմատապտուղների տնտեսական արդյունա-



վետությունը։ Մասնավորապես կաթի արտադրության ավելացման գործում վճռական դեր են խաղում կիսաշաքարային կերի ճակնդեղն ու գոնգեղ-կուուզիկուն, որոնցից կոլտնտեսություններն ու սովխոզները լավ բերք են ստանում։

Կերի բազայի ամրապնդման ասպարեզում մեր ծավալած գործունեությունը հիմք է տալիս վստահորեն ենթադրելու, որ շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները պատվով կկատարեն անասնապահության զարգացման իններորդ հնգամյակի խնդիրները։

## ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ՎԵՐԵԼՔԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Գյուղատնտեսության համախառն արտադրանքը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, 20—25 տոկոսով ավելացնելու վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրները մեր շրջանի համար միանգամայն ռեալ են և իրագործելի։ Կոլտնտեսությունների և սովխոզների հնարավորությունների ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ, Միության առաջավոր տնտեսությունների փորձն ուսումնասիրելով ու արմատավորելով, գյուղատնտեսական մթերքների արտադրության գործում կարելի է ապահովել մեծ առաջընթաց։ Մեզ համար կարևոր նշանակություն կունենա հողերի ջրարբիացման պատշաճ կազմակերպումը։ Կոլտնտեսություններն ու սովխոզները ներկայումս հնձում են 14000 հեկտար բնական խոտհարք, ամեն հեկտարից ստանալով 13 ցենտներ խոտ, այն դեպքում, երբ առանձին հողակտորներ, մեկ անգամ ջրելիս, տալիս են 30—40 ցենտներ խոտ կամ 300—350 ցենտներ կանաչ զանգված։ Հետևապես, ջրարբիացումը, որը պահանջում է ոչ շատ կապիտալ ներդրումներ, հնարավորություն կտա լրացուցիչ կուտակել ավելի քան 20—25 հազար տոննա խոտ կամ 50 հազար տոննա սիլոս։

Միության առաջավոր տնտեսություններում, որտեղ արոտավայրերը կուլտուրական տեսք ունեն և օգտագործվում են ցանկապատային արածեցման եղանակով, բուսածածկն այնքան առատ է լինում, որ մեկ հեկտարի վրա հնարավոր է պահել 3—4 կով։ Մինչդեռ հակառակ պարագայում հեկտարին մեկ կովից էլ պակաս է ընկնում։ Մենք մտադիր ենք Լոռվա տոհմաբուծարանում, Կալինինոյի և Իլմազլուի սովխոզներում իրականացնել կուլտուրական արոտի (ցանկապատային արածեցման) սիստեմ՝ ավելի քան 2000 գլուխ կովի համար։ Դա ենթադրում է ստեղծել ջրամատակարարման, ջրարբիացման ու արհեստական անձրևացման հարմարություններ, կառուցել մեքենայական կթի հրապարակներ, պարարտացման ու ցանքի միջոցով փոխել բուսածածկը։

Ամառային արոտավայրերը մեզ մոտ վճռական նշանակություն ունեն 4—5 ամիս անասնապահական էժան մթերքներ ստանալու համար։ Պիտի խոստովանել, որ մեր շրջանի հսկայական հնարավորությունները մինչև այժմ խիստ անբավարար են ուսումնասիրվել և օգտագործվել։ Կոլտնտեսությունների ու սովխոզների արոտավայրերը հիմնականում գտնվում են Մթին կամ Խոնավ և Ջավախեթի լեռներում։ Լեռնալանջերի բազմաթիվ լճակների ու ակնաղբյուրների ջրերը անձրևացման եղանակով խելացի օգտագործելով, ամենանվազագույն հաշվումներով կարելի է ջրարբիացնել 7—8 հազար հեկտար արոտավայր։ Դա հնարավորություն կտա 20—24 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն (հիմնականում կովեր), լիուլի ապահովել առատ կերով, իսկ մնացած անասնագլխաքանակը պահել ավելի բարձրադիր վայրերում և ստանալ անհամեմատ մեծ արդյունք։ Հիշյալ 8 հազար հեկտար արոտավայրը և նույնքան խոտհարք ու վարելահող ոռոգելի դարձնելու և ջրարբիացնելու դեպքում հնարավոր կլինի կովերի գլխաքանակը հասցնել 15 հազարի, միջին կաթնատվությունը՝ 3000 կիլոգրամի կամ շրջանում տարեկան արտադրել ավելի քան 40 հազար տոննա կաթ, այժմյան 20 հազարի փոխարեն։ Համապատասխանաբար կավելացվի նաև մյուս մթերքների արտադրությունը։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, ՍՄԿԿ XXIV համագումարի արդյունքները քննարկելիս, ծանր ու թեթև են արել մեր տնտեսությունների համար կենսական նշանակություն ունեցող հարցերը և գտել,

որ դրանք կարելի է լուծել մոտակա տարիներին։ Առաջին լուրջ քայլերն արդեն արվում են. կառուցվում են Կաթնաղբյուր—Կալինինո ջրման սիստեմը։ Դրա ավարտից հետո կջրարբիացվեն Սարատովկա, Նովոսելցովո, Բլագոդարնոյե գյուղերի կոլտնտեսությունների, Կալինինոյի ու Իլմազլուի սովխոզների և Լոռվա տոհմաբուծարանի ավելի քան 13 հազար հեկտար արոտավայր ու մարգագետին։ Մեր հեռանկարային խնդիրների մեջ մտնում է Հովդարայի տեղամասում Սև ջուր գետակի վրա (Լոռվա տոհմաբուծարանի մոտ) ջրապաշտպան պատնեշի կառուցումը, որը հնարավորություն կընձեռի ջրովի դարձնել կամ արհեստական անձրևացման ու մակերեսային ոռոգման ենթարկել ավելի քան 12 հազար հեկտար մարգագետին, արոտավայր ու վարելահող։

Անժխտելի է սեփական արտադրության կերով ապահովվածության նշանակությունը անասնապահական մթերքների ինքնարժեքի իջեցման գործում։ Մեր շրջանի տնտեսություններն ամեն տարի պետությունից գնում են 6—7 հազար տոննա խտացրած կեր, մինչդեռ մենք հնարավորություն ունենք այն պատրաստել սեփական ուժերով։ Շրջանում տարեկան ամբարվում է 5—6 հազար տոննա հացահատիկ։ Դրանից 4 հազարը կարող ենք վերածել խտացրած կերի։ Նախատեսել ենք մի շարք տնտեսությունների համար ձեռք բերել ագրեգատներ և, 1972 թվականից սկսած, տեղում պատրաստել ավելի քան 3—4 հազար տոննա խտացրած կեր։ Հումքի ապահովմանը մեծապես կնպաստի 1968 թ. Կրասնոդարի երկրամասից ներմուծված ածեր սորտի գարու լայն արմատավորումը։ Այն հեկտարից մեզ մոտ տալիս է 50 ցենտներ բերք և այս տարի կզբաղեցնի 500—600 հեկտար։

Կերի բազայի ամրապնդման գործում վճռական դեր կխաղան նաև կիսաշաքարային ճակնդեղի և ցոնգեղ-կուուզիկուի ցանքատարածությունների զգալի ընդարձակումը և մեծ հաջողությամբ ներդրված նոր կերատեսակների՝ վիտամինային խոտալյուրի ու սենաժի արտադրության նշանակալի ավելացումը։

Գյուղատնտեսության ապագան որոշող խնդիրները պատշաճ տեղ են գրավում նաև մեր շրջանի հեռանկարային պլաններում։ Կուսշրջկոմը, Կալինինոյի ու Շահնազարի սովխոզների և Լոռվա տոհմաբուծարանի սկզբնական կուսկազմակերպությունները հիմնավորված հարցեր են բարձրացրել այդ տնտեսություններում կաթի արտադրության կոմպլեքսներ ստեղծելու համար։ Այդ խնդրի լուծումը առաջընթաց խոշոր քայլ կլինի անասնապահության վարման կուլտուրան բարձրացնելու, կաթի արտադրությունը մեծ չափերով ավելացնելու և նրա ինքնարժեքն իջեցնելու գործում։ Կաթնային համալիր ստեղծելու ցանկություն են արտահայտել նաև Նորաշենի կոլտնտեսության վարչությունն ու կուսկազմակերպությունը։

Անասնապահությունը գիտականորեն վարելու գործում կարևոր նշանակություն ունի սեփական արտադրության և գնովի կերի կերարժեքն իմանալու հարցը։ Ցավոք, նախկինում մեզ մոտ ոչ մի կերատեսակ լաբորատոր վերլուծության չէր ենթարկվում, նախապես չէր իմացվում, թե որոշակի քանակությամբ խոտով ու սիլոսով և այլ կերով կերակրելիս որքան կերամիավոր է ծախսվում։ Այդ պատճառով անհնար էր հիմնավորել ու որոշել դրանց արդյունավետության աստիճանը։ Մեզ հաջողվեց վերացնել այդ բացը։ Կուսշրջկոմի նախաձեռնությամբ Լոռվա փորձարարական կայանում ստեղծվեց կերարժեքի ստուգման լաբորատորիա, որի գործունեությունը լայն հեռանկարներ է բացում հանրային հոտի կերակրումը բարելավելու և, առհասարակ, կերի օգտագործումը գիտականորեն կազմակերպելու համար։ Լաբորատորիան գործելու է պայմանագրային կարգով և հնարավորություն է ունենալու վերլուծել կոշտ ու հյութալի բոլոր կերատեսակները, այդ թվում խտացրածն ու տնտեսությունների հատիկաֆուրաժը։

Իններորդ հնգամյակի խնդիրները լուծելու ճանապարհին առաջին և լուրջ քայլերն ենք արել. դրանք հույս են ներշնչում, որ լավ սկիզբը կարևոր նախադրյալ կլինի անասնապահության հետագա հզոր վերելքի համար։

# ՈՒՍԱՆՈՂՆԵՐԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԿՈՓՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

Երիտասարդ սերնդի գաղափարական կոփվածության պրոբլեմը եղել ու մնում է մեր կուսակցության ամենակարևոր և հրատապ խնդիրներից մեկը։ Բնորոշ է, որ ՍՄԿԿ XXIV համագումարն այնքան խորությամբ անդրադարձավ երիտասարդ սերնդի դաստիարակության, նոր մարդու ձևավորման հարցերին։ Հիրավի, խոր և բազմաբովանդակ են համագումարի առաջադրած այն խնդիրները, որոնք անմիջականորեն վերաբերում են բարձրագույն ուսումնական հաստատություններին և որոնց կենսագործմամբ են պայմանավորված ապագա երիտասարդ բարձրորակ մասնագետների պատրաստումը, նրանց քաղաքական դաստիարակությունը և գաղափարական կոփվածության բարելավումը։

Ուսանող երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը ժամանակակից պայմաններում ստացել է բացառիկ մեծ կարևորություն։ ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերում, ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Հասարակական գիտությունների հետագա զարգացման և կոմունիստական շինարարության ասպարեզում նրանց դերի բարձրացման միջոցառումների մասին» որոշման մեջ և կուսակցական այլ փաստաթղթերում ընդգծվում են բարձրագույն ուսումնական հաստատությունների կուսկազմակերպությունների գլխավոր խնդիրները՝ ուսանողության, որպես կոմունիզմի ակտիվ կառուցողի, կոմունիստական աշխարհայացքի, քաղաքական և բարոյական բարձր հատկանիշների ձևավորման, նրանց մարքս-լենինյան գաղափարներով, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում։ Այս ամենի անհրաժեշտությունը մեկ անգամ ևս ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը ուսանողների համամիութենական հավաքում արտասանած իր ճառում։ «Մասնագիտությունը,— ասաց նա, — ստեղծագործաբար յուրացնել, մեր կոմունիստական շինարարության ակտիվ մասնակիցը, մասսաների մեջ կուսակցության քաղաքականության կիրառողը դառնալ կարելի է մարքս-լենինյան տեսությանը տիրապետելով միայն։ Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը ամեն մի պրոֆիլի մասնագետի գիտելիքների հիմքն է, անկապտելի բաղկացուցիչ մասը։

Մարքսիզմ-լենինիզմին, պրոլետարական ինտերնացիոնալիզմին հավատարմությունը մեր կուսակցության, մեր կոմերիտմիության ազնիվ ավանդույթն է և դրա համակողմանի ամրապնդումն ու հարստացումը բարձրագույն դպրոցի կոչումն է» («Սովետական Հայաստան» օրաթերթ, 1971, 20 հոկտեմբերի, № 244)։

Հասարակության անդամների ստեղծագործական ակտիվության բարձրացումը, աշխատանքի կոմունիստական ձևերի ու մարդկանց կոմունիստական նոր հարաբերությունների ձևավորումը, կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման վիթխարի խնդիրների հաջող լուծումը, մեծապես պայմանավորված են սոցիալիստական հասարակարգի մարդու գիտակցության աստիճանով։ Այդ տեսակետից ուսանող երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության, նրանց գաղափարական կոփվածության հարցերը բուհական կուսկազմակերպությունների գործունեության ամենակարևոր խնդիրներից են։

Անդրադառնալով երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակությանը, նրանց գաղափարական կոփվածությանը՝ Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում Կենտկոմի հաշվետվության մեջ նշել է, որ անհրաժեշտ է ուժեղացնել մեր ամբողջ գաղափարական աշխատանքը և ամենից առաջ ավելի ակտիվ, արդյունավետ դարձնել կոմունիստական իդեալների, մեր շինարարության կոնկրետ խնդիրների պրոպագանդումը։ Ինչպես հարկն է, պետք է կարողանալ աշխատավորության հոծ զանգվածներին լիակատար չափով հաղորդել մեր գաղափարական համոզվածության ամբողջ ուժը, ստեղծագործաբար մոտենալ սովետական մարդու կոմունիստական դաստիարակության գործին։ Ահա թե ինչու մեր կուսակցությունն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում նոր սերնդի գաղափարական կոփվածությանը՝ այն դիտելով համակուսակցական գործ։

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության ասպարեզում լուրջ ու պատասխանատու խնդիրներ են դրված բուհերի ղեկավարության, կուսկազմակերպությունների առջև։ Մեր ինստիտուտի կուսկազմակերպությունն իր գաղափարական-դաստիարակչական ամբողջ գործունեության հիմնական նպատակը դարձրել է ուսանողության կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը, նրանց դաստիարակումը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, ուսման և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով։

Հայտնի է, թե ՍՄԿԿ XXIV համագումարը որքան մեծ տեղ հատկացրեց բուհական կուսկազմակերպությունների ազդեցության և դերի բարձրացման հարցերին, իսկ վերջերս կայացած գերազանցիկ ուսանողների համամիութենական հավաքում արտասանած իր ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը բուհի կուսկազմակերպությունը բնութագրեց որպես տվյալ կոլեկտիվի քաղաքական ավանգարդ, իսկ կուսկոմիտեն՝ նրա մարտական շտաբը։ «Բուհական կուսակցական կազմակերպություններին,— ասաց ընկ. Բրեժնևը,— բուհերի ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքներ տալու կապակցությամբ աճում է նրանց դերը բարձրագույն դպրոցի բովանդակ կյանքում։ Կուսակցական կազմակերպությունների տեսադաշտից դուրս չպետք է մնա բարձրագույն ուսումնական հաստատության աշխատանքի և ոչ մի սկզբունքային հարց»։

Ահա թե ինչու մեր ինստիտուտի կուսկազմակերպությունը վերակառուցել ու վերակառուցում է իր գործունեությունը, նրան տալիս նոր որակ ու բովանդակություն, կուսակցության քաղաքականությունն իրականացնելու ճանապարհին հանդես գալիս առաջամարտիկի դերում և իր ձեռքն է վերցնում երիտասարդության կոմունիստական դաստիարակության, նոր մարդու ձևավոր-



ման բարդ ու պատասխանատու գործը։ Գաղտնիք չէ, որ երիտասարդ սերնդի ուսուցման և դաստիարակության հաջողությունները, առաջին հերթին, պայմանավորված են նրանով, թե որքանով կհաջողվի ուսուցման և դաստիարակության ձևերն ու մեթոդները ներդաշնակել կյանքի օրավուր աճող պահանջմունքներին, որքան հետաքրքրական կլինեն ուսանողության համար կազմակերպվող դաստիարակչական միջոցառումները, որքան խոր բովանդակություն կունենան դրանք։

Երիտասարդության հետ տարվող քաղաքական-գաղափարական աշխատանքը չի հանդուրժում քարացած ու շաբլոն միջոցառումներ, որոնք շատ դեպքերում տալիս են անցանկալի արդյունք։ Ուսանող երիտասարդությունը, ի տարբերություն բնակչության մյուս խավերի, չունի կյանքի բավականաչափ փորձ, նա իր ուսերի վրա չի տարել այն դժվարությունները, որոնց ականատես ու մասնակից են եղել նախորդ սերունդները։ Նա հեղափոխության ձեռք բերած նվաճումները ստացել է պատրաստի վիճակում։ Սակայն այժմյան երիտասարդությունն այն չէ, ինչ տասնամյակներ առաջ էր։ Նա ժամանակակիցն ու ականատեսն է մեր դարի գիտա-տեխնիկական նվաճումների, գիտական խոշոր հայտնագործությունների և, նախորդի փորձը սեփականացրած՝ իր մտորումներով ու խոհերով քայլում է կյանքին համընթաց, որի հետ օրավուր լայնանում են նաև նրա գիտական ու կուլտուրական հետաքրքրությունների ու պահանջմունքի շրջանակները։ Նրա մոտ ավելի շատ է նորի զգացումը, նա յուրովի է ընկալում կյանքի երևույթները, փորձում է սեփական ձևով մեկնաբանել ներքին և արտաքին զարգացման բազմաթիվ հարցեր։

Ահա թե ինչու մենք ուսանողության շրջանում տարվող գաղափարական-քաղաքական աշխատանքի կազմակերպման ժամանակ հաշվի ենք առնում ինչպես այդ ամենը, նույնպես և նրա տարիքային տարբերությունները, ռոմանտիկ ձգտումները, շրջապատի երևույթներն ընկալելու և մեկնաբանելու նրա առանձնահատկությունները և բազմաթիվ այլ հանգամանքներ։ Ընդ որում, մենք առաջին պլան ենք մղում երիտասարդության հետ տարվող դաստիարակչական աշխատանքի ստեղծագործական կողմը։

Վերջին շրջանում ոչ միայն զգալիորեն բարձրացել է մեր ինստիտուտի սկզբնական կուսկազմակերպությունների, կոմունիստների պատասխանատվությունն ուսանողների գաղափարական դաստիարակության գործում, այլև դրսևորվել են քաղաքական աշխատանքի կազմակերպման նոր ձևեր ու մեթոդներ, որոնք արդեն տալիս են իրենց ցանկալի արդյունքը։ Ուսանող երիտասարդության ուսուցման և կոմունիստական դաստիարակության, նրանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման գործում մենք բարձրացնում ենք հասարակագիտական առարկաների, գիտական հագեցվածությամբ դասախոսությունների, արդյունավետ սեմինար-պարապմունքների, ուսանողների ինքնուրույն ռեֆերատների և զեկուցումների դերը։ Կուսկոմիտեն և կուսկազմակերպությունները միաժամանակ մեծ տեղ են հատկացնում ուսանողության համար կազմակերպվող զեկուցումներին, հարց ու պատասխանի երեկոներին, տեսական սեմինարներին, քաղինֆորմացիաներին և այլ միջոցառումներին։

Փորձը ցույց է տվել, որ ուսանողության միջավայրում մեծ հետաքրքրություն են առաջացնում մասսայական պրոպագանդայի այնպիսի ձևեր, ինչպիսիք են բանավեճերը, տեսական կոնֆերանսները, լենինյան համալսարաններն ու ընթերցումները և այլն։ Այդ տեսակետից բնորոշ է վերջին շրջանում ինս-

տիտուտում ստեղծված «ՀամԼԿԵՄ և միջազգային երիտասարդական շարժման պատմությունն ուսումնասիրող կոմերիտական համալսարանը», որին ունկնդրում են շուրջ 100 կոմերիտական ակտիվիստներ և երիտասարդ կոմունիստներ։ Համալսարանին մեծ օգնություն են ցույց տալիս ինստիտուտի հասարակագիտական ամբիոնները, որոնց հետ համատեղ կազմվում է համալսարանի գործունեության տարեկան պլանը։

Համալսարանի նպատակն է ուսանող երիտասարդությանը հաղորդակից դարձնել անցյալի և ժամանակակից երիտասարդության հարուստ փորձին, հերոսական սխրանքներին, օգնել նրանց՝ յուրացնելու անցյալի ժառանգության լավագույն ավանդները։ Որոշակի պլանավորված դեկուցումները և զրույցներն ուղեկցվում են վավերագրական-փաստագրական և գեղարվեստական կինոժապավենների ցուցադրումով՝ կապված ՀամԼԿԵՄ պատմության և միջազգային երիտասարդական շարժման կարևոր իրադարձությունների ու այժմեական պրոբլեմների հետ։

Այս տարի համալսարանի ուսումնական պլանում մեծ տեղ է հատկացված ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի և որոշումների ուսումնասիրությանը և պրոպագանդմանը։ Ինստիտուտի կուսկոմիտեն, ռեկտորատը և հասարակական կազմակերպությունները համատեղ մշակել են բոլոր օղակներում ուսանողության հետ տարվող դաստիարակչական աշխատանքի կոնկրետ ու բազմակողմանի ծրագրերը, ուր հաշվի են առնված ուսանողների բազմաբովանդակ կյանքի տարբեր կողմերը, նրանց հուզող բազմազան հարցեր։ Աշխատանքային մեր պրակտիկայում չթերագնահատելով համաինստիտուտային միջոցառումների նշանակությունը՝ մենք գաղափարական աշխատանքը փոխադրել ենք ստորին օղակները՝ կուրսերը, ելնելով այն հանգամանքից, որ այս դեպքում ավելի լայն հնարավորություններ են ստեղծվում մոտիկից շփվելու ուսանողների հետ, ճանաչելու նրանց, հասկանալու նրանց հակումները, ձգտումներն ու ներաշխարհը։ Եվ միայն համաինստիտուտային և ստորին օղակներում կազմակերպվող միջոցառումների ներդաշնակության պայմաններում, մեր կարծիքով, ուսանողության շրջանում տարվող գաղափարական աշխատանքը կարող է տալ իր ցանկալի արդյունքը։

Մեր կուսկազմակերպություններում տարիներ շարունակ լավագույն ավանդույթ է դարձել առանձին կուրսերի շեֆությունը հանձնել քաղաքականապես պատրաստված և հասուն, մանկավարժական հարուստ փորձ ունեցող կոմունիստ դասախոսների, որոնցից շատ-շատերը շնորհակալ գործ են կատարում ուսանողության շրջանում, հանդես գալիս խորհրդատուի դերում, ապրում նրա հաջողություններով, կիսում դժվարությունները։ Շեֆ դասախոսներն ունեն աշխատանքի կոնկրետ պլան, նրանք ճանաչում են յուրաքանչյուր ուսանողի, կազմակերպում էքսկուրսիաներ ինչպես մեր հանրապետությունում, այնպես էլ նրա սահմաններից դուրս, նրա համար պայմաններ ստեղծում սեփական աչքերով տեսնելու և գնահատելու այն վիթխարի նվաճումները, որոնք ձեռք են բերվել մեծ Հոկտեմբերի շնորհիվ։ Կուրսերի ղեկավար կոմունիստները զբաղվում են ուսանողի առաջադիմության, գաղափարական դաստիարակության, կենցաղի, կուլտուրական հանգստի կազմակերպման հարցերով։ Նրանց ջանքերով կազմակերպվում են երեկոներ, հանդեսներ, կոլեկտիվ դիտումներ, հանդիպումներ գիտության և մշակույթի ճանաչված ներկայացուցիչների հետ, քննարկվում են գրողների ստեղծագործություններ, լսվում դե-



կուցումներ, զրույցներ՝ տվյալ խմբի ուսանողների պահանջմունքներին, հակումներին ու ձգտումներին համապատասխան։ Ստորին օղակներում՝ կուրսերում, կազմակերպված աշխատանքի այս մեթոդը հնարավորություն է տալիս ինստիտուտի ուսանողությանը ներգրավելու գաղափարական-դաստիարակչության ոլորտը և որոշակիորեն ուժեղացնելու դասախոսական կոլեկտիվի անմիջական և գործուն ազդեցությունը նրա վրա։

Ֆակուլտետների կուսկազմակերպությունները և նրանց բյուրոները, ինչպես նաև ինստիտուտի կուսկոմիտեն հաճախ են լսում կոմունիստ կուրսղեկների ինքնահաշվետվությունը, մասսայականացնում նրանցից լավագույնների աշխատանքային դրական փորձը։ Այս առումով կարևոր է ընթերցողների ուշադրությունը հրավիրել ինստիտուտի լավագույն կոմունիստ կուրսղեկներից մեկի՝ քաղաքատնտեսության ամբիոնի վարիչ Վ. Աղուզումցյանի լավագույն աշխատանքի վրա։

Անցյալ ուսումնական տարում պատմա-աշխարհագրական ֆակուլտետի պատմության և պիոներական աշխատանքի մեթոդիկայի բաժնի երրորդ կուրսում ուսման առաջադիմությունը չափազանց ցածր էր։ Ֆակուլտետի կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների բյուրոները բազմիցս անդրադարձան կուրսի առաջադիմության հարցին։ Կուսկազմակերպության որոշմամբ կուրսի ղեկավար նշանակվեց դոցենտ Վ. Աղուզումցյանը։ Նրա բարեխղճությունը և մեծ ջանքերը ցանկալի արդյունք տվեցին։ Կուրսը ուսումնական տարին ավարտեց բարձր առաջադիմությամբ։

Ի դեպ, անհրաժեշտ է հիշատակել, որ ֆակուլտետային կուսկազմակերպությունների ժողովներում և ինստիտուտի կուսկոմիտեում բազմիցս քննարկվել են ուսանողության կոմունիստական դաստիարակության հետ կապված հարցեր, մասնավորապես հանրագումարի է բերվել կուրսերին ամրացված կոմունիստ դասախոսների դրական փորձը, բացահայտվել են մեր աշխատանքի թերությունները և նշվել գործնական միջոցներ դրանց վերացման համար։

Գաղափարական-դաստիարակչական աշխատանքի ամենակարևոր օղակներից մեկը երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակությունն է։ Սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ դաստիարակության, նրանց եղբայրական բարեկամության հետագա ամրապնդման խնդիրները միշտ գտնվել են մեր կուսակցության մշտական ուշադրության կենտրոնում։ ՍՄԿԿ XXIV համագումարը պահանջեց անշեղորեն իրականացնել լենինյան ազգային քաղաքականությունը, սովետական ժողովրդին դաստիարակել սոցիալիստական հայրենասիրության ոգով, հարգանքով վերաբերվել մեր երկրի բազմազգ ժողովուրդների ազգային լավագույն սովորույթներին, անհաշտ պայքար ծավալել նացիոնալիզմի և շովինիզմի ամեն տեսակի դրսևորումների դեմ։ Գործողության ուղեցույց ունենալով կուսակցության այս պահանջը՝ մեր կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները առանձնահատուկ ուշադրություն են նվիրում ուսանողության ինտերնացիոնալ դաստիարակությանը։

Մեր ինստիտուտն իր կազմով ինտերնացիոնալ է։ Այստեղ գործում են հայկական, ռուսական և ադրբեջանական բաժիններ, ուր կողք-կողքի սովորում են մեր Միության ավելի քան 10 ազգությունների ներկայացուցիչներ։ Մեր հանրապետությունում և նրա սահմաններից դուրս լայն ճանաչում է գտել ինստիտուտում գործող «Բարեկամության ակումբը», որը կենդանի շփման և մերձեցման լայն հնարավորություններ է ստեղծում մեր լայնածավալ հայրե-

նիքի ուսանող երիտասարդության հետ։ Արդեն սովորույթ են դարձել ակումբի կողմից կազմակերպվող բարեկամության շաբաթները, շրջիկ գեղանկարչական և գրաֆիկական ցուցահանդեսները, գեղարվեստական ինքնագործունեության խմբերի համերգային շրջագայությունները, սպորտային, ուսանողական գիտական ընկերության բազմաթիվ միջոցառումների կազմակերպումը։

Մեծ շուքով և հանդիսավորությամբ անցկացվեց Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված «Բարեկամության շաբաթի» հերթական հավաքը, որին մասնակցեցին Միության խոշոր մանկավարժական բուհերի և ժողովրդական դեմոկրատական երկրների ուսանողության ներկայացուցիչները, Վ. Ի. Լենինի տեսական ժառանգությանը նվիրված ուսանողական գիտական նստաշրջանը, ուր գիտական զեկուցումներով հանդես եկան ՍՍՀՄ տարբեր հանրապետությունների, այդ թվում Կազանի և Ուլյանովսկի ուսանողության ներկայացուցիչները։ Ինստիտուտում բացվեց «Լենինյան վայրերում» գեղանկարի և գունանկարի ցուցահանդես, ուր ցուցադրվեցին մեր ուսանողության ուժերով Ուլյանովսկում, Կազանում, Լենինգրադում, Մոսկվայում վրձնած նկարները։ Բարեկամության այդ շաբաթը վերածվեց սովետական բազմազգ ժողովուրդների ուսանող-երիտասարդության ինտերնացիոնալ բարեկամության վառ ցույցի։

Ուսանող երիտասարդության քաղաքական ակտիվության բարձրացման գործում կուսկոմիտեն մեծ տեղ է հատկացնում ցուցադրական ագիտացիային, որի արդյունավետ կազմակերպումն օգնում է ամեն մի ուսանողի ճիշտ կողմնորոշվելու իր գործունեության մեջ։ Այդ տեսակետից բնորոշ է լենինյան ստուգարքի գրականության, ՍՄԿԿ համագումարի նյութերի, ժողովրդական տնտեսության նվաճումների և զարգացման հեռանկարների, ՀԼԿԵՄ 50-ամյակին նվիրված ցուցահանդեսների ու ցուցափեղկերի կազմակերպումը։

Ինստիտուտի կուսկազմակերպությունը մշտապես հոգ է տանում նաև ուսանող երիտասարդության էսթետիկական դաստիարակության մասին։ Մեզ համար հիմնական ելակետ է այն, որ ապագա մանկավարժը պետք է օժտված լինի գեղագիտական բարձր ճաշակով, ունենա սեր գրականության և արվեստի նկատմամբ, լինի բազմակողմանիորեն զարգացած։ Այս նպատակով ֆակուլտետներում հաճախակի են կազմակերպվում զեկուցումներ, զրույցներ, հանդիպումներ գիտության և մշակույթի լավագույն ներկայացուցիչների հետ։ Մասնավորապես վերջին շրջանում ավելի են ակտիվացել ինքնագործ խմբերը բոլոր ֆակուլտետներում։ Ինստիտուտի բանասիրական ֆակուլտետում գործում է նաև գրական ստուդիա, որի շարքերից դուրս են եկել հանրապետության ճանաչված գրողներ ու բանաստեղծներ։ Ստուդիան իր շարքերում միավորում է մի քանի տասնյակ երիտասարդներ։ Ստուդիայի հերթական պարապմունքներում քննարկվում են ժամանակակից գրականության հուզող խնդիրներ, սկսնակ գրողների ստեղծագործություններ՝ սովետահայ անվանի գրողների մասնակցությամբ։

Ուսանողների գաղափարական կոփվածությունն ապահովելու տեսանկյունից մեզ մոտ հատուկ կարևորություն է տրվում աշխատանքային դաստիարակությանը։ Մասնավորապես մանկավարժական աշխատանքը պահանջում է հատուկ սեր մասնագիտության, մատաղ սերնդի կրթության ու դաստիարակության նկատմամբ։ Այս հարցում մեր կուսկազմակերպությունը ելնում է այն պարզ ճշմարտությունից, որ հայկական մանկավարժական ինստիտուտը համարվում է մեր հանրապետության մանկավարժական կադրերի պատրաստման հիմնական դարբնոց և մեզնից շատ բան է կախված նոր սերնդի դաստիարակության գործը հավուր պատշաճի կազմակերպելու համար։ Վաղվա մատաղ սերնդի կրթության ու դաստիարակության բախտը հանրապետությունում մեծապես պայմանավորված է մեր ինստիտուտի այսօրվա հաջողությամբ, քանի որ հենց բուհի պատերի ներսում կրթվում ու դաստիարակվում են ժամանակակից սերնդի դաստիարակները։

Ինստիտուտի դասախոսական կոլեկտիվը խորապես գիտակցում է այդ ամենի ամբողջ կարևորությունը և, դեռ առաջին կուրսից սկսած, սեր է պատվաստում ուսանողների մեջ իրենց ապագա մասնագիտության նկատմամբ։ Դրա հիմքը դրվում է մեծ լուսավորչի՝ Խ. Աբովյանի տուն-թանգարանում հանդիսավոր երդման արարողության կազմակերպմամբ, երբ առաջին կուրսերի հազարից ավելի ուսանողներ, դասախոսական կոլեկտիվի մասնակցությամբ, պատասխանատվության ու պարտքի հաճելի զգացումով տոգորված, հանդիսավոր երդվում են ազնվաբար կիրառել իրենց մասնագիտությունը, բարձր պահել կրթողի ու դաստիարակողի մեծ կոչումը։

Ուսանողների աշխատանքային դաստիարակությունը բարելավելու, ապագա մանկավարժների կապն արտադրության հետ ուժեղացնելու նպատակով՝ ամեն տարի հարյուրավոր ուսանողներ ուղարկվում են պիոներական ճամբարներ։ Դա հնարավորություն է տալիս, որպեսզի ուսանողն ավելի շատ շփվի կյանքի հետ և նախապատրաստի իրեն՝ ապագա աշխատանքային դժվարությունները հաղթահարելու համար։ Ինստիտուտի ուսանողության՝ աշխատանքի նկատմամբ ունեցած բարձր պատասխանատվության մասին է վկայում այն, որ տարիներ շարունակ շինարարական կառույցներ են մեկնում հարյուրավոր կոմերիտականներ և երիտասարդ կոմունիստներ, որոնցից շատ շատերն արժանացել են խրախուսանքի ու բարձր պարգևների։

Թե որքան մեծ տեղ է հատկացվում ուսանողության աշխատանքային դաստիարակությանը մեր կուսակցության և կառավարության կողմից, դա երևում է Լ. Ի. Բրեժնևի՝ ուսանողական համամիութենական հավաքում արտասանած ճառում ուսանողական շինարարական ջոկատներին տված գնահատականից։ Ընկ. Բրեժնևը շինարարական ջոկատները գնահատեց որպես ուսանողության եռանդի, նրա ակտիվության դրսևորման և մոբիլիզացման մի այնպիսի ձև, որը «լիովին համապատասխանում է թե մեր ժամանակի պահանջմունքին և թե երիտասարդության ձգտումներին»։

Ինստիտուտի կուսկոմիտեն իր աշխատանքային պրակտիկայում կարևոր տեղ է հատկացնում նաև ուսանողության ֆիզիկական և ռազմա-հայրենասիրական դաստիարակությանը։ Բավական է ասել, որ ինստիտուտում սպորտի տարբեր ձևերի մեջ ընդգրկված են 800-ից ավելի ուսանողներ, պարբերաբար կազմակերպվում են սպորտային պատվիրակությունների փոխադարձ այցելություններ, անցկացվում սպորտային հետաքրքրական միջոցառումներ։ Մեզ մոտ սովորույթ է դարձել ուսանողների հանդիպումները գեներալների, քաղաքացիական և Հայրենական պատերազմի մասնակիցների հետ, համերգների ու երեկոների կազմակերպումը զորամասերում և այլն։ Ուսանողության շրջանում տարվող գաղափարա-դաստիարակչական աշխատանքը կազմակերպելիս՝ ինստիտուտի կուսկոմիտեն ավելի է բարձրացնում հասարակագիտական ամբիոնների դերը, որոնք մշակում և իրագործում են բազմապիսի միջոց-

առումներ: Ամբիոնների նախաձեռնությամբ կազմակերպվում են հանդիպումներ երեկոներ արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորների, հեղափոխության վետերանների հետ, էքսկուրսիաներ արդյունաբերական ձեռնարկություններն ու գիտության օջախները: Նախատեսվում է և առաջիկայում կանցկացվի «ՍՄԿԿ XXIV համագումարի գաղափարներով» ուսանողական տեսական արտահերթ կոնֆերանսը և այլն:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի՝ «Հասարակական գիտությունների զարգացման և կոմունիստական շինարարության ասպարեզում նրանց դերի բարձրացման միջոցառումների մասին» և Հայկոմկուսի Կենտկոմի համապատասխան որոշումների լույսի տակ ինստիտուտի կուսկոմիտեն հաճախ է անդրադառնում հասարակական գիտությունների դասավանդման հետագա բարելավման, հասարակական գիտությունների բնագավառում երիտասարդ գիտական կադրեր աճեցնելու հարցերին:

Կյանքը, գիտատեխնիկական պրոգրեսն ամեն օր առաջադրում են նորանոր խնդիրներ, այլև պահանջում աշխատանքի ավելի կատարելագործված մեթոդներ ու ձևեր: Ահա թե ինչու մեր ինստիտուտի կուսկազմակերպությունն իր հիմնական խնդիրն է համարում՝ ապահովել կոլեկտիվի նկատմամբ իր ավանգարդային դերը, բարձրացնել յուրաքանչյուր կոմունիստի ստեղծագործական ակտիվությունը, ուսանողության կոմունիստական դաստիարակությունը կազմակերպել կուսակցության ժամանակակից պահանջների ոգով, ամեն ինչ անել նոր մարդու ձևավորման մեծ ու պատասխանատու խնդիրը ճիշտ լուծելու, նրա քաղաքական-գաղափարական կոփվածության գործն ամուր հիմքերի վրա դնելու համար:

Ռ. Վ. ՇԱՀԻՆՅԱՆ
Հայկական մանկավարժական ինստիտուտի կուսկոմիտեի քարտուղար



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԻ ԱՃԸ

ՍՄԿԿ XXIV համագումարը միահամուռ ու լիովին հավանություն տվեց
ընթացիկ հնգամյակում նախատեսած սոցիալական միջոցառումների լայն
ծրագրին, որի նպատակն է՝ բարձրացնել բնակչության բոլոր շերտերի
բարեկեցությունը, մերձեցնել քաղաքային և գյուղական բնակչության կենսամակարդակները, ստեղծել առավել նպաստավոր պայմաններ մարդու աշխատանքի և հանգստի, ինչպես և, հասարակության անդամների ունակություն-
ների ու ստեղծագործական ակտիվության բազմակողմանի զարգացման համար:

ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձևում ընդգծվում է, որ սովետական
ժողովրդի բարեկեցության էական բարձրացման կուրսը որոշում է ո՛չ միայն
ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդիրը, այլև երկրի տնտեսական զարգաց-
ման ընդհանուր կողմնորոշումը հեռանկարում:

Ինչպես տեսնում ենք, թե՛ երկրի հզորացած տնտեսական պոտենցիալն
ու ժողովրդական տնտեսության զարգացման պահանջմունքները, թե՛ հասուն
սոցիալիզմի նպատակը հարուցում են բնակչության կենսամակարդակի բարձ-
րացման բազմազան խնդիրներ:

Ժողովրդական տնտեսության զարգացման ընթացիկ հնգամյա պլանը
կոչված է ո՛չ միայն ամրապնդելու ձեռք բերածը, այլև հասնելու նոր, էական
հաջողությունների: Ելնելով հնգամյակի գլխավոր խնդրից, ազգային եկամտի
ընդհանուր ռեսուրսների 80 տոկոսը հատկացվում է սպառման ֆոնդի և բնա-
կարանային-կոմունալ տնտեսության, լուսավորության ու առողջապահության
նյութական բազայի և բնակչությանը սպասարկող մյուս ճյուղերի զարգացմա-
նը: Բնակչության նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման՝
ՍՄԿԿ XXIV համագումարի հաստատած ծրագիրը նախատեսել է.

— ազգային եկամտի բարձր տեմպերով աճի հիման վրա ապահովել
ռեալ եկամուտների հետագա ավելացումը (բնակչության մեկ շնչի հաշվով)
մոտավորապես 30 տոկոսով. Հայկական ՍՍՀ այն կաճի՝ 35—37 տոկոսով.

— ավելացնել աշխատավարձի նվազագույն չափերը, միջին վարձատրը-
վող աշխատողների դրույքներն ու ամսավճարը, բարձրացնել երկրի արևելյան
և հյուսիսային շրջանների աշխատողների աշխատավարձի հավելումները.

— ապահովել հասարակական սպառման ֆոնդերի հետագա աճ, որոնք
պետք է գործարկվեն՝ բազմազավակ և նվազ ապահովված ընտանիքների,
արտադրությունում աշխատող կանանց նյութական դրության հետագա բարե-
լավման, մատաղ սերնդի դաստիարակման, կենսաթոշակների, ինչպես նաև
ուսանողների ուսման թոշակների բարձրացման նպատակով.

— բարելավել բնակչության պահանջմունքների բավարարումն ապրանքներով և ծառայություններով՝ ապրանքային ռեսուրսների նշանակալի ավելացմամբ, շուկան բարձրորակ արդյունաբերական և մթերային ապրանքների անհրաժեշտ ասորտիմենտով հագեցմամբ, բնակչությանն սպասարկող կենցաղային ծառայությունների ծավալմամբ.

— բնակելի տների շինարարության ծավալմամբ և դրանց հարմարավետության բարձրացմամբ հանդերձ, հետագայում կբարելավվեն բնակարանային պայմանները, քաղաքների ու բանվորական ավանների սանիտարական վիճակը.

— ժողովրդական կրթության հետագա զարգացումն արտահայտվելու է՝ բնակչության հանրակրթական մակարդակի և կադրերի պատրաստման որակի բարձրացմամբ, դպրոցներում և երկարօրյա խմբերում սովորողների թվի, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների ընդունելության ավելացմամբ.

— բարելավվելու է քաղաքային և գյուղական բնակչության բուժօգնությունը, ավելի մերձենալու են քաղաքային և գյուղական բնակչության կենսամակարդակները։

Այստեղից հետևում է, որ նոր հնգամյա պլանը ո՛չ միայն երկրի ողջ ժողովրդական տնտեսության հզորացման, այլև սովետական յուրաքանչյուր քաղաքացու բազմակողմանի զարգացման ծրագիրն է։ Իրականում այն շոշափում է բանվորների, ծառայողների, կոլտնտեսականների, մտավորականների, կենսաթոշակառուների, ուսանողների ու երեխաների շահերը։

Բնակչության բարեկեցության բարձրացման գործում կարևորագույն նշանակություն ունեն ազգային եկամտի աճի տեմպերը, քանի որ կենսամակարդակի հիմնական ցուցանիշը՝ ռեալ եկամուտները բնակչության բաժինն են ազգային եկամտում։ Ուստի, բնակչության կենսամակարդակի աճի տեմպերը, առաջին հերթին, պայմանավորված են այն բանով, թե որքան կավելանա ազգային եկամուտը։

Պետք է ընդգծել, որ ազգային եկամուտը մեր երկրում աճում է բացառապես արագ տեմպերով։ Այսպես, միայն վերջին 20 տարվա ընթացքում (1950—1970 թթ.) ՍՍՀՄ ազգային եկամուտն ավելացավ ավելի քան 5,3 անգամ։ Դրա միջին տարեկան հավելաճը կազմել է 8,7 տոկոս։ ԱՄՆ-ում այդ ցուցանիշը նույն ժամանակաշրջանում 3,7 տոկոս է։ 1966—1970 թթ. Հայկական ՍՍՀ ազգային եկամտի միջին տարեկան հավելաճը կազմել է 8,95 տոկոս։ Ներկայումս ազգային եկամտի ավելացման գլխավոր գործոնը ո՛չ թե աշխատողների թվի ավելացումն է, այլև աշխատանքի արտադրողականության բարձրացումը։

Ընթացիկ հնգամյակում ազգային եկամտի առնվազն 80—85 տոկոսը պետք է ստացվի աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ։ Ընդգծենք, որ աշխատանքի արտադրողականության հավելաճն արդյունաբերության մեջ ներկայումս համարժեք է բանվորների թվի 11—12 մլն-ով ավելացմանը, իսկ նրա հավելաճը՝ նյութական ոլորտի բոլոր ճյուղերում լրացուցիչ 30 մլն աշխատողների ներգրավմանը (Н. С. Лагутин, Благо народа— высшая цел, М., 1971, стр. 8)։

Սակայն, անհրաժեշտ է շեշտել, որ տվյալ դեպքում ազգային եկամտի ոչ ամեն աճ անմիջապես կարող է ազդել ժողովրդի բարեկեցության բարձրացման վրա։ Այստեղ կարևոր նշանակություն ունի այն, թե ի՞նչ չափով են ավելացող ռեսուրսներն սպառվում, այսինքն՝ ինչպե՞ս է ազգային եկամուտը բաշխվում կուտակման և սպառման ֆոնդերի միջև։ Ժողովրդական տնտեսության զարգացման ութերորդ հնգամյա պլանի տարիներին սպառման ընդհանուր ֆոնդը բնակչության վճարունակության և նրա ապրանքային հատուցման միջև անհրաժեշտ հավասարակշռություն ապահովելու նպատակով ավելացավ համարյա նույն տեմպերով՝ տարեկան 7,0 տոկոսով, իսկ ազգային եկամուտը՝ տարեկան 7,1 տոկոսով, 1961—1965 թթ. հնգամյակի համապատասխանաբար՝ 5,2 և 5,7 տոկոս աճի դիմաց։ Ընթացիկ հնգամյակում ևս սպառման ֆոնդի տեսակարար կշիռն ազգային եկամտում կավելանա։ Բնակչության ռեալ եկամուտների ծավալը գլխավորապես որոշվում է օգտագործվող ազգային եկամտի մեծությամբ ու կառուցվածքով։

Ժողովրդի բարեկեցության անշեղ աճը, որպես կոմունիստական շինարարության ընդհանուր օրինաչափություն, տարբեր ժամանակաշրջաններում ունեցել է իր առանձնահատկությունները։ Դրանք կախված են երկրի կոնկրետ պատմական և տնտեսական պայմաններից, որոնցով պայմանավորվում են բնակչության կենսամակարդակի բարձրացման ուղիներն ու մեթոդները, չափերն ու տեմպերը։

Ինչպես արդեն տեսանք, 1966—1970 թթ. հնգամյակի գլխավոր առանձնահատկություններից մեկը՝ ժողովրդի բարեկեցության առավել արագ տեմպերով բարձրացումն է։ Ըստ որում, դրամական աշխատավարձի բացարձակ չափն ավելացավ ավելի, քան նախորդ երկու հնգամյակների (1956—1965 թթ.) ընթացքում։ Այսպես, եթե 1965 թ. բանվորների և ծառայողների միջին ամսական դրամական աշխատավարձը ՍՍՀՄ-ում կազմեց 96,5 ռուբլի, 1955 թ. 71,8 ռուբլու դիմաց կամ ավելացավ 24,7 ռուբլով, ապա այն 1970 թ. հասավ 121,7 ռուբլու կամ 1965 թ. համեմատությամբ ավելացավ 25,2 ռուբլով։

Ժողովրդի բարեկեցության բարձրացման արագ տեմպերն ապահովվում են նաև հասարակական սպառման ֆոնդերի զարգացմամբ։ Ուստի կարևոր նշանակություն ունի աշխատանքի վարձատրության և հասարակական սպառման ֆոնդերի միջև համամասնությունների պահպանումը։ Պետք է ընդգծել, որ աշխատանքի վարձատրության և սպառման հասարակական ֆոնդերի աճի ծավալն ու համամասնությունները որոշվում են օբյեկտիվ հանգամանքներով և չեն կարող կամային բնույթ կրել։

Աշխատանքի վարձատրության և սպառման հասարակական ֆոնդերի օպտիմալ հարաբերակցությունն ուղղված է հասարակության աշխատող և չաշխատող անդամների բարեկեցության միաժամանակ բարձրացմանը, նրանց ֆիզիկական, կուլտուրական և սոցիալական պահանջմունքների անհրաժեշտ չափով բավարարմանը, տարբեր խմբի ընտանիքների կենսամակարդակների մերձեցմանը և, վերջին հաշվով, ժողովրդի բարեկեցության համընդհանուր բարձրացմանը։

Աշխատանքի վարձատրության և սպառման հասարակական ֆոնդերի աճի տեմպերի համամասնությունը գլխավորապես պայմանավորված է, մի կողմից՝ աշխատողների և սպառման հասարակական ֆոնդերից օգտվող անձանց թվի հարաբերակցությամբ, մյուս կողմից՝ աշխատանքի վարձատրության մակարդակի և սպառման հասարակական ֆոնդերից կատարվող վճարումների ու արտոնությունների չափերի հարաբերակցությամբ։ Որպես կանոն, սպառման

հասարակական ֆոնդերը պետք է ավելի արագ աճեն, քան աշխատանքի վարձատրության ֆոնդը։ 1966—1970 թթ. աշխատանքի վարձատրության ֆոնդի հավելաճը կազմեց 45, իսկ սպառման հասարակական ֆոնդերինը՝ 50 տոկոս։

Սպառման հասարակական ֆոնդերի դերը ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում շատ մեծ է։ Միայն մեկ տարվա ընթացքում, 1969 թվականին, չորս անձից բաղկացած ընտանիքը, միջին հաշվով, սպառման ֆոնդերից ստացել է ամսական 80 ռուբլի՝ 1940 թ. 8 ռուբլու դիմաց։

1970 թ. Հայաստանի բնակչության յուրաքանչյուր շնչին սպառման հասարակական ֆոնդերից արտոնությունների և վճարումների գումարը կազմեց 262 ռուբլի, 1965 թ. 182 և 1960 թ. 127 ռուբլու փոխարեն։ Ներկայումս բանվորների և ծառայողների բյուջեի ընդհանուր գումարի մոտ $^1/_3$-ը կազմում են սպառման ֆոնդերից հատկացվող միջոցները։ Հատկապես վերջին տարիներին զգալիորեն ավելացած կենսաթոշակները կազմում են սպառման ֆոնդերի ընդհանուր ծավալի մոտ 20 տոկոսը։ 1970 թ. կենսաթոշակների միջին չափը, մեկ կենսաթոշակառուի հաշվով, տարեկան հասնում էր 400 ռուբլու կամ ամսական կազմել է 33 ռուբլի (1965 թ. այդ չափը հավասար էր 30 ռուբլու)։

Այսպիսով, սպառման հասարակական ֆոնդերը, որպես ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն աղբյուր, գնալով ավելի մեծ նշանակություն են ձեռք բերում, իսկ աշխատանքի վարձատրության հետ մեկտեղ կազմել են ընտանիքի եկամուտների հիմնական մասը։

Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է բանվորների և ծառայողների միջին աշխատավարձի աճ 20—22, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը հանրային տնտեսությունից՝ միջին հաշվով, 30—35 տոկոսով։ Դա նշանակում է, որ 1975 թ. բանվորների և ծառայողների միջին ամսական աշխատավարձը կհասնի 146—149, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 98 ռուբլու։ Միաժամանակ նախատեսվում է բարձրացնել աշխատավարձի նվազագույն չափը մինչև 70 ռուբլու։ Դրան զուգահեռ, ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի, սահմանվելու են միջին վարձատրվող կատեգորիայի բանվորների և ծառայողների համար նոր բարձրացված դրույքներ և ամսավճար։ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի որոշմամբ 1969 թ. վարձատրման նոր պայմանների փոխադրվեցին շինարարության և շինարարական նյութերի արդյունաբերական ձեռնարկությունների 9 մլն բանվորներ և ծառայողներ։ Նշենք, որ աշխատավարձի բարձրացման միջոցառումները, որոնք պետք է կիրառվեն ըստ երկրի շրջանների և ժողովրդական տնտեսության ճյուղերի, ընդհանուր առմամբ շոշափում են 90 մլն բանվոր-ծառայողների շահերը։

Բնակչության եկամուտների ավելացմանը նպաստում է նաև հարկերի վերացումը կամ դրանց տարբեր չափերի իջեցումը։ Իսկ մեր երկրում հետևողականորեն իրականացված է հարկերի վերացման կուրսը։ Այսպես, 1968 թ. հունվարի մեկից ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1967 թ.) պլենումի որոշման համաձայն 61—80 ռուբլի ստացող բանվորների և ծառայողների խոշոր խմբի համար եկամտահարկի չափը, միջին հաշվով, կրճատվեց 25 տոկոսով։ Ընթացիկ հնգամյակում բանվորների և ծառայողների նվազագույն աշխատավարձի բարձրացմանը զուգահեռ, կվերացվեն հարկումները ամսական



մինչև 70 ռուբլուց, ինչպես նաև կիջեցվի ամսական մինչև 90 ռուբլի աշխատավարձի եկամտահարկը։

Բնակչության դրամական եկամուտների մինչև 80 տոկոսը աշխատանքի վարձատրությունն է, այդ թվում ավելի քան 70 տոկոսը բանվոր-ծառայողների աշխատավարձն է։ Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է ավելացնել բնակչության ռեալ եկամուտները. կավելանան նաև նրանց դրամական եկամուտները։ Դա պահանջում է ավելի արագ տեմպերով ընդլայնել ժողովրդական սպառման առարկաների և ծառայությունների արտադրությունը, որպեսզի հնարավորություն ընձեռվի լուծելու պահանջարկի և առաջարկի համապատասխանության պրոբլեմը։ Այդ պրոբլեմի լուծումը, առաջին հերթին, պայմանավորված է գյուղատնտեսության վերելքով, սննդի և թեթև արդյունաբերության զարգացման թափով, ինչպես նաև բնակչությանը մատուցված ծառայությունների մակարդակի բարձրացմամբ։ 1971—1975 թթ. հնգամյա պլանով նախատեսվում է նյութական անվճար բարիքների և ծառայությունների, ինչպես նաև այդ ֆոնդերից բնակչությանը տրվող դրամական վճարումների ծավալը մեծացնել 40 տոկոսով։

Հայկական ՍՍՀ-ում նախատեսվում է մանրածախ ապրանքաշրջանառության ծավալն ավելացնել 70 տոկոսով, իսկ կենցաղային սպասարկման ծառայություններինը՝ 2,5 անգամ։ Եթե նախատեսված առաջադրանքներն ընթացիկ հնգամյակում լրիվ կատարվեն, ապա հնարավորություն կստեղծվի հիմնականում լուծելու վերոհիշյալ պրոբլեմը։ Ճիշտ է, դա մեծապես պայմանավորված է գյուղատնտեսության զարգացման աստիճանով։

Հայկական ՍՍՀ-ում գյուղատնտեսության համախառն արտադրանքը համադրելի գներով 1975 թ. կհասնի մոտ 570 մլն ռուբլու, 1970 թ. մոտ 430 մլն ռուբլու փոխարեն կամ բացարձակ հավելաճը կկազմի 140 մլն։ Դա նշանակում է, որ գյուղատնտեսության համախառն արտադրանքի միջին տարեկան հավելաճը, նախորդ հնգամյակի 4 տոկոսի փոխարեն, կհասնի 5,3 տոկոսի։ Նշենք, որ 1966—1970 թթ. Միության մասշտաբով գյուղատնտեսական արտադրանքի միջին տարեկան հավելաճը կազմեց 3,9 տոկոս։ Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի տարեկան աճի տարբերությունը կրճատել և հասցնել 1,9—2,0 անգամի (նախորդ հնգամյակում այն կազմել էր 2,2 անգամ)։

Այս խնդիրների լուծումը հնարավորություն կընձեռի զգալիորեն բարելավելու բնակչության սպառման կազմը և ավելի շատ արտադրել բարձրորակ և կալորիական սննդամթերքներ։ Միության մասշտաբով 1975 թ. մսի և մսամթերքի սպառումը բնակչության մեկ շնչի հաշվով կհասնի 58 կգ (1970 թ. 48 կգ), կաթինը և կաթնամթերքինը՝ 307-ից 340-ի, ձվինը՝ 153 հատից 190-ի, շաքարինը՝ 39-ից 43-ի, մրգինը՝ 35-ից 50 կգ և այլն։ Միաժամանակ կիջնի հացի և կարտոֆիլի սպառման մակարդակը։ Ընթացիկ հնգամյակում կավելանա նաև հագուստեղենի, կոշկեղենի, երկարատև օգտագործվող իրերի և այլ ապրանքների ձեռք բերումը։ Ժողովրդի սպառման բնագավառում կատարվող դրական փոփոխություններն այն դարձնում են ավելի ռացիոնալ։

Այսպիսով, բնակչության կենսամակարդակի անշեղ բարձրացումը ժողովրդական տնտեսության զարգացման, երկրի տնտեսական պոտենցիալի հզորության ժամանակակից պայմաններում դարձել է հրամայական խնդիր։

Մ. Խ. ՉՈԲԱՆՅԱՆ

## ՁԵՌՔԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Երկրի տնտեսական պոտենցիալի աճի բարձր տեմպերը, որոնք նախատեսված են կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներով, զուգորդվում են ընթացիկ հնգամյակում սոցիալ-տնտեսական մի շարք լուրջ խնդիրների լուծման հետ։ Դրանցից մեկը ձեռքի և ֆիզիկական ծանր աշխատանքի կրճատումն է, որն սկսված է դեռևս անցյալ հնգամյակներում։*

*1970 թվականի սկզբին երկրի արդյունաբերության մեջ կար ձեռքի աշխատանքով զբաղված 12,4 մլն բանվոր, որոնց տարեկան միջին աճը 1959—1969 թթ. կազմել է մոտ 350 հազար մարդ (դրանցից 120 հազարը հիմնական բանվորներ և 230 հազարը՝ օժանդակ)։ Այդ ժամանակամիջոցում ձեռքի աշխատանքի տեսակարար կշիռը երկրի արդյունաբերության մեջ կրճատվել է 4,5 (1959 թվականի 55,0-ից 1969 թվականին 50,5 տոկոս), իսկ մեր հանրապետությունում 1,9 տոկոսով։ Արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքի տեսակարար կշռի կրճատման ընդհանուր տենդենցի առկայության պայմաններում, շատ ճյուղերում նրա բաժինը դեռևս կազմում է բանվորների ընդհանուր թվի կեսից ավելին։*

*Բերված թվերն ընդհանուր պատկերացում տալով բանվորների կազմի որակական փոփոխման մասին, միաժամանակ վկայում են նաև արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքը կրճատելու մեծ ռեզերվների առկայությունը։ Սրանով էլ պայմանավորված է ձեռքի աշխատանքով զբաղված բանվորների ֆունկցիոնալ կազմի կոմպլեքսային և կառուցվածքային վերլուծության անհրաժեշտությունը, ձեռքի աշխատանքի առավել կիրառման ոլորտների որոշումը, դրանց միջճյուղային բաշխումը՝ արդյունավետ ուղղությունների ընտրության համար, հաշվի առնելով հերթականության գործոնը, մեքենայացման և ավտոմատացման միջոցով ձեռքի աշխատանքն արդյունաբերության մեջ պլանաչափորեն կրճատելու համար։*

*Ձեռքի աշխատանքը բնորոշող հատկանիշը աշխատանքի ամենահասարակ գործիքներով կատարումն է, կամ առանց գործիքների գործածությամբ ֆիզիկական էներգիայի ծախսումը։ Ձեռքի աշխատանքի տեսակարար կշռի նվազման տենդենցի առկայության պայմաններում, արդյունաբերության մեջ մեքենայացված և ձեռքի աշխատանքի միջև առեղծված հարաբերակցությունը բնորոշում է ձեռքի գործողությունների աստիճանական արտամղման պրոցեսը՝ մեքենայացման և ավտոմատացման միջոցով։ Մեքենաները և մեխանիզմները բանվորի ձեռքի աշխատանքը փոխարինում են ոչ լիովին, ֆունկցիաների մի մասը մնում է կենդանի աշխատանքին և, որքան աղքատիկ է մեքենան ֆունկցիաներով, այնքան ավելի շատ ֆունկցիաներ են բաժին ընկնում կենդանի աշխատանքին՝ չմեքենայացված գործողությունները կատարելու համար։ Քանի դեռ չի ապահովված արտադրապրոցեսի տեխնիկական միասնությունը և մեքենայացումը դեռևս չի վերածվել ավտոմատացման, ապա շատ գործողություններ դեռևս կատարվելու են ձեռքով։ Տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատիկ կառավարմանն անցնելու պայմաններում, երբ հատկապես հիմնական բանվորների մեծ մասն ազատվում է արտադրապրոցեսին անմիջականորեն մասնակցելուց և առավելապես իրագործում են ավտոմատ գործող մեքենաների սիստեմի կարգավորման և կանոնավորման ֆունկցիաները՝ նախապես ծրագրավորված տեխնոլոգիական ռեժիմներին և պարամետրերին համապատասխան, ձեռքի աշխատանքի տեսակարար կշռի ընդհանուր կրճատման տենդենցի դեպքում անգամ ձեռքի աշխատանքով զբաղվողների տեսակարար կշիռը զգալի կլինի բանվորների ընդհանուր թվի մեջ, քանի որ արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման պրոցեսը միաժամանակ պայմանավորվում և առաջ է բերում սարքավորումն սպասարկող, կարգաբերող և խնամող բանվորների օրինաչափ աճ, որոնց աշխատանքն առավելապես ձեռքի բնույթ ունի։*

*Այս պատճառով ձեռքի աշխատանքի առանձին պրոֆեսիաների բանվորների թվի աճը չի հակասում գիտա-տեխնիկական առաջընթացին, և այն առկա կլինի նրա հետագա զարգացման պրոցեսում։ Ընդ որում, եթե ձեռաշխատ բանվորների թվի աճի տեմպերը, ամբողջությամբ վերցրած, մեքենայացվածների համեմատությամբ, դանդաղ են, ինչպես այդ առկա է ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ արդյունաբերության ճյուղերում (տես աղյուսակը), ապա առանձին, հատկապես բարձրորակ պրոֆեսիաների, ձեռաշխատ բանվորների թվի գերազանցումը ոչ միայն չի հակասի գիտա-տեխնիկական առաջընթացի ընդհանուր ուղղություններին, այլև կպայմանավորվի վերջիններով։ Օրինակ, սարքավորումների վիճակը հսկող ձեռքի աշխատանքով զբաղվող բանվորների թվի հարաբերական ավելացումը, այդ սարքավորումը կառավարող մեքենայացված և ավտոմատացված աշխատանքի բանվորների թվի համեմատությամբ, կապված է ավտոմատացված սարքավորման տեսակարար կշռի ավելացման, նրա նորոգման բարդության միավորի բարձրացման հետ և վկայում է ավտոմատացման ընդլայնման մասին, որի հետ կրճատվում է մեքենաներն ու մեխանիզմներն անմիջականորեն կառավարող բանվորների թիվը։*

**Մեքենայացված և ձեռքի աշխատանքով զբաղված բանվորների թվի աճի տարեկան միջին տեմպը ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ արդյունաբերության ճյուղերում 1965—1969 թթ. (*տոկոսներով*)**

| Արդյունաբերության ճյուղեր | ՍՍՀՄ: Մեքենայացված աշխատանքի բանվորներ | ՍՍՀՄ: Ձեռաշխատ բանվորներ | Հայկական ՍՍՀ: Մեքենայացված աշխատանքի բանվորներ | Հայկական ՍՍՀ: Ձեռաշխատ բանվորներ |
|---|---|---|---|---|
| | տարեկան աճը | տոկոսներով | տարեկան աճը | տոկոսներով |
| Էլեկտրաէներգետիկա | 7,3 | 4,0 | 21,1 | 8,1 |
| Գունավոր մետալուրգիա | 3,7 | 1,2 | 2,3 | — |
| Քիմիական և նավթաքիմիական արդյունաբերություն | 7,5 | 6,3 | 9,7 | 5,0 |
| Մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերություն | 3,8 | 2,6 | 1,0 | 13,7 |
| Թեթև արդյունաբերություն (առանց տեքստիլի) | 4,5 | — | 3,2 | — |
| Տեքստիլ արդյունաբերություն | 1,7 | 1,6 | 5,0 | 5,3 |
| Սննդի արդյունաբերություն | 3,8 | 2,7 | 6,2 | 4,0 |

Ելնելով արդի գիտա-տեխնիկական առաջընթացի պահանջներին համապատասխանող արտադրության տնտեսական ու սոցիալական զարգացման տենդենցների վերլուծությունից, հնգամյակի հիմնական խնդիրներից՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում ասված է՝ արտադրության տեխնիկական մակարդակը բարձրացնելու հիման վրա հետևողականորեն կրճատել ձեռքի և ծանր աշխատանքի, ինչպես նաև անորակ աշխատանքի կիրառումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։

Ինչպես տեսնում ենք, համագումարի որոշման մեջ խոսքը վերաբերում է ձեռքի աշխատանքի կրճատմանը, և ոչ թե նրա լրիվ արտամղմանը։

Մեքենայացված և ձեռքի աշխատանքի քանակական հարաբերության փոփոխությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ իր ողջ անհավասարաչափությամբ հանդերձ արդյունաբերության շատ ճյուղերի համար դեռևս բնորոշ է ձեռքի աշխատանքի տեսակարար կշռի կրճատման դանդաղ տեմպ։ Դրա հաղթահարման համար պետք է առավել արագացնել ձեռքի աշխատանքի մեքենայացումը, ավելացնելով այդ նպատակով կապիտալ ներդրումները։ Պետք է ենթադրել, որ ձեռքի աշխատանքի նոր ոլորտներ մեքենայացնելիս, մեկ բանվորին ընկնող արտադրաֆոնդերի արժեքն ընդհանուր առմամբ պակաս չի լինի ներկայումս մեքենայացված տեղամասերում աշխատող բանվորների ֆոնդազինվածությունից։ Դրա հետ միասին հարկ է նշել, որ ձեռքի աշխատանքի հետագա մեքենայացումն ու ավտոմատացումը կապված են ավելի մեծ ներդրումների հետ։ Եվ, եթե ներկայիս արդյունաբերական սարքավորումը գնահատվում է (1969 թվականի հունվարի 1-ի տվյալներով) 87 մլրդ ռուբլի, ապա մեքենայացված աշխատանքի բանվորների բանակի կրկնապատկումը, ըստ տնտեսական գիտությունների դոկտոր Կ. Մ. Վարդավսկու հաշվարկումների, կպահանջի ոչ պակաս քան 100 մլրդ ռուբլու ներդրում, այնինչ այժմ արդյունաբերական ձեռնարկությունների սարքավորման մեջ տարեկան ներդրումները կազմում են ոչ ավելի, քան 10 մլրդ ռուբլի։

Երկրի արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքով զբաղված բանվորների միջճյուղային բաշխման վերլուծությունը ցույց է տալիս, որ առաջվա նման ձեռաշխատ բանվորների թվի ավելի քան երկու երրորդը գործում է չորս ճյուղերում՝ մեքենաշինական և մետաղամշակման, թեթև, սննդի և շինանյութերի արդյունաբերության մեջ։ Ընդ որում, բացառությամբ թեթև արդյունաբերության, նշված ճյուղերի տեսակարար կշիռը ձեռքի աշխատանքի բանվորների միջճյուղային բաշխման մեջ բարձրացել է։

1970 թվականի սկզբին մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերության մեջ կար 4,6 միլիոն ձեռքի աշխատանքով զբաղված բանվոր, թեթև արդյունաբերության մեջ՝ 1,8, սննդի՝ 1,3, շինանյութերի՝ 0,7, քիմիական և նավթաքիմիական՝ 0,6 մլն բանվոր և այլն։ Արդյունաբերության հիմնական բանվորների թվում ձեռաշխատ բանվորները կազմում են $^{1}/_{3}$, օժանդակինը՝ $^{2}/_{3}$։ Հետազոտված տասնամյակում ձեռքի աշխատանքի հիմնական և օժանդակ բանվորների թվական հարաբերության մեջ էական փոփոխություններ տեղի չեն ունեցել։ Այսպես, եթե 1959 թվականին ՍՍՀՄ արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքով զբաղված բանվորների բաժինը կազմել է 65,4 տոկոս, ապա 1969 թվականին 64,5 կամ ավելի քան 8 մլն մարդ։ Ինչպես տեսնում ենք, երկրի արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքով զբաղված բանվորների մեծ մասն օժանդակ են, դրա համար նրանց աշխատանքի առաջ-



նահերթ մեքենայացումը, որն առավելապես կապված է բեռների տեղափոխման, նորոգման և պահեստային աշխատանքների հետ, արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու առավել խոշոր ռեզերվներից մեկն է։ Ընդ որում, հաշված է, որ «մեքենաշինական գործարանի հիմնական արտադրության մեջ մեկ բանվորին ազատելու համար պահանջվում է, միջին հաշվով, ծախսել 6,7, իսկ սպասարկման աշխատանքներում՝ 2,1 հազար ռուբլի։ Մեկ մլն ռուբլի կապիտալ ներդրումը մեխանիկական մշակման մեջ կազատի 105, ձուլարանում՝ 92, դարբնա-մամլակային արտադրության մեջ՝ 124 բանվոր, իսկ եթե մեկ մլն ռուբլի կապիտալ ներդրումը հատկացնենք տրանսպորտային-պահեստային աշխատանքների մեքենայացմանը, ապա կազատվի 544 բանվոր, այսինքն՝ կապիտալ ներդրումների արդյունավետությունը երեքից-հինգ անգամ ավելի բարձր կլինի (Б. З. Мильнер и В. Г. Полянский, Крупные резервы промышленности. Журнал «Социалистический труд» № 10, 1968, стр. 56).

ՀՍՍՀ արդյունաբերության առանձին ճյուղերի փաստական տվյալների հիման վրա կատարված հաշվարկումները ցույց են տալիս, որ քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների հիմնական արտադրություններին հատկացված մեկ մլն ռուբլի կապիտալ ներդրումն ազատում է 59, իսկ օժանդակ աշխատանքների մեքենայացումը՝ 396 բանվոր (առանց հաշվի առնելու էներգաջերմային տնտեսության սպասարկումով զբաղված բանվորներին), գունավոր մետալուրգիայի մեջ համապատասխանորեն՝ 72 և 371 բանվոր, մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության մեջ 113 և 494, թեթև արդյունաբերության մեջ 129 և 402, սննդարդյունաբերության մեջ՝ 142 և 449 բանվոր։

Ինչպես տեսնում ենք, բերված տվյալները բավական համոզիչ ցույց են տալիս օժանդակ աշխատանքների և գործողությունների մեքենայացմանը հատկացված կապիտալ ներդրումների անհամեմատ բարձր արդյունավետությունը։ Արդյունաբերության մյուս ճյուղերի ձեռնարկությունների հիմնական և օժանդակ արտադրություններին հատկացված կապիտալ ներդրումների արդյունքների քննությունը ցույց է տալիս, որ շատ դեպքերում մեծությամբ միանման ներդրումները տնտեսապես ավելի արդյունավետ են օժանդակ արտադրամասերում և աշխատանքներում։ Ընդ որում, լրացուցիչ կապիտալ ներդրումների յուրաքանչյուր ռուբլուն հատկապես կենդանի աշխատանքի առավել մեծ խնայողություն ստացվում է այն ձեռնարկություններում, որտեղ օժանդակ բանվորների աշխատանքի մեքենայացման աստիճանը ցածր է։

Հայկական ՍՍՀ արդյունաբերությունում մեքենայացված և ձեռքի աշխատանքով զբաղված բանվորների հարաբերակցության մեջ տեղի ունեցած փոփոխությունները համապատասխանում են ամբողջ Միության արդյունաբերության մեջ 1959—1969 թթ. տասնամյակում տեղի ունեցած փոփոխություններին, որոնք արտահայտվել են ձեռքի աշխատանքով զբաղված հիմնական բանվորների տեսակարար կշռի իջեցմամբ 3,4, իսկ օժանդակ բանվորներինը՝ 4,8 տոկոսով։ Մեր հանրապետության արդյունաբերության մեջ մոտավորապես այնպես, ինչպես ամբողջ Միության արդյունաբերության մեջ, հիմնական բանվորների կազմի մոտ $^{1}/_{3}$-ը, իսկ օժանդակներինը ավելի քան $^{2}/_{3}$-ը ձեռքի աշխատանքի բանվորներ են։ Առանձին ֆունկցիոնալ խմբերի բանվորների թվում ձեռքի աշխատանքի տեսակարար կշռի առավել մեծ կրճատում տեղի է ունեցել

տեխնիկական վերահսկողության և պահեստային տնտեսությամբ զբաղվող,
առավել քիչը՝ օժանդակ և նորոգման բանվորների մեջ։ Սակայն, նույնիսկ
կրճատման տենդենցի առկայության պայմաններում դեռևս պահեստային
բանվորների 79,2, տեխնիկական վերահսկողության՝ 79,6, նորոգողների՝ 79,7,
օժանդակների՝ 75,5 և շինարարական-տնտեսական բանվորների 86,0 տո-
կոսն իրենց աշխատանքային ֆունկցիաները կատարում են ձեռքով, առանց
որևէ մեքենա կամ մեխանիզմ օգտագործելու։ Օժանդակ բանվորների մյուս
խմբերի աշխատանքի մեքենայացման առավել բարձր մակարդակ ձեռք է
բերված էներգաուժային ու էներգաջերմային տնտեսությանն սպասարկող և
տրանսպորտում զբաղված բանվորների մասնակի կրճատմամբ, որի հետևան-
քով նրանց ընդհանուր թվի մեջ ձեռքի աշխատանքի բանվորները կազմում են
համապատասխանորեն՝ 29,2 և 54,9 տոկոսը։

Ձեռքի աշխատանքի գործողություններից բանվորներին ազատելու նպա-
տակով ռեզերվներ հայտնաբերելու համար որոշ հետաքրքրություն է ներկա-
յացնում ձեռքի աշխատանքով զբաղված բանվորների ֆունկցիոնալ կառուց-
վածքի դինամիկայի մեջ տեղի ունեցած տեղաշարժերի վերլուծությունը։ Այդ
վերլուծությունը ցույց է տալիս, որ ձեռաշխատ բանվորների կազմում 1959—
1965 թթ. հիմնականների տեսակարար կշիռն իջնում էր, իսկ օժանդակներինն
անընդհատ աճում, և միայն 1965—1969 թթ. նկատվում է հակառակ տեն-
դենցը։

Հանրապետության արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքով զբաղ-
ված բանվորների միջճյուղային բաշխման վերլուծությունը ցույց տվեց, որ
քննության առնված ժամանակաշրջանում նրանք հիմնականում կենտրոնաց-
ված են չորս ճյուղերում՝ մեքենաշինական ու մետաղամշակման, շինանյու-
թերի, թեթև և սննդի արդյունաբերություններում։ Ընդ որում, եթե մինչև
1959 թվականը, մյուս ճյուղերի համեմատությամբ, ձեռքի աշխատանքով
զբաղված բանվորները մեծ թիվ էին կազմում թեթև, ապա 1962 թվականից
սկսած՝ մեքենաշինական ու մետաղամշակման արդյունաբերության մեջ։
Ձեռքի աշխատանքի միջճյուղային բաշխման մեջ, բացառությամբ մեքենա-
շինության ու մետաղամշակման (որտեղ նկատվել է ո՛չ միայն հիմնական,
այլև օժանդակ բանվորների բաժնի ավելացում), ինչպես նաև շինանյութերի
(միայն հիմնական բանվորների), արդյունաբերության բոլոր մյուս ճյուղերի
տեսակարար կշիռն իջել է։

Ձեռքի աշխատանքով զբաղված բանվորների պրոֆեսիոնալ կառուցվածքի
քննությունը ցույց տվեց, որ ՀՍՍՀ արդյունաբերության մեջ ձեռաշխատ բան-
վորների տեսակարար կշռի ընդհանուր կրճատման հետ միասին, մի շարք
միջանցիկ պրոֆեսիաների, առավելապես օժանդակ բանվորների, նկատվում
է նրանց տեսակարար կշռի բարձրացում։ Հանրապետության արդյունաբերու-
թյան մեջ ձեռքի աշխատանքով զբաղված մեծաքանակ բանվորների առկա-
յությունը (բոլոր բանվորների կեսից ավելին) առաջին հերթին մատնացույց է
անում արտադրապրոցեսների մեծ մասում կոմպլեքսային մեքենայացման
անբավարարությունը, իսկ հաճախ նաև բացակայությունը։

Օժանդակ բանվորների պրոֆեսիոնալ կառուցվածքի մեջ կատարվող տե-
ղաշարժերի պատճառները համեմատաբար ավելի լրիվ բացահայտելու առու-
մով զգալի հետաքրքրություն է ներկայացնում նաև մեքենայացված և ձեռքի
աշխատանքով զբաղվող բանվորների թվական հարաբերակցությունը, ինչպես



նաև այդ հարաբերակցության փոփոխության տենդենցները։ Օժանդակ բան-
վորների մի քանի առանձին բազմամարդ պրոֆեսիաների տվյալները վկայում
են, որ փոխադրողների, մատուցողների, ծրարողների, կապող-կշռողների,
տեսակավորողների ավելի քան $^{2}/_{3}$-ը հետազոտված ժամանակամիջոցի բոլոր
տարիներին իրենց աշխատանքային ֆունկցիան կատարել են ձեռքով, իսկ
վերահսկիչների, խոտանողների, բեռնակիրների, կշռավարների ավելի քան
$^{4}/_{5}$-ը։ Այս հիմնականում բացատրվում է նրանով, որ մեքենայացված աշխա-
տանքի բանվորների թվի աճի տարեկան միջին տեմպը ետ էր մնում արտա-
դրանքի ծավալի աճի համեմատությամբ, ձեռքի աշխատանքով զբաղված
բանվորների թվի աճի տեմպից։ Դա համեմատաբար ավելի ցայտուն էր ար-
տահայտված այն պրոֆեսիաների բնագավառում, ուր ամենից ավելի բարձր
է օժանդակ բանվորների տեսակարար կշիռը (վերահսկիչներ, խոտանարար-
ներ և այլն)։ Հարկ է նշել, որ իրենց աշխատանքային ֆունկցիաները կատա-
րելիս մեքենաներ և մեխանիզմներ օգտագործող բանվորների թիվը, քննու-
թյան առնված պրոֆեսիաների կազմում, ամբողջ Միության մեջ զգալիորեն
բարձր է, քան հանրապետության արդյունաբերության մեջ։ Ուշագրավ է այն,
որ եթե ՍՍՀՄ արդյունաբերության մեջ մեքենայացված աշխատանքի բան-
վորների բաժինը վերոհիշյալ պրոֆեսիաների բանվորների թվի մեջ, քննու-
թյան առնված ժամանակամիջոցում, աճի տենդենց է ունեցել, ապա նույն այդ
պրոֆեսիաների բնագավառում հանրապետության արդյունաբերության մեջ
նկատվում է հակառակ երևույթը։

Առանձին պրոֆեսիաների վերաբերյալ տվյալների համադրումը ՍՍՀՄ
արդյունաբերության նման տվյալների հետ ցույց են տալիս, որ մեքենայաց-
ված աշխատանքով զբաղված բանվորների տեսակարար կշիռը, միջին հաշ-
վով, քննության առնված պրոֆեսիաներից շատերում (ՍՍՀՄ-ում պրոֆկազմի
1959 և 1969 թթ. վիճակագրության միաժամանակյա հաշվարկումների տվյալ-
ներով) ավելի բարձր էր, քան հանրապետության արդյունաբերության մեջ։
ՍՍՀՄ-ի համեմատությամբ, դրությունն առանձնապես անբարենպաստ է բեռ-
նակիրների աշխատանքի մեքենայացման հարցում։ Կոնվեյերների, տրանս-
պորտյորների վրա աշխատող և աշխատանքը ձեռքով կատարող բեռնակիր-
ների թվի հարաբերակցությունը հանրապետությունում հավասար է 20,0 և
80,0 տոկոսի, իսկ ՍՍՀՄ-ում՝ 27,6 և 72,4 տոկոսի։

Հանրապետության արդյունաբերության մեջ, ՍՍՀՄ համեմատությամբ,
ամենից ավելի քիչ է մեքենայացված տեսակավորող-ծրարող բանվորների
աշխատանքը, դա հետևանք է այն բանի, որ հանրապետության արդյունա-
բերության ձեռնարկություններում անբավարար են կիրառվում վերահսկիչ-
տեսակավորող ավտոմատներ և կիսաավտոմատներ։ Հարկ է նաև նշել, որ
միութենական միջին տվյալների համեմատությամբ, առանձին պրոֆեսիանե-
րի բանվորների աշխատանքի մեքենայացման մակարդակների խզումը
չի կրճատվում։ Օրիենտիր հաշվարկումները ցույց են տալիս, որ ստեղծված
խզումը վերացնելու համար անհրաժեշտ է 4—5 տարի, պայմանով, որ հան-
րապետության արդյունաբերության մեջ բանվորների աշխատանքի մեքենա-
յացման տարեկան միջին տեմպը 20—25 տոկոսով գերազանցի միութենական
միջին տեմպերին։

Լ. Ս. ՀԱԿՈԲՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

# Գիտությունը և կյանքը

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

Գ. Ա. ԻՎԱՆՅԱՆ

Լենինգրադ

Լուսնի գիտական հետազոտությունների ըսկիզբը համարվում է 1610 թվականը, թեպետ մարդիկ Լուսնով հետաքրքրվել են անհիշելի ժամանակներից ի վեր: Նշված թվականին իտալացի հանճարեղ գիտնական Գալիլեյն իր ստեղծած հեռադիտակով Լուսնի վրա հայտնաբերեց լեռներ և խոշոր գոգավորություններ. ըստ լեռների արձակած ստվերների նա որոշեց դրանց բարձրությունը, գտավ արեգակնային լույսի՝ Լուսնի անդրադարձման որոշ հիմնական օրինաչափություններ: Գալիլեյից ավելի ուշ (1647 թ.) աստղագետ և գարեջրագործ Հևվելիոսը կազմեց Լուսնի տեսանելի կողմի առաջին մանրամասն և զարմանալիորեն ճշգրիտ քարտեզը: Լուսինը հետազոտել են նշանավոր շատ աստղագետներ, որոնց ջանքերով որոշվել են նրա երկրաչափական, դինամիկական և ֆիզիկական բազմազան բընութագրեր, քանիցս կազմվել նրա տեսանելի կիսագնդի քարտեզներ: Գիտական բազմաթիվ ենթադրություններ ու տեսություններ են (հիմնականում ոչ-ճիշտ) առաջադրվել Լուսնի ու դրա մակերևութային գոյացությունների առաջացման ու զարգացման, լուսնային ապարների կազմության և քիմիական բաղադրության, Լուսնի վրա օրգանական կյանքի հնարավորության, նրա ընդերքում և մակերևույթին ընթացող պրոցեսների ֆիզիկա-քիմիական մեխանիզմի ու Լուսնի հետ կապված շատ այլ հարցերի վերաբերյալ: Սակայն Լուսնի հետազոտությունների այդ հետաքրքիր պատմության մասին չէ, որ կցանկանայինք պատմել:

Լուսնի հետազոտությունների՝ սկզբունքորեն նոր և չափազանց կարևոր փուլ սկսվեց Երկրի առաջին արհեստական արբանյակի արձակումից հետո, երբ հնարավոր դարձան նրա անմիջական հետազոտությունները տիեզերական ապարատների միջոցով: Այդ փուլի սկիզբն ավետող սովետական «Լուսին—1» ավտոմատ կայանի արձակումից հետո անցած մոտ 13 տարիները եղան Լուսնի ուսումնասիրության վիթխարի առաջընթացի տարիներ: Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ Լուսինը «հայտնագործվեց» երկրորդ անգամ:

Լուսնի և լուսնամերձ տիեզերական տարածության ուսումնասիրության նպատակով այդ տարիներին Սովետական Միությունում արձակվել են տիեզերական բազմաթիվ ապարատներ: Ստորև կպատմենք դրանց և դրանցից ստացված գիտական տվյալների մասին:

Ընդհանուր ծանոթության համար որոշ տեղեկություններ հաղորդենք Լուսնի (որպես երկնային մարմնի) վերաբերյալ: Այն Երկրին ամենամոտ բնական երկնային մարմինն է. Երկրի շուրջը պտտվում է 384.400 **կմ** միջին հեռավորության վրա: Երկրից տեսանելի է այդ գնդաձև մարմնի միայն մի կիսագունդը, ավելի ճիշտ՝ մակերևույթի 59 տոկոսը: Դա հետևանք է այն բանի, որ Երկրի շուրջը մեկ լրիվ պտույտ կատարելու ժամանակամիջոցում (27 օր, 7 ժամ, 43 րոպե, 11,5 վայրկյանում) Լուսինը մի պտույտ է կատարում նաև իր առանցքի շուրջը: Երկրի հետ համեմատելիս Լուսնի զանգվածը կազմում է Երկրի զանգվածի 0,01 մասը, ծավալը՝ 0,02, մակերեսը՝ 0,07 (3,34 գրամ 1 **խոր/սմ**-ում), ծանրության ուժի արագացումը մակերևույթի վրա երկրայինի 0,16 (1,62 **մետր/վրկ**$^2$) մասը: Լուսնի վրա ցերեկային առավելագույն ջերմաստիճանը հասնում է +130-ի, իսկ գիշերային նվազագույնը՝ —150-ի: Լուսինը մթնոլորտ չունի: Այն զուրկ է նաև օրգանական աշխարհից:



Մորֆոլոգիական տեսակետից Լուսնի վրա առանձնացվում են երկու տասնյակից ավելի հիմնական գոյացություններ, որոնցից են՝ լեռնաշղթաները, ծովերը, խառնարանները, կըրկեսները, լեռնահովիտները և այլն:

Այժմ արդեն, երբ ավարտված են Լուսնի ողջ մակերևույթի մորֆոլոգիական քարտեզագրումն ու ուսումնասիրությունը, աչքի է զարնում դրա մայրցամաքային ստրուկտուրաների գերակըշռությունը ծովայինների նկատմամբ: Վերջիններս գրավում են Լուսնի մակերևույթի միայն քառորդ մասը և հիմնականում գտնվում Լուսնի՝ Երկրից տեսանելի կիսագնդում: Լուսնի վրա ամենատարածված գոյացությունները, անշուշտ, խառնարաններն են: Լուսնի միայն տեսանելի կողմում 1 կմ-ից ավելի տրամագիծ ունեցող խառնարանների թիվն անցնում է 300 հազարից: Լուսնի հակառակ կողմում դրանց թիվն ավելի մեծ է: Հաճախ հանդիպում են մինչև 1000 **կմ** ձգվող խառնարանների շըղթաներ: Լուսնային լեռները հազվադեպ են հասնում 5—6 **կմ** բարձրության, թեպետև դրանց մեջ կան մինչև 9 **կմ** բարձրություն ունեցող գագաթներ: Լեռները հանդիպում են հիմնականում մի քանի հարյուր **կմ** ձգվող լեռնաշղթաների ձևով: Լուսնային ծովերը, հասկանալի է, ծովեր են՝ առանց կաթիլ իսկ ջրի: Դրանք լեռներով եզերվող, համեմատաբար հարթ գոգավորություններ են:

Երկրի առաջին արհեստական արբանյակի արձակումից կարճ ժամանակ անց, սկսվեց հրթիռա-տիեզերական տեխնիկայի զարգացման նոր՝ միջմոլորակային թռիչքների փուլը: 1958 թ. վերջերին արդեն, Սովետական Միությունում պատրաստված բազմաստիճան հըրթիռները կարող էին մարմնին հաղորդել 11,2 **կմ/վրկ** արագություն, որն անհրաժեշտ է երկրագնդի ձգողականությունը հաղթահարելու համար:

Սովետական Միությունում մշակված էր դեպի Լուսին նախատեսվող թռիչքների երկու տարբերակ— թռիչք Երկրից Լուսին առանց ուղեծրի հետագա ճշգրտման (կոռեկցիայի) և թռիչք երկրի արհեստական արբանյակի միջանկյալ ուղեծրից՝ ուղեծրի հետագա ճշգըրտմամբ:

Այդ թռիչքների ժամանակ նախատեսված էր լուծել հիմնականում հետևյալ գիտական խընդիրները.

1. Լուսնի և լուսնամերձ տիեզերական տարածության փորձարարական հետազոտությունը, մասնավորապես Լուսնի գրավիտացիոն և մագնիսական դաշտերի ուսումնասիրությունը.

2. Լուսնի՝ Երկրից անտեսանելի կողմի հետազոտությունը.

3. Լուսնի ճառագայթումների ուսումնասիրությունն սպեկտրի այն տիրույթներում, որտեղ Երկրի մթնոլորտի կլանման հետևանքով անհնար է դիտումներ կատարել երկրագնդի մակերևույթից.

4. Լուսնի մակերևութային գոյացությունների հետազոտությունը՝ առավելագույն մանրամասնությամբ.

5. Անմիջական փորձարարական հետազոտություններ՝ Լուսնի մակերևույթի վրա:

Լուսնի հետազոտությունների ծրագիրը Սովետական Միությունում իրագործվում է հետևողականորեն և պլանաչափ: Այժմ այն շատ ավելի բարդ ու բազմակողմանի է և գիտական մեծ արժեք կունենա:

1959 թ. հունվարի 2-ին արձակված սովետական տիեզերական հրթիռն առաջին երկրային ապարատն էր, որը մեկ վայրկյանում զարգացնելով 11,2 **կմ** արագություն, դուրս եկավ երկրագնդի ձգողականությունից և Լուսնի մակերևույթից 5—6 հազար **կմ** հեռավորության վրա անցնելով նրա մոտով, դարձավ արեգակնային համակարգության առաջին արհեստական մոլորակը: Դրանով ո՛չ միայն հեռավոր տիեզերքի անմիջական ուսումնասիրությունների, այլև Լուսնի շրջակայքում կատարվելիք փորձարարական հետազոտությունների հիմքը դրվեց:

Տիեզերական թռիչքը հնարավորություն ընձեռեց՝ փորձարկելու տանող հրթիռային կոմպլեքսը, դրա ղեկավարման ողջ համակարգը, էներգետիկ սնուցման և կոնտեյներում ջերմաստիճանի կարգավորման սարքավորումները, թռիչքի ուղեծրի վերահսկման ու կապի ռադիոտեխնիկական միջոցները, ինչպես նաև հրթիռի վերջին աստիճանում գտնվող 361,3 կիլոգրամանոց «Լուսին—1» ավտոմատ միջմոլորակային կայանում (ԱՄԿ) տեղադրված գիտական սարքերի միջոցով՝ Երկիր—Լուսին ուղեծրում հետազոտելու միջմոլորակային նյութի պինդ ու գազային բաղադրատարրերը, Արեգակի կորպուսկուլյար ճառագայթումները, մետեորիտային մասնիկները, Երկրի և Լուսնի մագնիսական դաշտերը, Երկրի ճառագայթային գոտիները, տիեզերական ճառագայթների բաղադրությունն ու էներգետիկ հատկությունները, վերոհիշյալ ճառագայթումների ինտենսիվությունը և այլն:

Թռիչքի ընթացքում ստացված կարևորագույն գիտական արդյունքներից նշենք միայն փոքր էներգիայի մասնիկների հոսանքի արձանագրումը միջմոլորակային տարածությունում և դիպոլի մագնիսական դաշտից երկրագնդի մագնիսական դաշտի լարվածության շեղման

հայտնաբերումը Երկրի մակերևույթից 15—20 հազար **կմ** հեռավորության վրա:

**«Լուսին—1»** ԱՄԿ-ի թռիչքը հսկայական նշանակություն ունեցավ ո՛չ միայն գիտատեխնիկական շատ խնդիրների լուծման համար, այլև հոգեբանորեն խթանեց Լուսնի հետագա հետազոտությունները. առաջին անգամ մարդիկ զգացին, որ Լուսինն անհասանելի չէ: Ֆրանսիական ականավոր լրագրող Անդրե Վյուրմսերը գրեց. «Մենք չգիտենք այն վառելիքի բաղադրությունը, որի օգնությամբ շարժվում է հրթիռը: Եվ թող դա մնա գաղտնի, չէ՛ որ ես գիտեմ, թե ո՛րն է ամենագլխավոր վառելիքը: Դրա անունն է սոցիալիզմ»: Համաշխարհային մամուլում այդ կայանն անվանվեց «Երազանք»:

Նույն տարվա աշնանը, սեպտեմբերի 12-ին, դեպի Լուսին արձակվեց **«Լուսին—2»** ԱՄԿ-ը, որը մեկ և կես օր հետո՝ սեպտեմբերի 14-ին, հասավ Լուսին և ընկավ նրա մակերևույթին՝ Պարզությունների ծովի շրջանում: Կայանում տեղադրված գիտական սարքերը նման էին **«Լուսին—1»** կայանի սարքերին: Դրանք աշխատեցին մինչև Լուսնի մակերևույթի հետ կայանի բախման ակնթարթը և մեծաքանակ տվյալներ հաղորդեցին Երկիր:

Այդ տվյալների մշակումից, մասնավորապես, պարզվեց, որ, ի տարբերություն Երկրի, Լուսինը մագնիսական դաշտ չունի կամ այնքան թույլ է, որ «Լուսին—2» կայանի մագնիսաչափերն անկարող էին այն գրանցել, թեպետ սրանք շատ ավելի զգայուն էին, քան «Լուսին—1» ԱՄԿ-ի մագնիսաչափերը: Մագնիսական դաշտի բացակայության պատճառով Լուսինը զուրկ է նաև ճառագայթային գոտիներից: «Լուսին—2» ԱՄԿ-ի թռիչքի գիտական կարևորագույն նվաճումներից մեկը միջմոլորակային տարածքի համեմատությամբ լուսնամերձ տարածությունում գազային բաղադրատարրի որոշ ավելացման հայտնաբերումն է:

«Լուսին—2» կայանի թռիչքից մեկ ամիս չանցած, Երկրի առաջին արհեստական արբանյակի արձակման երկրորդ տարեդարձի օրը՝ 1959 թ. հոկտեմբերի 4-ին, դեպի Լուսին արձակվեց նոր ԱՄԿ՝ «Լուսին—3»-ը (278,5 **կգ** քաշով): Այդ կայանի առջև դրված էր դժվարագույն և չափազանց հետաքրքրական խնդիր. նա պետք է շրջանցեր Լուսինը, լուսանկարեր դրա՝ Երկրից չերևացող մասը, մշակեր լուսանկարչական ժապավենը, ապա երկրագնդին մոտենալով, հեռուստատեսության սկզբունքով, նկարները հաղորդեր Երկիր:

Լուսնի հակառակ կողմի լուսանկարահանման ենթակա շրջանն ընտրելիս սովետական գիտնականները հաշվի էին առել բազում հանգամանքները: Ամենից առաջ անհրաժեշտ էր լուսանկարահանել Լուսնի անտեսանելի մասի հնարավորին չափ մեծ հատվածը: Սակայն, դրա հետ մեկտեղ, լուսանկարներն ավելի ստույգ ու հեշտ վերծանելու, Լուսնի անտեսանելի մասի գոյացությունների դիրքն ու կոորդինատներն առավել ճիշտ որոշելու նպատակով կարևոր էր լուսանկարի մեջ ընդգրկել նաև Լուսնի տեսանելի կողմի որոշակի հատվածը:

Հոկտեմբերի 7-ին, երբ «Լուսին—3» ԱՄԿ-ը գտնվում էր Լուսնի հակառակ կողմում, նրա մակերևույթից 65,2 հազար **կմ** հեռավորության վրա, կայանը կողմնորոշող սարքավորումները նրա լուսանկարչական ապարատների 20 և 50 **սմ** ֆոկուսային հեռավորություն ունեցող օբյեկտիվներն ուղղեցին դեպի Լուսին, և սկսվեց լուսանկարահանումը, որը տևեց 40 րոպե: Լուսանկարները Երկրի ընդունման կայանները հաղորդվեցին՝ սկսած 470.000 **կմ** հեռավորությունից, դանդաղ հաղորդման ռեժիմով, իսկ Երկրին մոտենալիս՝ 40 հազար **կմ** հեռավորությունից, արագ հաղորդման ռեժիմով:

Ըստ «Լուսին—3» ԱՄԿ-ից ստացված լուսանկարների, կազմվեցին Լուսնի անտեսանելի կողմի առաջին սխեմատիկ քարտեզը և Լուսնի հակառակ կողմի քարտեզը: Հայտնաբերվեցին ավելի քան 400 գոյացություններ, որոնցից կարևորագույններին տրվեցին անվանումներ: Ճշգրտվեցին նաև Լուսնի սկավառակի ծայրի՝ երկրագնդից տեսանելի որոշ ծովերի, խառնարանների և այլ գոյացությունների կոորդինատներն ու եզրագծերը:

Լուսնի հակառակ կողմը, ինչպես պարզվեց լուսանկարներից, հիմնականում նման է Երկրից տեսանելի կիսագնդին: Կարևորագույն տարբերություններից նշենք, որ Լուսնի հակառակ կողմում ծովերը (հարթահատակ խոշոր չափերի գոգավորություններ) շատ քիչ են և մակերևույթի հիմնական մասը ծածկված է լեռներով ու խառնարաններով: Վերջիններիս խտությունն այստեղ ավելի մեծ է, քան տեսանելի կողմում:

Սովետական Միությունում 1965 թ. դեպի Լուսին արձակվեցին **«Լուսին—5», «Լուսին—6», «Լուսին—7»** և **«Լուսին—8»** ԱՄԿ-ներ, որոնցից յուրաքանչյուրը կշռում էր մոտ 1,5 տոննա: Դրանցից անհաջող ավարտվեց միայն «Լուսին—6» կայանի թռիչքը. ուղեծրի ճշգրտման նպատակով հրթիռային շարժիչն աշխատեց սահմանված ժամանակից ավելի և, փոխանակ Լուսնի վրա ընկնելու, կայանը 160 հազար **կմ** հեռացավ նրանից:

Լուսնի անմիջական հետազոտությունների որակապես նոր էտապի սկիզբ էր սովետական



**«Լուսին—9»** ԱՄԿ-ի թռիչքը: 1966 թ. հունվարի 31-ին, մեկնարկ (ստարտ) վերցնելով Սովետական Միությունից, երեք և կես օր անց՝ փետրվարի 3-ին, Մոսկվայի ժամանակով ժամը 21 անց 45 րոպե 20 վայրկյանին այն փափուկ վայրէջք կատարեց Լուսնի մակերևույթի վրա, Փոթորիկների օվկիանոսի արևելյան մասում: Գիտա-տեխնիկական մտքի խոշորագույն նըվաճում էր այդ, սովետական գիտնականների ու ինժեներների փայլուն հաղթանակը:

Լուսնի վրա մթնոլորտի բացակայության պատճառով վայրէջքի միակ միջոցն արգելակող հրթիռային շարժիչներն են, որոնց անհրաժեշտ վառելիքի քաշը գրեթե հավասար է լուսնային կայանի քաշի կեսին: Նման վայրէջքի հիմնական դժվարությունն այն է, որ տիեզերական ապարատի արագության վերջնական մարումը պետք է տեղի ունենա միայն ու միայն լուսնային մակերևույթի հետ հպման պահին:

«Լուսին—9» լուսնային կայանի վայրէջքը և դրանից ստացված լուսանկարների վերլուծությունն ապացուցեց, որ Լուսնի մակերևույթը պատած չէ մի քանի մետր հաստություն ունեցող փոշու շերտով (ինչպես ենթադրում էին որոշ գիտնականներ), այլ պինդ է ու կարող է դիմանալ տիեզերական ապարատների և մարդու ծանրությանը: Կայանից ստացված լուսանկարների ուսումնասիրությունից կարևոր տվյալներ ստացվեցին լուսնի մակերևույթի այդ հատվածի միկրոռելիեֆի և կառուցվածքի վերաբերյալ: Լուսանկարների բազմակողմանի վերլուծության հիման վրա որոշվեց նրանց վայրէջքի շրջանի ապարների կազմությունը, որոնք ենթադրվում են որպես արտավիժած բազալտային լավաներ:

1966 թ. Սովետական Միությունում դեպի լուսին արձակվեցին ևս չորս ԱՄԿ-ներ, որոնցից առաջին երեքը դարձան Լուսնի առաջին արհեստական արբանյակները, իսկ չորրորդը փափուկ վայրէջք կատարեց նրա վրա: Իոնային թակարդների միջոցով լուսնի շրջակայքում արձանագրվեցին շատ փոքր էներգիա (10 էլեկտրոնվոլտից ոչ ավելի) ունեցող դրական ու բացասական իոնների հոսանքներ: Պարզվեց նաև, որ արեգակնային պլազման Լուսնի ազդեցությամբ ենթարկվում է որոշակի «ալեկոծությունների», խախտվում է նրա համասեռ տեղաբաշխումը:

Լուսնի վրա մթնոլորտի բացակայությունը հնարավորություն է ընձեռում հարյուրավոր **կմ** բարձրություններից, ըստ գամմա ճառագայթման, հետազոտելու նրա մակերևութային ապարների քիմիական կազմը: «Լուսին—10» ԼԱԱ-ի վրա դրված գամմա-սպեկտրոմետրով առաջին անգամ դա գործնականորեն կիրառվեց: Ստացված արդյունքները վկայեցին, որ լուսնային ապարները պարունակում են թթվածին, մագնեզիում, ալյումինիում, կրեմնիում և քիմիական այլ տարրեր:

1965 թ. հուլիսի 18-ին արձակված «Զոնդ—3» կայանը, երկու օր հետո, շրջանցելով Լուսինը, 11,6 հազար **կմ** բարձրությունից լուսանկարեց Լուսնի՝ ինչպես տեսանելի, այնպես էլ անտեսանելի կողմը և այդ պատկերները հաղորդեց երկիր: «Լուսին—3» և «Զոնդ—3» ԱՄԿ-ներից ստացված լուսանկարներով հնարավոր եղավ կազմել Լուսնի՝ աշխարհում առաջին ամբողջական քարտեզը, գլոբուսը և նրա հակառակ կողմի լրիվ քարտեզը: Այդ նյութերը սովետական գիտնականներին հնարավորություն ընձեռեցին լուծելու Լուսնի՝ Երկրից անտեսանելի մասի հետ կապված մի քանի խնդիրներ:

* * *

Լենինյան հոբելյանական տարին նշանավորվեց սովետական տիեզերագնացության ակնհայտ նվաճումներով: Դրանցից մեկը «Լուսին—16» կայանի թռիչքի բարդ ծրագրի իրականացումն էր, որով լուծվեց տիեզերագնացության դժվարագույն գիտատեխնիկական պրոբլեմներից մեկը՝ բնահողի նմուշների հավաքումը արեգակնային համակարգության երկնային մարմնի վրայից և դրանց փոխադրումը երկիր՝ ավտոմատ սարքերի միջոցով: Այդ թռիչքը միաժամանակ ապացուցեց, որ այժմ Լուսնի և արեգակնային համակարգության ուսումնասիրման առավել նպատակահարմար ձևը սովետական տիեզերական ծրագրի ուղղությունն է— ավտոմատ կայանների օգնությամբ կատարվող հետազոտությունները: Այդ բացատրվում է նրանով, որ ավտոմատ կայանի թռիչքը սովորաբար 20—50 անգամ ավելի էժան է նստում, քան օդաչուավոր ապարատինը:

«Լուսին—16» ԱՄԿ-ն արձակվել է 1970 թ. սեպտեմբերի 12-ին: Նրա բերած երկնային բնահողի նմուշները մանրամասն հետազոտվել են մեր երկրի լաբորատորիաներում, հետազոտման արդյունքները լայնորեն հրապարակվել են: Այդ բնանմուշների մեջ հայտնաբերվեցին 70-ից ավելի քիմիական տարրեր: «Լուսին—16» ԱՄԿ-ի բնանմուշները շատ հատկություններով հիշեցնում են երկրային բազալտները: Դրանք շատ նման են նաև ամերիկյան «Ապոլոն—11», առավել ևս՝ «Ապոլոն—12» հրթիռանավերով երկիր բերված նմուշներին, որոնք նույնպես վերցվել են Լուսնի հրաբխային սառած լավաներով ծածկված «ծովային» շրջաններից:

Տարբեր եղանակներով որոշվել է նաև բերված նմուշների տարիքը, որը հասնում է մոտ 4,5 միլիարդի. այսպիսով, Լուսինն ու Երկիրը նույն տարիքն ունեն:

«Լունիկ—16» կայանի թռիչքը մեծ չափով խթանեց գիտության ու տեխնիկայի զարգացումը: Ինչպես նշում է անգլիացի ականավոր աստղագետ Բեռնարդ Լովելը, «...արդեն այս տասնամյակում այն բացեց ավտոմատիկայի օգնությամբ երկնային այլ մարմիններից, մասնավորապես Մարսից ապարներ բերելու ճանապարհը»:

«Լունիկ—16» ԱՄԿ-ով իրագործված բացառիկ փորձի համար ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային շնորհվեց Գալաբերի անվան միջազգային մրցանակ:

* * *

Տիեզերական հետազոտությունների սովետական ծրագրի կարևորագույն ուղղություններից մեկը, ինչպես արդեն նշել ենք, Լուսնի և արեգակնային համակարգության մոլորակների ուսումնասիրումն է՝ ավտոմատների օգնությամբ: Այդ բնագավառում նոր, խոշոր քայլ էր սովետական «Լունիկ—17» ԱՄԿ-ի օգնությամբ շարժվող գիտական փորձակայանի՝ լունախոդի իջեցումը Լուսնի վրա և դրա տասնմեկամսյա անխափան աշխատանքն այնտեղ:

«Լունախոդ—1»-ից ստացված գիտական նյութերը դեռևս ամբողջովին մշակված ու վերլուծված չեն. սակայն այժմ էլ վստահությամբ կարելի է ասել, որ հեռավորության վրա կառավարվող այդ ամենաֆանտաստիկ մեքենան ամբողջովին հեղաշրջեց տիեզերքի նվաճման գործը (տե՛ս «Օրոր», Ֆրանսիա):

1971 թ. հոկտեմբերի 4-ին ավարտվեց աշխարհում առաջին լուսնային ավտոմատ ինքնագնաց ապարատի՝ «Լունախոդ—1»-ի ակտիվ գործունեությունը: Դրա պատճառը նրա ջերմության իզոտոպային աղբյուրի ռեսուրսների սպառումն էր, որի հետևանքով լուսնային վերջին գիշերվա ընթացքում ապարատի ներսում ջերմությունը նվազեց: «Լունախոդ—1»-ը հորիզոնական հրապարակում կանգնեցվեց այնպես, որ նրա վրա տեղադրված և դեպի երկիր ուղղված լուսանդրադարձիչն ապահովի Լուսնի լազերային լոկացիայի բազմամյա անցկացումը երկրից: «Լունախոդ 1»-ի տասնմեկամսյա հաջող աշխատանքը Լուսնի մակերևույթի վրա, տիեզերական վակուումի, ճառագայթման, ջերմաստիճանների զգալի տատանումների (—150°—+120°) և տեղանքի բարդ ռելիեֆի պայմաններում, հաստատեցին ինքնագնաց ապարատը մշակելիս ընդունված ինժեներական լուծումների ճշտությունը և դրա բաղադրատարրերի, առանձին սիստեմների, գիտական սարքավորումների, կառավարման ու դիտարկման վերերկրյա միջոցների շահագործման մեծ հուսալիությունը:

«Լունախոդ—1»-ն անցավ 10540 մետր տարածություն, որով հնարավորություն ընձեռեց մանրամասն հետազոտելու Լուսնի մակերևույթը՝ 80 հազար քառակուսի մետր տարածքի վրա: Փորձակայանի հեռուստատեսային սիստեմների միջոցով ստացվեցին Լուսնի մակերևույթի 200-ից ավելի համայնապատկեր և 20 հազարից ավելի լուսանկար: Լունախոդի շարժման ուղեգծի ավելի քան 500 կետերում ուսումնասիրվեցին լուսնահողի վերին շերտի ֆիզիկա-մաթեմատիկական հատկությունները, իսկ 25 կետերում կատարվեց լուսնահողի քիմիական տարրալուծում: Երկար ժամանակվա ընթացքում պլանաչափորեն հետազոտվեցին տիեզերական ռենտգենյան ճառագայթումն ու Լուսնի ճառագայթային վիճակը: Լուսնաանդրադարձչի միջոցով բազմիցս անցկացվեց Լուսնի լազերային լոկացիա:

«Լունախոդ—1» սովետական ավտոմատ կայանի միջոցով ստացված գիտական ծավալուն բացառիկ ինֆորմացիան այժմ մանրակրկիտ մշակվում է մեր երկրի գիտա-հետազոտական հաստատություններում: Այդ ինֆորմացիայի նույնիսկ նախնական ուսումնասիրությունը գիտական շատ հայտնագործությունների հիմք հանդիսացավ:

Նյութերի քիմիական տարրալուծումից պարզվեց, որ «Լունիկ—17» ԱՄԿ-ի վայրէջքի շրջանում Անձրևների ծովի մակերևութային շերտը՝ ռեգոլիտը, բաղկացած է երկրային բազալտների տիպի հիմքային ապարներից: Մի անգամ ևս հաստատվեց, որ Լուսնի գոյության վաղ շրջանում այնտեղ բազալտային հրաբխականությունը բավականաչափ ինտենսիվ է եղել: «Լունախոդ—1»-ի աշխատանքի վայրում ստացվեց Լուսնի մակերևույթի տեղագրական և ձևաբանական առանձնահատկությունների քանակական գնահատականը: Մասնավորապես բացահայտվեց, որ խառնարանների ձևի փոփոխությունները և դրանց գոյության ժամանակը կախված են խառնարանի չափերից, որոնք բավական տարբեր են (տասնյակ սմ-ից մինչև մի քանի տասնյակ մետր և, վերջապես՝ մի քանի հարյուր կմ տրամագծերով): Որքան մեծ է խառնարանը, այնքան դանդաղ է այն փոփոխվում: Խառնարանների թիվը մնում է մոտավորապես հաստատուն. որքան նոր խառնարաններ են առաջանում, նույնքան քայքայվում են՝ մակերևութային էրոզիայի հետևանքով: Պարզվեց նաև, որ համեմատաբար երիտասարդ խառնարանները մեծ մասամբ առաջացել են ասուպների և լուսնի խոշոր խառնարաններից արտավիժած բեկորների հարվածներից:

«Լունախոդ—1»-ի աշխատանքի շրջանում լուսնահողը հիշեցնում է հրաբխային մանրահատիկ ավազախառն փոշի, որը 6—8 սմ հաստություն ունեցող փխրուն շերտով ծածկում է մայրական ապարները: Այդ շերտի վերին 1—2 սմ հաստությամբ շերտն ավելի փխրուն է: Ուղեգծի երկայնքով լուսնահողի մեխանիկական հատկություններն զգալիորեն փոփոխվում էին:

Ռենտգենյան հեռադիտակով ստացված տվյալները հաստատեցին գիտնականների կարծիքը՝ տիեզերական ռենտգենյան ճառագայթման ցրված փոնի մեջ մեր գալակտիկայի աննշան ներդրման մասին: Հայտնաբերվեցին գալակտիկայի հարթությունից դուրս գտնվող ռենտգենյան ճառագայթման առանձին աղբյուրներ: Ապացուցվեց նաև, որ գալակտիկական տիեզերական ճառագայթումն իզոտրոպ է. այսինքն՝ հավասարաչափ է գալիս տարածության բոլոր կողմերից:

«Լունիկ—17» ԱՄԿ-ի թռիչքի և «Լունախոդ—1»-ի ակտիվ գործունեության ընթացքում ռադիոմետրերը մի քանի անգամ գրանցեցին պրոտոնների, էլեկտրոնների և ալֆա մասնիկների հոսանքների ավելացում: Դրանք համընկան «Վեներա—7» ԱՄԿ-ի և Երկրի վրա նույն ժամանակ ստացված տվյալների հետ և հետևանք էին Արևի ակտիվության ավելացման:

Առանձնապես հետաքրքրական է «Լունախոդ—1»-ի դիտարկումներից մեկը: 1970 թ. դեկտեմբերի 10-ին դրա վրա դրված գործիքները արձանագրեցին արեգակնային ռենտգենյան ճառագայթների խիստ ուժեղացում և տվյալները հաղորդեցին երկիր: Երկու օր հետո, սկսած դեկտեմբերի 12-ից, Երկրի արհեստական արբանյակներն ու «Լունախոդ—1»-ը գրանցեցին Արևի կորպուսկուլյար ճառագայթումների նշանակալից (ընդհանուր փոնը մոտավորապես 100 հազար անգամ գերազանցող)— երկարատև ավելացում: Այդ ժամանակաշրջանում Երկրի վրա դիտվեցին մագնիսական ուժեղ փոթորիկներ: Այդ ամենն արդյունք էր դեկտեմբերի 10-ին և 11-ին Արևի վրա տեղի ունեցած հզոր բռնկումների: Այս փաստերը հանգեցնում են այն համոզման, որ համապատասխան սարքավորումներով Լուսնի վրա կարելի է կազմակերպել Արևի ծառայություն, այսինքն՝ «տիեզերական եղանակի» կանխատեսում: Լունախոդից ստացված տվյալները մեկ անգամ ևս հաստատեցին Լուսնի մակերևույթի թույլ ռադիոակտիվությունը:

Լուսնի և լուսնամերձ տիեզերական տարածության հետազոտությունները շարունակվեցին 1971 թ. սեպտեմբերի 2-ին և հոկտեմբերի 3-ին արձակված սովետական «Լունիկ—18» և «Լունիկ—19» ԱՄԿ-ների միջոցով, որոնցից վերջինը դարձավ Լուսնի արհեստական արբանյակ:

Լուսնի հետազոտություններն այժմ ևս բուռն թափով ծավալվում են: Համոզված կարելի է ասել, որ հետզհետե դրանք ավելի բազմակողմանի կդառնան, և գիտնականները հետաքրքրական շատ նոր բան կիմանան Երկրի միակ բնական արբանյակի՝ Լուսնի մասին: Այդ ամենը կծառայի մարդկության ընդհանուր շահերին:



# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՐԱՎԱԿԱՐԳԻ ԱՐԺԱՆԻ ՊԱՇՏՊԱՆԸ

Սովետական իշխանության առաջին տարիներին Հայաստանի նորաստեղծ կարմիր միլիցիայի մարմինների գործունեության հիմքում դրվեցին պետական կառավարման լենինյան սկզբունքները— աշխատավորական լայն մասսաների մասնակցությունը, դեմոկրատական ցենտրալիզմը, հեղափոխական օրինականության պահպանումը, կոմունիստական կուսակցության ղեկավար դերի ապահովումը:

Այդ սկզբունքները հետևողականորեն կենսագործվեցին Հայկական ՍՍՀ-ի զարգացման ողջ ընթացքում: Այդ մեր միլիցիայի ակտիվ ու հաջող գործունեության նախադրյալն էր: Ստեղծվելով աշխատավոր ժողովրդի նվիրված և ակտիվ ներկայացուցիչներից՝ Սովետական Հայաստանի միլիցիան իր գործունեության ընթացքում հենվում էր ժողովրդական լայն մասսաների վրա, նրանից օգնություն ստանում հասարակական կարգի պահպանման և հանցագործությունների դեմ մղվող պայքարում: Ժողովրդական մասսաների հետ միլիցիայի կապը հնարավորություն էր տալիս հաջողությամբ լուծելու հանրապետությունում հանրակարգի ու սոցիալիստական օրինականության ամրապնդման խնդիրները:

Աշխատավորները հետևում էին կարգուկանոնին, պահակություն անում, աջակցում միլիցիոներներին՝ ձերբակալելու և վնասազերծելու հանցագործներին: Նրանք միլիցիային այդպես օգնում էին նաև բանդիտիզմի, մաքսանենգության, սպեկուլյացիայի և այլ հանցագործությունների դեմ մղվող պայքարում:

Հայտնի են դեպքեր, երբ աշխատավորներն ինքնուրույնաբար հակահարված էին տալիս բանդիտների հարձակմանը: Այսպես եղավ Դիլիջանի գավառի Շամշադինի գավառամասում, որտեղ 1922 թ. հուլիսի 15-ին, լեռներից իջած Բալա-Քյազիմի խոշոր ավազակախումբը, գյուղական ակտիվի հետ երկար փոխհրաձգությունից հետո, մեծ կորուստներ կրեց և հարկադրված եղավ թաքնվել լեռներում[1]: Այդ ավազակախմբի դեմ միլիցիայի և տեղական բնակչության ձեռնարկած ակտիվ գործողություններից հետո հունիսի վերջին այն բաղկացած էր ընդամենը 4 հոգուց: Նոր ընդհարումներից վախենալով, ավազակախումբը հարկադրված փախավ այդ գավառամասից[2]:

Կա մի այլ օրինակ, 1922 թ. հուլիսին հիշյալ գավառի Կրասնոսելսկ գավառամասում Չեկայի, միլիցիայի, տեղական բնակչության համատեղ գործողությունների շնորհիվ վերացվեցին երեք ավազակախմբեր, բռնվեցին 8 խոշոր անասնագող-ռեցիդիվիստներ[3]: Ուշագրավ է, որ այդ պայքարում հայկական հիշյալ շրջանների աշխատավորները և եղբայրական Ադրբեջանի Ղազախի ու Թոուզի գավառների աշխատավորները հանդես էին գալիս համատեղ: Դրանից հետո հիշյալ գավառներում հանցագործությունները արագ կրճատվեցին:

Սովետական կարգերի ամրապնդումը համարելով իրենց սրբազան պարտքը,

1 Տե՛ս Հայկական ՍՍՀ ԿՊԱՀՀՍՇ, ֆ. 116 գ, ց. 3 գ, գ. 51, թ. 160:

2 Տե՛ս նույն տեղը:

3 Տե՛ս նույն տեղը, թ. 201:



աշխատավորները միլիցիային հաղորդում էին նախապատրաստվող և կատարված հանցագործությունների որջերի մասին, մասնակցում էին առևտրի կանոնների պահպանմանը, դրանց վերահսկողությանը, հայտնաբերում այդ կանոնները խախտողներին: Նրանք միլիցիային օգնում էին նաև խուլիգանության դեմ մղվող պայքարում: Այդ նըպատակով աշխատավորները հերթապահում էին զբոսավայրերում ու ակումբներում, խուլիգաններին ներկայացնում միլիցիայի քաղմաս, հարբածներին՝ բուժական զգաստացնող կետեր, սեփական նախաձեռնությամբ կարգուկանոն էին հաստատում կինոթատրոնների տոմսերի վաճառման կետերում և այլն: Միլիցիայի մարմիններին նման օգնությունը լավ արդյունք էր տալիս. կրճատվում էին խուլիգանությունը և հասարակական կարգը խախտող այլ հանցագործություններ:

Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին իսկ օրերին կազմակերպված միլիցիան այսպես ասած՝ «երկակի» ենթակայության տակ էր: Նա ենթարկվում էր համապատասխան հեղկոմին՝ որպես պետական իշխանության ժամանակավոր մարմնի, և՝ Բանվորա-գյուղացիական միլիցիայի վերադաս մարմնին: Այսպես, տեղամասային միլիցիան գործում էր տեղական հեղկոմի և գավառային միլվարչության ղեկավարությամբ: Հեղկոմները տեղերում միլիցիայի նկատմամբ վարում էին ընդհանուր ղեկավարություն, ուղղություն տալիս ու վերահսկում նրա գործունեությանը, ակտիվ մասնակցում միլիցիայի կադրերի ընտրությանն ու դասավորմանը: Օրինակ, գավառային միլվարչությունը տեղամասային միլիցիայի պետերին նշանակել կարող էր միայն տվյալ տեղամասի հեղկոմի համաձայնությամբ: Իսկ գավառային և քաղաքային միլիցիայի պետերին իրենց պաշտոններում նշանակում էր միլիցիայի գլխավոր վարչությունը, ընդ որում համապատասխան հեղկոմներին վերապահվում էր պատճառաբանված մերժման իրավունք[1]: Գավառային և քաղաքային միլիցիայի պետից ցածր պաշտոններ գրավող հրամկազմին, ինչպես և միլիցիոներներին ինքնուրույնաբար տեղափոխել կարող էր գլխավոր միլվարչության պետը, այդ մասին հաղորդելով համապատասխան հեղկոմին[2]: Քանի որ միլիցիայի կազմակերպումը կատարվում էր բացառապես Ներքգործժողկոմի նախատեսած պլանով, ուստի և առանց միլիցիայի գլխավոր վարչության գիտության հեղկոմների համապատասխան բաժինների վարիչները չէին կարող միլիցիան վերակառուցել, նրա պետերին պաշտոնափոխ անել կամ հեռացնել[3]:

1923 թ. կեսերին ներքին կառավարումը վերանվանվեց միլիցիայի բաժին: Դա ինչ-որ պարզունակ, մեխանիկական վերանվանում չէր, այլ վերոհիշյալ բաժինների աշխատանքի ծանրության կենտրոնը միլիցիայի վրա բարդելու ներքգործժողկոմատի ձգտումն էր՝ նպատակ ունենալով ուժեղացնել նրա գործունեությունը, բարձրացնել հեղինակությունը, կուլտուրական և նյութական մակարդակը:

Վերակառուցման այդպիսի կուրս վերցնելով, ներքգործժողկոմատը բոլոր գավգործկոմներին հղած իր 1923 թ. հունիսի 25-ի շրջաբերականում[4] նախազգուշացնում էր, որ նրանք պետք է ճիշտ պատկերացնեն այդ վերակառուցումը:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, սովետական իշխանության հաստատման պահից սկսած, անդադրում հոգատարություն էր ցուցաբերում սոցիալիստական օրինականության պահպանման ուղղությամբ, դրանում տեսնելով սոցիալիստական հասարակարգի ամրապնդման կարևորագույն պայմանը: Կուսակցությունը սովետական պետական ապարատի բոլոր պաշտոնատար անձերից պահանջում էր խստորեն և բարեխիղճ կերպով պահպանել սովետական օրենքները, թույլ չտալ քաղաքացիների նկատմամբ որևէ կամայականություն, իշխանության չարաշահում: Այդ պահանջն առաջին հերթին վերաբերում էր բանվորա-գյուղացիական միլիցիայի աշխատողներին,

1 Հայկ. ՍՍՀ, ԿՊԱՀՀՍՇ, ֆ. 116, ց. 1, գ. 538, թ. 244:

2 Տե՛ս նույն տեղը:

3 Նույն տեղը, ց. 3, գգ. 718, թ. 32, ց. 1, գ. 702, թ. 132:

4 Նույն տեղը, ց. 1, գ. 702, թ. 132:

որոնք իրենց գործունեությամբ ո՛չ միայն պետք է հանրապետությունում արմատավորեին ու ամրապնդեին հեղափոխական օրինականությունը, այլև իրենք իսկ պարտավոր էին «...սրբությամբ պահպանել սովետական իշխանության օրենքներն ու կարգադրությունները և բոլորով հետևել դրանց կատարմանը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 691)։

Անհրաժեշտ է նշել, որ բանվորա-գյուղացիական միլիցիայի գործունեությունն սկզբից ևեթ ընթանում էր հանրապետության Արդժողկոմատի չթուլացող վերահսկողությամբ. հիմնական խնդիրն էր՝ կանխել միլիցիայի աշխատողների անօրինական գործողությունները և օրենքով նրանց վերապահված լիազորությունների գերազանցումը քաղաքացիների իրավունքների երաշխիքներն ապահովելու ասպարեզում։

Հայաստանի սովետական միլիցիան իր կազմավորման առաջին իսկ օրից բարեխղճորեն է կատարել իր ֆունկցիաները և պետական մարմինների բոլոր հանձնարարությունները, թույլ չտալով սոցիալիստական օրինականության խախտումներ։ Միայն որոշ դեպքերում միլիցիայի առանձին աշխատողներ գերազանցելով օրենքով իրենց տրված լիազորությունները, թույլ էին տալիս օրինազանցություններ։

Բանվորա-գյուղացիական միլիցիան մեծ և չթուլացող ուշադրություն էր նվիրում քաղաքացիների օրինական իրավունքներին ու ազատությանը, նրանց անձի անձեռնմխելիությանը։ Կալանավորելիս, խուզարկելիս, ձերբակալելիս միլիցիայի մարմինները խստորեն և անշեղ ղեկավարվում էին քրեական և քրեական-դատավարության օրենքներով։

Նրանք հատուկ զգուշություն էին դրսևորում գյուղացիության և, առհասարակ, բնակչության գույքի բռնագրավումներ կատարելիս։ Այստեղ, ինչպես նշվում է Հայաստանի հեղկոմի և Մյասնիկյանի՝ Չեկայի ու միլիցիայի մարմիններին բազմիցս հղած նամակներում, անհրաժեշտ է «խստորեն պահպանել համոզման սահմանված ձևերն ու մեթոդները»[1]։ Ամեն մի շեղում դրանցից դիտվում էր որպես միլիցիայի աշխատակցի թույլ տված քրեական արարք և պատժվում խստորեն։

Միլիցիայի ստեղծման պահից սկըսած, նրա նկատմամբ կուսակցության ու կառավարության հսկայական ուշադրությունը նրա աշխատակիցներին բարյացակամ և զգայուն վերաբերմունք էին ներարկում ժողովրդական մասսաների նկատմամբ։ Այդ բանում կոմունիստական կուսակցությունը տեսնում էր հանրապետությունում հեղափոխական օրինականության արմատավորման գրավականը, այն ամուր հիմքը, որի վրա սովետական միլիցիան կարող էր կենսագործել հասարակական կարգի պահպանությունը և պայքարը հանցագործությունների դեմ։ Կուսակցությունը պահանջում էր միլիցիայի աշխատակիցներից՝ լինել նոր կարգի ազնիվ, բարեխիղճ, ակտիվ պահապաններ, մշտապես ընդլայնել ու ամրապնդել կապերն իրենց կողմից սպասարկվող տերիտորիայի բնակչության հետ, հարկ եղած դեպքում ցույց տալ առաջին անհետաձգելի օգնությունը։ «Միլիցիոները,— նշում էր Մ. Ի. Կալինինը,— սովետական իշխանության այն հայելին է, որով բնակչությունը դատում է սովետական իշխանության մասին»[2]։

Միլիցիայի առանձին աշխատակիցների կողմից սովետական քաղաքացիների օրինական իրավունքներն ու շահերը խախտելու, դրանք անտեսելու փորձերը մշտապես կանխվել ու պատժվել են հանրապետության միլիցիայի բաժնի կողմից։

Առանձնապես խստությամբ էին քննվում գավառամասային, քաղաքային, գավառային միլիցիայի պետերի թույլ տված սոցիալիստական օրինականության խախտման վերաբերյալ գործերը։ Օրինակ, իմանալով, որ Ղամարլուի գավառամասում գյուղացիներին նեղում և ինքնագլուխ կերպով նրանց 10—15 օրով կալանավորում են, կարճում են ժողդատարանին, հեղափոխական տրիբունալին ենթակա գործեր և այլն։ Միլիցիայի բաժնի պետը Երևանի գավառա-քաղաքային միլիցիայի պետին հղած նամակում առաջարկում է կատարել այդ գործի հույժ շտապ հետաքննություն և բոլոր նյութերը ներկայացնել իրեն։

---

[1] Տե՛ս Հայկ. ՍՍՀ ԿՊԱՀՀՍՇ, ֆ. 116, ց. 1, գ. 446, թ. 7։

[2] Տե՛ս Հայկ. ՍՍՀ, ԿՊԱՀՀՍՇ, ֆ. 116, ց. 1, գ. 670, թ. 24։



1926 թ. սկզբին ստեղծվեցին բանվորա-գյուղացիական միլիցիայի վարչական գործունեության նեղացման որոշակի նախադրյալներ։ Երկրում ապրանքաշրջանառության զարգացումը, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդումը պահանջում էին անձի և նրա իրավունքների անձեռնմխելիության առավել լայն երաշխիքներ։ Այդօրինակ միջոցառումներ անհրաժեշտ էին նաև սովետական դեմոկրատիայի զարգացման համար։ Սակայն դրանց չէր համապատասխանում Չեկայի, միլիցիայի մարմինների հատուկ լիազորությունների պահպանումը. մարմիններ, որոնք առաջին տարիներին սովոր էին կառավարել զինվորական հրամաններով։ Այն, ինչ ճիշտ էր և անհրաժեշտ որոշ պայմաններում, նոր իրադրության մեջ խանգարում էր սովետական իշխանության նըկատմամբ գյուղացիության վստահության ամրապնդմանը։ Այդ պատճառով էլ 1926 թ. վերակառուցվեցին Չեկան և միլիցիան, ռազմականից դարձան քաղաքացիական, տեղական մարմիններ, սահմանափակվեց միլիցիայի կողմից վարչական տույժերի կիրառումը, հատկապես տուգանքներ նշանակելը։

Պատմագիտական գրականության մեջ, մեր կարծիքով, ինչպես հարկն է հաշվի չի առնվում ռեֆորմի՝ Չեկայի և միլիցիայի վերակառուցման կապը նոր տնտեսական քաղաքականության խընդիրների, ամենից առաջ՝ տնտեսության զարգացման և բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի ամրապընդման հետ։ Սովորաբար, խոսելով այդ վերակառուցումների մասին, որոշ հեղինակներ սահմանափակվում են՝ դրանք կապելով սոսկ դասակարգային պայքարի ձևերի փոփոխման հետ։ Դա, իհարկե, որոշիչ չէ։ Մեզ թվում է՝ այդ հարցը ավելի հանգամանորեն և օբյեկտիվ է լուսաբանում Վ. Մ. Կուրիցինը՝ իր Նեպը և հեղափոխական օրինականությունը հոդվածում։ Նա ճիշտ է նըշում, որ «ռազմական ժամանակների արտակարգ պայմաններից խաղաղ շինարարության անցնելը, դասակարգային պայքարի ձևերի փոփոխությունն այստեղ առաջնակարգ նշանակություն ունեին, բայց չի կարելի անտեսել թե՛ երկրում տնտեսական շրջանառության զարգացման պահանջմունքները, թե՛ սովետական իշխանության քաղաքականության նկատմամբ գյուղացիության վստահությունը նվաճելու անհրաժեշտությունը»։

Բանվորա-գյուղացիական միլիցիայի նկատմամբ կոմունիստական կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերը դրսևորվել է զանազան ձևերով։ Դրանցից կարևորագույնն այն էր, որ կուսակցությունն էր որոշակի առաջադրանքներ տալիս, որոշում միլիցիայի մարմինների գործունեության գլխավոր ուղղությունները։

Դրա ապացույց կարող է ծառայել հետևյալ օրինակը։ Այսպես, 1923 թ. Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը ուղարկեց «Հրահանգ միլիցիայի աշխատանքի մասին առաջիկա ժամանակաշրջանում» փաստաթուղթը, որի մեջ միլիցիայի անձնակազմի լայն շրջանում քաղաքական աշխատանքն ուժեղացնելու, միլիցիայի կուսակցական աշխատողներից որակյալ կադրեր ստեղծելու և, ինչպես տարրական, այնպես և քաղաքական անգրագիտությունը վերացնելու նպատակով առաջարկվում էին մի շարք կոնկրետ միջոցառումներ։

Միլիցիայի ապարատի նկատմամբ կուսակցական կառավարման կարևորագույն ձև էին նաև կուսակցական վերահսկողությունն ու կատարման ըստուգումը։ Կուսակցությունն ստուգում էր միլիցիայի մարմինների աշխատանքը, բացահայտում թերությունները և օգնում դրանց վերացմանը։

Կոմունիստական կուսակցությունը կոմունիստների, միլիցիայի բոլոր աշխատողների շրջանում անհանդուրժողական վերաբերմունք էր պատվաստում բյուրոկրատիզմի դրսևորումների հանդեպ, ծավալում սկզբունքային քննադատություն և ինքնաքննադատություն։

Կոմունիստական կուսակցությունն անդադրում հոգատարություն է ցուցաբերել և ցուցաբերում է միլիցիայի ապարատի, նրա գործունեության կատարելագործման, հասարակական կարգի պահպանման նկատմամբ և հանցագործությունների դեմ մղվող պայքարում նրա դերի բարձրացման ասպարեզում։

Ն. Ա. ԱՊՅԱՆ




# ՀԱՐԱԶԱՏ ՁԱՅՆԵՐ ՄԱՐՏԱԴԱՇՏԻՑ

## (ՌԱԶՄԱՃԱԿԱՏԱՅԻՆ ՌՈՒՍԱԿԱՆ ԹԵՐԹԵՐԻ ԷՋԵՐԻՑ)

*Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակի առթիվ Երևան քաղաքում տեղի ունեցած ընդունելությունում՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց.*

— Հայ ժողովրդի հետ իմ ծանոթությունը սկսվել է Հայրենական մեծ պատերազմի օրերին: Ինձ վիճակվել է այն ժամանակ ճանաչել մեր սովետական հայրենիքին, սոցիալիզմի ու կոմունիզմի գործին անսահմանորեն նվիրված հայ ժողովրդի բազում քաջարի, խիզախ զավակների: Նրանք մարտիկներ էին, սպաներ, գեներալներ... Եվ այն ժամանակ, դաժան ճակատամարտերի օրերին ես ճանաչեցի հայ ժողովրդի սքանչելի հոգին:

*Երբ թերթում ես տասնյակ տարիներ առաջ, կռվի ծանր պայմաններում լույս տեսած կարմիր բանակային (ռազմաճակատների և բանակների) լրագրերը, հանդիպում ես շատ ու շատ նյութերի, որոնցում սրտառուչ և հուզիչ խոսքերով գրված են՝ ֆաշիստական հորդաների և ճապոնական միլիտարիստների դեմ մղված ճակատամարտերում, մեր հզոր զինված ուժերի շարքերում գտնըվող հայ ռազմիկների կատարած սխրանքների մասին:*

*1941 թվականի երկրորդ կեսն էր:*

*Համառ մարտեր էին ընթանում Սովետական Մերձբալթյան ափերում: Հիտլերյան ծովահենները փորձում են դուրս գալ ցամաք: Բաց ծովում նրանց դեմ մենամարտում են սովետական ծովային ուժերը: Լեյտենանտ Ակոպովը հրաման է ստանում՝ իր նավակով (կատերով) ծըխաքողարկել մեր ռազմանավերի մարտական գործողությունը: Խիզախ նավավարն արհամարհելով մահը, ջանում է անթերի կատարել հրամանատարի առաջադրանքը: Ֆաշիստները նկատելով արագընթաց նավակը նրա վրա են կենտրոնացնում հրետանային կրակը... Թշնամու արկերը պայթում են նավակի շուրջը, դեպի երկինք են ժայթքում ջրի հսկայական շատրվանները: Ակոպովն իր նավակով մրրկահավի նման լողում է ալեկոծ ծովի վրա, մերթ սուզվում հորձանքների մեջ, մերթ երևում ալիքների վրա, մաքառելով մահվան դեմ:*

*Հակառակորդի արկերից մեկը պայթում է նավակին շատ մոտ: Ջրի հսկայական ալիքները կուլ են տալիս նավն ու խիզախ նավաստուն:*

*Բալթյան նավատորմի թերթը բարձր գնահատելով հայ նավաստու արիությունը, իր առաջնորդողներից մեկում գրում է.*

«...Լեյտենանտ Ակոպովի սխրանքը հայրենիքին անձնուրացորեն նվիրվածության վառ օրինակ է, հաղթանակի նկատմամբ աներեր հավատքի փայլուն վկայություն» *(տե՛ս* «Красный балтийский флот», *1942, հունիսի 4):*

*Հարավում, Սևծովյան նավատորմում փառաբանվել է օդաչու Ա. Ղասաբյանցը: 1943 թ. մայիսի 28-ին* «Красный Черноморец» *թերթը տպագրել է նրա լուսանկարը՝ մարտական պոստում, որի տակ գրված է.*

«Գվարդիայի լեյտենանտ Ա. Ղասաբյանցը հաջողությամբ կատարել է ավելի քան 250 մարտական թռիչք»:

*Անցած մեկ ամիս, նույն թերթում նորից տպագրել են երկնասլաց բազեի նկարը, ներքեվում տպված այս քառյակը.*

Гасабянц увидел ганса,
Ганс бежит от Гасабянца.
Гасабян за ним помчится.
Ганс, как факел загарится.

*Սև ծովի ափերին, ծովային հետևակայինների շարքերում շատ ու շատ հայ ռազմիկներ, հայրենիքի անունը շուրթերին կռիվ են մղել ոսոխի դեմ, հաղթանակի հավատը սրտերում վառ պահած: Նրանցից մեկը եղել է կրտսեր լեյտենանտ Այվազյանը: Զինթղթակիցը հանդես գալով նավատորմային թերթում, նրա մասին գրում է.*

...Այվազյանի ավտոմատավորների դասակի դեմ ֆաշիստները գրոհի էին դուրս բերել մի մեծ խումբ: Կատաղած թշնամին բոլոր ճիգերը գործադրում էր ճափանցել մեր դիրքերը: Զինվորները ավտոմատներից վարած հերթազարկերով ու նռնակներով ետ մղեցին հիտլերականների ձեռնարկած մի քանի գրոհը: Այվազյանի քաջագործության շնորհիվ մերոնք հյուծեցին թշնամու ուժերը, այնուհետև իրենք անցան հակագրոհի... վիրավորված հրամանատարին մարտի դաշտից դուրս բերեց զինվոր Պոչինկինը: Թշնամին ետ մղվեց իր ելման դիրքերը... *(տե՛ս* «Красный Черноморец», *1942 թ., սեպտեմբերի 14):*

*«Տանկում երեքն են». այսպես է վերնագրված Լենինգրադի ռազմաճակատային թերթում տպագրված զինթղթակից Մ. Մալկիերի լրագրային հաղորդումը:*

«Տանկում եղել են երեքը. մեքենայի հրամանատար՝ հայ Ավետիսյանը (Ե. Ա.), մեխանիկ վարորդ՝ ուկրաինացի Զալկոն, աշտարակի հրաձիգ՝ ռուս Բիչկովը... Խիզախների եռյակը 1941—1942 թթ. ձմեռը մարտնչել է Բ. բնագծում: Նրանք համարձակորեն իրենց մեքենայով բազմիցս սրընթաց թափանցել են հակառակորդի մարտակարգերի մեջ, ֆաշիստներին մահաբեր հարված հասցրել հենց իրենց խրամատներում: Այդպիսի խիզախությամբ են նրանք կռվել նաև վերահաս ձմռանը *(տե՛ս* «На страже Родины», *1942 թ. դեկտեմբերի 30):*

*Վոլխովյան ռազմաճակատի հատվածներից մեկում հետախույզներ Առաքելյանը, Երրալիձեն և Կլիգյուկը մի քանի օր ուշադիր, արծվատես աչքերով հետևում են, թե հակառակորդը որտեղ է պահեստավորում իր ռազմապաշարը: Նրանք իրենց նկատածի մասին ճշտությամբ հաղորդում են հրամանատարությանը: Թնդանոթաձիգներին առաջադրանք է տրվում՝ կրակի տակ առնել պահեստը:*

...Անվրեպ էին կրակում հրետանավորները,— *գրում է քաղղեկ Գ. Կուլինիչը,*— հակառակորդի ռազմապաշարի պահեստի վրա անընդհատ թափվում էին արկերը: Դիտակետից հաղորդեցին, որ հիտլերականների պահեստը այրվում է, հուժկու պայթյունից նրանց դիրքերը քանդվում են... *(տե՛ս* «Фронтавая правда», *1942 թ., հունիսի 21):*

*Լենինգրադի շրջապատումը ճեղքված էր, մեր զորագնդերը սրընթաց գրոհում էին հիտլերականների վրա, ազատագրում հայրենի հողը: Զորամասերից մեկում, գումարտակի ձախ թևում գործող վաշտի հրամանատար Գ. Սարգիսովն իր հնարամտությամբ, անձնական քաջությամբ ապահովում է մարտի հաղթանակը: Ռազմաճակատային թերթն իր հերթական համարներից մեկում տպագրել է Սարգիսովի դիմանկարը, զետեղել մայոր Վ. Կոզլովի հոդվածը:*

...Գվարդիայի ավագ լեյտենանտ Սարգիսովը,— *գրում է թղթակիցը,*— գործելով հմտորեն, իր քաջ զինվորներով հիտլերականների դեմ մղվող մարտում հաղթեց: Կռվի դաշտում ցուցաբերած արիության և վարպետության համար Գրիգորի Արտեմի Սարգիսովը պարգևատրվել է կարմիր աստղ շքանշանով և Լենինգրադի պաշտպանության համար մեդալով *(տե՛ս* «На страже Родины», *1944 թ., մայիսի 7):*

*Ուկրաինական երրորդ ռազմաճակատի* «Советский воин» *թերթի 1944 թվականի նոյեմբերի 29-ի համարի երրորդ էջը ամբողջովին հատկացված է Հայաստանում սովետական կարգերի հաստատման 24-րդ տարեդարձին և կռվի դաշտում հայ ռազմիկների կատարած սխրանքների դրվատումին: Մայոր Վարդան Ղազանչյանը իր հոդվածում հակիրճ անդրադառնալով հայ ժողովրդի անցյալին, նշում է, որ սովետական կարգերը նրան փրկեց ֆիզիկական ոչնչացումից, նրա առջև բացեց երջանիկ կյանքի լայն ճանապարհ: Ահա թե ինչու հայ ռազմիկները, սովետական մյուս ժողովուրդների զավակների հետ կրծքով են պաշտպանում մեծ Հոկտեմբերի նվաճումները,*

...Հարյուրավոր ու հազարավոր հայ ռազմիկներ,— *գրում է հոդվածի հեղինակը,*— իրենց անունը փառքով պսակեցին ուկրաինական և մոլդավական սովետական հանրապետությունների ազատագրման համար մղված մարտերում:

*Թերթի էջում տպագրված են ավագ լեյտենանտ Ա. Իգիթյանի, մայոր Ա. Հովհաննիսյանի դիմանկարները, որոնք արիության ու խիզախության համար պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով:*

*Քառասունհինգ թվականի սկզբներին կատաղի կռիվներ են եղել Բուդապեշտի փողոցներում: Սովետական քաջարի ռազմիկները, կոտրելով հիտլերականների դիմադրությունը, թաղամաս առ թաղամաս ազատագրել են քաղաքը: Համառ մարտեր են եղել մի մեծ գործարանի համար:*

բիլների արտադրության զարգացումն է: 1970 թ. «Տոյո կոհյո» ընկերությունը այդպիսի շարժիչներով 66 հազ. ավտոմեքենա թողարկեց և սկսեց դրանց արտահանումը ԱՄՆ: Ամերիկյան ավտոմոբիլային ընկերությունները նույնիսկ հետաքրքրություն են հանդես բերում ճապոնական ֆիրմաների տեխնիկական նվաճումների հանդեպ: ԱՄՆ-ի նախաձեռնությամբ երկու երկրների միջև հատուկ համաձայնագիր կնքվեց փորձնական, խիստ անվտանգ, մարդատար ավտոմոբիլների համատեղ ստեղծման վերաբերյալ:

Ավտոմոբիլային արդյունաբերության ոլորտում մասսայական կոնվեյերային արտադրության անցնելն ու կուտակման արագ աճն են խոշոր մոնոպոլիաների առաջացման կարևորագույն նախապայմանները: 60-ական թվականների երկրորդ կեսերին գերիշխող դիրք գրավեցին «Տոյոտա ձիդոսյա», «Նիսսան ձիդոսյա», «Միցուբիսի ձյուկոհյո», «Տոյո կոհյո» և «Հոնդա հիկեն կոհյո» ընկերությունները, որոնք ապահովում են ավտոմեքենաների արտադրության ավելի քան 80 տոկոսը: Ավտոմոբիլների առաջատար համաշխարհային արտադրողների թվում դասվեցին ճապոնական ֆիրմաները: 1962 թ. աշխարհի 20 խոշորագույն ավտոմոբիլային կոնցեռններում երկուսը ճապոնական էին՝ «Տոյոտան» և «Նիսսանը» (համապատասխանաբար՝ 11-րդ և 15-րդ տեղը), իսկ 1968 թ. արդեն 6-ը՝ «Տոյոտան», «Միցուբիսին», «Նիսսանը», «Հոնդա հիկեն», «Տոյո կոհյոն» և «Իսուձու ձիդոսյան»: Այդ բոլոր ֆիրմաները ևս կապիտալիստական աշխարհի ոչ-ամերիկյան 200 խոշորագույն արդյունաբերական մոնոպոլիաների շարքում են:

Ճապոնական ընկերությունները մի շարք կարևորագույն ցուցանիշներով դարձել են ո՛չ միայն արևմտաեվրոպական, այլև ամերիկյան ավտոմոբիլային հսկաների լուրջ մրցակիցները: Արտադրության ընդհանուր ծավալով «Տոյոտա ձիդոսյան» անշեղորեն գերազանցեց հետևյալ հանրահայտ մոնոպոլիաներին. ֆրանսիական «Ռենոյին», անգլիական «Բրիտիշ լայլենդ մոտորին», իսկ 1970 թ. նաև՝ ամերիկյան «Կրայսլերին»: Ավտոմոբիլների համաշխարհային արտադրողների շրջանում ճապոնական ընկերությունները ամենաշահութաբերներից են: «Տոյոտայի», «Նիսսանի» և «Տոյո կոհյոյի» շահույթների նորման (1969 թ. համապատասխանաբար՝ 4,7, 4,4, 4,1 տոկոս էր) գերազանցում է բոլոր արևմտաեվրոպական ավտոմոբիլաշինարարներին, ինչպես նաև ամերիկյան «Ֆորդ մոտորի» և «Կրայսլերի» նորման:

*Աղյուսակ 2*

Կապիտալիստական աշխարհի 20 խոշորագույն ավտոմոբիլային մոնոպոլիաները (1969 թ.)

| Տեղը 20 խոշորագույնների մեջ | Ընկերության անունը | Շրջանառությունը (մլն դոլ.) | Զուտ շահույթը (մլն դոլ.) | Զբաղվածների թիվը (հազ.) | Ավտոմոբիլների թողարկման ծավալը (հազ. հատ) |
|---|---|---|---|---|---|
| 1. | «Ջեներալ մոտորս» (ԱՄՆ) | 24295 | 1711 | 794 | 5255 (3592)[1] |
| 2. | «Ֆորդ մոտոր» (ԱՄՆ) | 14756 | 547 | 436 | 2803 (2644) |
| 3. | «Կրայսլեր» (ԱՄՆ) | 7052 | 89 | 235 | 1558 (1452) |
| 4. | «Ֆոլքսվահենվերկ» (ԳՖՀ) | 3537 | 127 | 168 | 1640 (1621) |
| 5. | «Բրիտիշ լայլենդ մոտոր» (Անգլիա) | 2328 | 47 | 196 | 1016 (962) |
| 6. | «Դայմլեր-Բենց» (ԳՖՀ) | 2307 | 62 | 136 | 348 (387) |
| 7. | «ՖԻԱԹ» (Իտալիա) | 2280 | 22 | 171 | 1406 (1644) |
| 8. | «Տոյոտա ձիդոսյա» (Ճապոնիա) | 2273 | 107 | 48 | 1471 (1609) |
| 10. | «Միցուբիսի ձյուկոհյո» (Ճապոնիա)[2] | 2101 | 52 | 93 | 337 (457) |
| 11. | «Նիսսան ձիդոսյա» (Ճապոնիա) | 2023 | 88 | 70 | 1167 (1396) |
| 18. | «Հոնդա հիկեն կոհյո» (Ճապոնիա) | 644 | 15 | 16 | 365 (393) |
| 19. | «Տոյո կոհյո» (Ճապոնիա) | 641 | 26 | 38 | 428 (429) |
| 20. | «Իսուձու ձիդոսյա» (Ճապոնիա) | 600 | 14 | 20 | 155 (146) |

[1] *Փակագծերում՝ 1970 թ. թողարկումն է:*

[2] *1970 թ. ավտոմոբիլների արտադրությամբ զբաղվող դրա բաժանմունքը առանձնացվեց իբրև ինքնուրույն ֆիրմա: Ավտոմոբիլների տեսակարար կշիռը «Միցուբիսի ձյուկոհյոյի» վաճառքի ընդհանուր ծավալում, 1969 թ. կազմեց մոտ 27 տոկոս:*



Պետությունն ամեն միջոցներով նպաստում էր այդ բնագավառում մի քանի խոշոր մրցունակ մոնոպոլիաների ստեղծմանը: Ավտոմոբիլային ընկերությունների միավորումը խրախուսելու նպատակով արտաքին առևտրի և արդյունաբերության մինիստրությունը նախատեսավ մի շարք արտոնություններ, այդ թվում և վարկավորման ասպարեզում: Այժմ «Տոյոտա ձիդոսյայի» գլխավորած խմբի, ուր մտնում են «Դայխացու կոհյո», «Սուձուկի ձիդոսյա» և «Հինո դեյձերու» ֆիրմաները, բաժինը կազմում է ավտոմոբիլների արտադրության ավելի քան 42 տոկոսը: Դրան փոքրինչ զիջում է «Նիսսան ձիդոսյա», դրա ֆիլիալները և «Ֆուձի ձյուկոհյո» ընկերությունը միավորող «Նիսսան» խումբը: Այդ երկու խումբը, ամբողջությամբ վերցրած, 1970 թ. արտադրեցին ավտոմոբիլների ողջ թողարկի 73 տոկոսը:

## ԹՌԻՉՔ ՕՎԿԻԱՆՈՍԻ ՎՐԱՅՈՎ

Երբ 1960 թ. Ճապոնիան արտահանում էր ընդամենը 22 հազ. ավտոմոբիլ, ապա 1970 թ. արդեն՝ 1.087 հազ.: Ավտոմեքենաների համաշխարհային կապիտալիստական արտահանման Ճապոնիայի բաժինը (համաշխարհային արտահանման համար ընդունված է ԱՄՆ-ից, Ճապոնիայից, Կանադայից, Անգլիայից, ԳՖՀ-ից, Ֆրանսիայից, Իտալիայից և Շվեդիայից արտահանվող ավտոմոբիլների ծավալը՝ քանակական արտահայտությամբ, որոնց բաժինը միջազգային առևտրի ոլորտը մտնող ավտոմեքենաների ավելի քան 95 տոկոսն է) 0,8-ից հասավ 15 տոկոսի: Այժմ Ճապոնիան աշխարհում երրորդ տեղում է, զիջելով միայն ԳՖՀ-ին և չնչին չափով՝ Ֆրանսիային:

Ճապոնիայի արտահանության հիմնական հոդվածներից են դարձել ավտոմոբիլները: 1970 թ. տրանսպորտային մեքենաշինության արտադրանքի արտահանության նրանց բաժինը 43 տոկոս էր և բոլոր մեքենաների ու սարքավորումների գրեթե 19 տոկոսը: Խոշորագույն արդյունաբերական արտահանող ֆիրմաների ցուցակը գլխավորում են ավտոմոբիլային «Տոյոտան» և ««Նիսսանը»:

Արդյունաբերական զարգացած կապիտալիստական մյուս երկրներից զգալի չափով ուշ սկսելով համաշխարհային շուկայի գրավումը, Ճապոնիան եռանդագին լրացնում է բաց թողածը: Ավտոմոբիլների անմիջաբար արտահանման հետ մեկտեղ, նրա ընկերությունները մեծ չափերով գործադրում են ավտոհավաքման արդյունաբերության մեջ ներմուծող երկրների ներդրվող կապիտալի արտահանումը: Առանձնապես զգալի է ճապոնական ներդրած կապիտալն ասիական երկրների ավտոհավաքման արդյունաբերության մեջ: Ավտոհավաքման գործարանները բանում են Բիրմայում, Ինդոնեզիայում, Հարավային Կորեայում, Ֆիլիպիններում, Ցեյլոնում, Տայլանդում, Հնդկաստանում, Մալայզիայում, Լատինական Ամերիկայի երկրներում: Ճապոնական կապիտալի կողմից, մասնակիորեն կամ ամբողջովին, վերահսկվող հավաքման գործարաններ են կառուցվել Ավստրալիայում, Նոր Զելանդիայում, Հարավ-Աֆրիկյան Հանրապետությունում, Պորտուգալիայում, Կանադայում:

Ճապոնական առևտրական ստրատեգիայում առանձնահատուկ տեղ է գրավում ամերիկյան շուկան: ԱՄՆ-ի, որը ճապոնական ավտոմեքենաների հիմնական գնորդն է դարձել, ավտոմեքենաների արտահանման բաժինը 1970 թ. ըստ արժեքի 39 տոկոս է, իսկ ըստ քանակի՝ 41: Երբ 1965 թ. ԱՄՆ է բերվել ընդամենը 24 հազ. ավտոմոբիլ, ապա 1970 թ. արդեն՝ 443 հազ. (ամերիկյան արտահանումը Ճապոնիա 1970 թ. կազմել է միայն 5,5 հազ. հատ): Մարդատար ավտոմեքենաներն են ԱՄՆ-ի արտահանության հիմքը— դա ամերիկյան շուկային մատակարարվող մեքենաների ընդհանուր քանակի մոտ 84 տոկոսն է: ԱՄՆ-ում վաճառվող մարդատար ավտոմեքենաների քանակով ճապոնական «Տոյոտա» և «Նիսսան» ընկերությունները զիջում են միայն արևմտագերմանական «Ֆոլքսվագենին»: Վերջին տարիներին սկսեցին մարդատար ավտոմեքենաներ արտահանել ԱՄՆ ճապոնական և այլ ֆիրմաներ. «Միցուբիսի ձյուկոհյոն», «Տոյո կոհյոն», «Հոնդա հիկեն կոհյոն» և «Ֆուձի ձյուկոհյոն»:

Ճապոնական ընկերությունները մեծ չափով ավտոմասեր ու հանգույցներ են մատակարարում ԱՄՆ-ին: Դրանց արտահանումը 1970 թ., 1965 թ. համեմատ, ավելանալով ավելի քան 19 անգամ, հասավ 11,5 *մլրդ* իենի: Ճապոնական մասերի արտահանման աճը խթանվում է վերջիններիս ցածր գներով (միջին հաշվով դրանք 15 տոկոսով ցածր են ամերիկյանից) և արտադրանքի բարձր որակով: Ճապոնական թողարկի մասերը առավել մեծ չափերով են օգտագործվում «Ջեներալ մոտորս», «Ֆորդ մոտոր» և «Կրայսլեր» ընկերությունների կողմից արտադրվող ավտոմոբիլները կոմպլեկտավորելիս:

Ո՞րն է ճապոնական ավտոմոբիլային ընկերությունների ԱՄՆ-ի շուկան հաջողությամբ մուտք գործելու գաղտնիքը: Ամենից առաջ, նրանք հմտորեն և արագ, քան նրանց արևմտագերմանական մրցակիցները, արձագանքեցին 60-ական թվականների կեսերին ամերիկյան ավտոմո-

բիլային շուկայի կոնյուկտուրայի փոփոխությանը: Զանգվածային, բանկ, հզոր շարժիչներ ունեցող մարդատար ավտոմեքենաներով շուկան հագեցնելը հանգեցրեց առավել էժան, փոքրալիտրաժ մեքենաների պահանջարկի մեծացմանը: Այն հանգամանքը, որ ամերիկյան մոնոպոլիաների «մեծ եռյակը» շահագրգռված չէր այդպիսի մեքենաների բողարկմամբ[1], դրանց ներմուծումն սկսեց արագորեն ավելանալ: Դրանից էլ հենց օգտվեցին համեմատաբար էժան մակրո և փոքրալիտրաժ մարդատար ավտոմեքենաների արտադրության մեջ մասնագիտացող ճապոնական ընկերությունները: Միաժամանակ, նրանք լայն ուշադրություն նվիրեցին իրենց մեքենաների տեխնիկական սպասարկման կազմակերպմանը և ճյուղավորված վաճառահանման ցանցի ստեղծմանը: ԱՄՆ դուստր-առևտրական ֆիլիալների հիմնադրումից զատ, ճապոնական ընկերություններն իրենց վաճառահանած ավտոմեքենաներով խիստ հրապուրում են ամերիկյան ֆիրմաներին: Օրինակ, 1970 թվականի վերջերին «Նիսսան ծիդոսյայի» վաճառահանման ցանցը ուներ 900, իսկ «Տոյոտա ծիդոսյայինը»՝ 850 մեծածախ առևտրականներ:

Ճապոնական ավտոմոբիլային ընկերությունների հաջողությունը մեծ չափով պայմանավորված է նաև նրանց արտադրանքի համեմատական էժանությամբ, որին խիստ նպաստում են, մյուս զարգացած կապիտալիստական երկրների համեմատությամբ, բանվորական ուժի վրա կատարվող առավել պակաս ծախսերը: Ճապոնիայի ավտոմոբիլային արդյունաբերության մեջ աշխատավարձը մի քանի անգամ ցածր է, քան ԱՄՆ-ում և էականորեն զիջում է Արևմտյան Եվրոպայի մակարդակին: Պակաս կարևոր դեր չի խաղում նաև արտասահմանյան գների քաղաքականությունը: Ճապոնական առաջատար ֆիրմաները լայնորեն օգտագործում են արտահանման ֆինանսավորման այնպիսի զաղտնի ձևը, ինչպիսին արտահանման գների նախամտածված իջեցումն է ներքին շուկայի բարձր գների պահպանման հաշվին:

## ԴՈԼԱՐԻ ՀԱԿԱԳՐՈՀԸ

Ճապոնական ավտոմոբիլային մոնոպոլիաները հազիվ թե կարողանային համաշխարհային շուկայում զգալի հաջողությունների հասնել, առանց երկրի ներսում արտասահմանյան մրցակցությունը առ ոչինչ դարձնող խիստ սահմանափակումների: Ընդհուպ մինչև 1965 թ., ըստ էության, օտարերկրյա ավտոմոբիլների ներմուծումն արգելակող բնույթի քանակական սահմանափակումներ էին կիրառվում: 1965 թ. չեղյալ հայտարարելով դրանք, կառավարությունը, միաժամանակ, բարձրացրեց մաքսատուրքերը: Դրա հետևանքով ներմուծված ավտոմեքենաների գները գրեթե կրկնակի բարձրացան: Ինչպես և առաջ, ավտոմոբիլային արդյունաբերության մարզում չարունակում էր, գործնականում, արգելքի տակ մնալ օտարերկրյա ներդրված կապիտալը:

Սակայն օտարերկրյա կապիտալը ավելի ու ավելի համառորեն էր պահանջում վերացնել այդ ոլորտը պատնեշող բոլոր արգելքները: Ամերիկյան «Յունայտեդ Ստեյտս նյուս էնդ Ուորլդ ռիպորտ» հանդեսը գրում է. «Ամերիկյան ընկերություններն ամենից ավելի անհանգստացած են այն բանով, որ իրենք ամենևին մաս չունեն անընդհատ բարգավաճող եկամտաբեր այդ ձեռնարկություններում: Դետրոյտյան ֆիրմաները ֆիլիալներ ունեն բոլոր մայրցամաքներում: Նրանք ավտոմոբիլ են հավաքում կամ արտադրում աշխարհի 30 երկրներում... Ճապոնիան բոլորովին այլ բան է: Արդյունաբերական որևէ ազգ այդքան ջանադիր չէր դիմադրում ամերիկյան ավտոմոբիլային ֆիրմաների ներթափանցմանը, քանի դեռ նրա սեփական արդյունաբերությունը, չհասունացավ, դարձավ համաշխարհային հզոր մրցակից» („O. S. News and World Report" 5, VIII, 1968, p. 63): Պահանջելով ավտոմոբիլային արդյունաբերության մեջ ներմուծման և օտարերկրյա ներդրված կապիտալի լիբերալիզացիա, ամերիկյան կապիտալը հեռավոր նպատակներ էր հետապնդում: ԱՄՆ-ի մոնոպոլիաները հույսեր էին տածում ո՛չ միայն լրացուցիչ շահույթ կորզելու իրենց արտադրանքի արտահանումից, այլև գնելու ավտոմոբիլային ձեռնարկությունների մի մասը, դրանով ճապոնական առևտրական էքսպանսիայի վրա ակտիվ ներգործելու հնարավորություն ստեղծելու, այն ԱՄՆ-ի համար անվտանգ հունով տանելու:

Ճապոնա-ամերիկյան հակասությունները առանձնահատուկ սրությամբ դրսևորվեցին 1969 թ. հուլիսին կայացած առևտրական և տնտեսական հարցերին նվիրված խառնակազմ կոմիտեի յոթերորդ սեսիայում: ԱՄՆ-ի պատվիրակության ղեկավար, պետական քարտուղար Ու. Ռոջերսը

[1] *Ըստ ամերիկյան մասնագետների հաշվարկների միկրո և փոքրալիտրաժ կարգի մարդատար ավտոմեքենաների մասսայական արտադրությունն ԱՄՆ-ի համար պակաս շահութաբեր է: Դրանց թողարկումը չի ապահովում շահույթի այն նորման, որն ամերիկյան ընկերություններն ստանում են զանգվածային հզոր ավտոմոբիլներ արտադրելիս:*





Ճապոնիայից պահանջեց ավտոմոբիլների արտաքին առևտրի և այդ բնագավառում օտարերկրյա կապիտալ ներդրումների անհապաղ և լիակատար լիբերալիզացիա, սպառնալով, հակառակ դեպքում, տնտեսական լուրջ սանկցիաներով: Միաժամանակ, ԱՄՆ-ում մեծացան ճապոնական ավտոմեքենաների ներմուծումը սահմանափակելու պահանջները: Կառավարությանն այդպիսի կոչով դիմեց, մասնավորապես, Հենրի Ֆորդ II-ը: Մամուլում կամպանիա սկսվեց ԱՄՆ-ում վաճառվող ճապոնական մարդատար ավտոմեքենաները վարկաբեկելու միտումով: Մատնանշվում էր, օրինակ, որ «Տոյոտա» և «Նիսսան» ընկերությունների շրոշ մոդելներ շահագործման համար անվտանգ չեն:

Զգուշանալով առևտրական հարաբերությունների հետագա վատացումից, Ճապոնիան ստիպված էր զիջումներ անել: 1969 թ. սկսած, նա ձեռնամուխ եղավ ավտոմոբիլների մաքսատուրքերի աստիճանաբար իջեցմանը: Ավտոմոբիլային արդյունաբերության մեջ օտարերկրյա կապիտալներդրումների լիբերալիզացման ժամկետը տեղափոխվեց սկզբում 1972 թ. մարտից 1971 թ. հոկտեմբերը, ապա՝ այդ թվի ապրիլը: Օտարերկրյա կապիտալը մեծ արտոնություններ ստացավ: Եթե առաջ օտարերկրացիները կարող էին տիրել ավտոմոբիլային արդյունաբերության ձեռնարկությունների ակցիաների 20 տոկոսին, ապա 1971 թ. ապրիլից օտարերկրյա անմիջական ներդրված կապիտալի բաժինն ավելացավ մինչև 50 տոկոսով: Դրա հետ մեկտեղ, կառավարությունը քննության է առնում օտարերկրյա խոշոր ներդրման յուրաքանչյուր դեպք:

Դեռ մինչև ավտոմոբիլային արդյունաբերության մեջ օտարերկրյա անմիջական ներդրված կապիտալի լիբերալիզացման վերջնական ժամկետի հայտարարումը, ԱՄՆ մոնոպոլիաները քայլեր արեցին ներթափանցելու այդ կարևոր բնագավառը: 1968 թ. ամերիկյան կապիտալը սկսեց ակտիվ ներդրվել ավտոմոբիլային մասերի արտադրության մեջ: Օգտագործելով իր գերազանցությունը գիտա-հետազոտական աշխատանքների և մի շարք ավտոմասերի ու հանգույցների արտադրության տեխնոլոգիայի բնագավառում, ԱՄՆ-ի ընկերությունները ճապոնական ֆիրմաների հետ համաձայնագիր կնքեցին դրանց համատեղ արտադրության և վաճառահանման վերաբերյալ: Այդպիսի առաջին համաձայնագիրը կնքվեց 1968 թ. «Տոյոտա ծիդոսյա»—«Այսին-Սեյկի» ֆիլիալի և «Բորգ-Ուորներ» կամպանիայի միջև: Պարիտետային սկզբունքով նրանց ստեղծած, 1,1 *մլրդ* իեն կապիտալով, խառնակազմ ֆիրման ամերիկյան լիցենզիայով տրանսմիսիաներ է թողարկում: 1969 թ. համարդատար ավտոմոբիլների համար ավտոմատ տրանսմիսիաների համաձայնագիր կնքվեց «Նիսսան ծիդոսյա» և «Տոյո կոգյո» կամպանիաների և «Ֆորդ մոտոր» կոնցեռնի միջև: Համատեղ ձեռնարկություններ կազմակերպեցին նաև մի քանի այլ ֆիրմաներ:

Օտարերկրյա կապիտալ ներդրումների լիբերալիզացման վերջնական ժամկետի մոտենալուն զուգընթաց, Ճապոնիա էին ձգտում ամերիկյան գլխավոր ուժերը: Առանձնահատուկ ակտիվություն ցուցաբերեց «Կրայսլեր» մոնոպոլիան: Արդեն 1969 թ. նրան հաջողվեց արտադրության մեջ համագործակցության և ավտոմոբիլների վաճառահանման վերաբերյալ համաձայնագիր կնքել Ճապոնիայի խոշորագույն «Միցուբիսի ձյուկոգյո» արդյունաբերական կոնցեռնի հետ: Ըստ համաձայնագրի պայմանների «Կրայսլերը» և «Միցուբիսի ձյուկոգյոն» մտադիր են Ճապոնիայում ստեղծել խառնակազմ ընկերություն: Դրանցից մեկը, 46 *մլրդ* իեն կապիտալով, ներքին շուկայի համար արտադրելու է մարտադար ավտոմեքենաներ: Մյուսը (սրա կապիտալը՝ 1,1 *մլրդ* իեն է) Ճապոնիայում իրականացնելու է «Կրայսլեր» կոմպակտ մարդատար ավտոմեքենաների մասերի ներմուծումը և հավաքումը, ինչպես նաև՝ «Միցուբիսիի» ավտոմոբիլների արտահանումը և վաճառքը ԱՄՆ-ում: Երկու ֆիրմաներում էլ կապիտալի 65 տոկոսը պատկանելու է «Միցուբիսիին», իսկ 35 տոկոսը՝ «Կրայսլերին»: Ամերիկյան ընկերության կողմից «Միցուբիսիի» ակցիաների գնման ծախսերը (ըստ համաձայնագրի «Կրայսլերը» 1971 թ. ստացավ 15, 1972 և 1973 թթ. ստանալու է 10-ական տոկոս ակցիաներ), գնահատվում են 100 *մլն* դոլար: Համաձայնագրում նախատեսվում է նաև գիտա-հետազոտական և նախագծային կոնստրուկտորական համատեղ աշխատանքների անցկացում և գործակիցների կոոպերացում՝ երրորդ երկրների շուկաներում հանդես գալու դեպքում: Մասամբ արդեն «Միցուբիսին» ձեռնարկել է իր ավտոմեքենաների հավաքման գործը Հարավային Աֆրիկայում գտնվող «Կրայսլերի» գործարաններից մեկում:

1971 թ. սկզբներին ավարտվեցին ութ ամիս երկարաձգվող համագործակցության վերաբերյալ բանակցությունները «Ջեներալ մոտորսի» և «Իսուձու ծիդոսյայի» միջև: Ի տարբերություն «Միցուբիսիի» «Իսուձուն» բավականաչափ թույլ է իր անդրօվկիանոսյան գործակցից:

Ավտոմոբիլների արտադրության ծավալով այն երկրում միայն իններորդ տեղում է, իսկ նրա շրջապտույտը «Ջեներալ մոտորսից» 40 անգամ պակաս է: Դեռևս ամերիկյան կոնցեռնի «Իսուձուի» ակցիաների փաթեթի գնման շուրջ բանակցությունների ընթացքում Ճապոնիայի արտաքին առևտրի և արդյունաբերության մինիստրությունը՝ նրա ինքնուրույնությունը պահպանելու նպատակով որոշ քայլերի դիմեց: Նա, մասամբ, հրաժարվեց հավանություն տալ ֆիրմայի 35 տոկոս ակցիաները ամերիկյան կոնցեռնին փոխանցելուց, քանի որ դա «Ջեներալ մոտորսին» հնարավորություն կտար ամերիկյան գործակիցներին չբավարարող որոշումների ընդունման դեպքում լայնորեն օգտվել վետոյի իրավունքից (ըստ համաձայնագրի «Ջեներալ մոտորսը» կարող է ստանալ ճապոնական ֆիրմայի 34,2 տոկոս ակցիաները և մինչև 1976 թ. իր փաթեթը մեծացնելու նպատակով քայլերի չի դիմի):

Ամերիկյան կապիտալ ներդրումների համար բավական հետաքրքրական էր Ճապոնիայի, իր մեծությամբ չորրորդ, «Տոյո կոհյո» ավտոմոբիլային ընկերությունը— ռոտորային շարժիչներով մարդատար ավտոմեքենաների խոշորագույն արտադրողը: Նրա ակցիաների մեծ փաթեթը, իրավ, ապարդյուն փորձել է գնել «Կրայսլերը»: Այժմ «Տոյո կոհյոն» ավարտում է իր ակցիաների 30 տոկոսը «Ֆորդ մոտորին» վաճառելու վերաբերյալ բանակցությունները:

Ճապոնական ավտոմոբիլային արդյունաբերության լիբերալիզացիան և ամերիկյան կապիտալի մուտքի իրավունքն ԱՄՆ-ի մոնոպոլիաների կողմից մի քանի ֆիրմաների գրավման որոշակի վտանգ է ստեղծում, սակայն ամենևին չի վերացնում մրցակցային պայքարի սրությունը: Որոշ զիջումներ անելով, ճապոնական մոնոպոլիստական կապիտալը բնավ մտադիր չէ դիրքերը զիջել: Ի պատասխան դոլարի գրոհի «Տոյոտայի» և «Նիսսանի» գլխավորած ճապոնական ավտոմոբիլային անկախ ընկերությունները նոր պլաններ են նախատեսում ամերիկյան շուկան հետագայում ներթափանցելու համար: Միայն 1971 թ. առաջին կիսամյակում այդ երկու մոնոպոլիաների մարդատար ավտոմեքենաների վաճառահանումը ԱՄՆ ավելացավ գրեթե երկու անգամ: Մինչև տարեվերջը «Տոյոտան» և «Նիսսանը» մտադիր են արտահանել այստեղ մոտ 600 հազ. մարդատար ավտոմեքենա:

Ամերիկա-ճապոնական տնտեսական հարաբերությունների նոր սրումն առաջացավ դոլարը փրկելու նպատակով կիրառվող արտակարգ միջոցների հետևանքով: Նիքսոնի կառավարության 10-տոկոսանոց լրացուցիչ մաքսատուրքի սահմանումը, ԱՄՆ ներմուծվող ապրանքների վրա, լրջորեն կդժվարացնի ճապոնական ավտոմոբիլների արտահանումը: Բացասաբար կանդրադառնա այն նաև ճապոնական արտաքին առևտրի էքսպանսիայի տեմպերի և իենի կուրսի վրա:

ԱՄՆ-ի պրոտեկցիոնիստական քաղաքականությունը Ճապոնիայում խիստ դատապարտվեց: 1971 թ. սեպտեմբերին առևտրական և տնտեսական հարցերին նվիրված խառնակազմ կոմիտեի հերթական սեսիայում ճապոնական պատվիրակությունը ԱՄՆ-ին սպառնաց պատասխան միջոցառումներով: Ամերիկացիներին ոչ-երկդիմի հասկացրին, որ եթե ԱՄՆ-ում ճապոնական ապրանքների լրացուցիչ մաքսերը չվերացվեն, Ճապոնիան հարկադրված կլինի վերանայելու ներմուծման և օտարերկրյա կապիտալ ներդրումների, ինչպես նաև ավտոմոբիլային արդյունաբերության ոլորտում, լիբերալիզացման իր ծրագրերը: Դա, իր հերթին, ամերիկա-ճապոնական առևտրական և քաղաքական հարաբերությունների նոր, առավել խիստ բարդացում է սպառնում:

ՅՈՒ. ԿԱՐՊՈՎ

«Мировая экономика и
международные отношения»,
№ 11, 1971 г.



# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ



## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԿՈՒՍՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Կուսշինարարությանը վերաբերող գիտական հետազոտությունների հետագա հարստացման և կատարելագործման խնդիրները համակողմանիորեն քննարկվում են կուսակցության մամուլում: Այդ առումով կարևոր է ազգային լեզուներով լույս տեսած գրականության գիտական և գաղափարական արժեքավորումը: Վերջին չորս տարիներին հանրապետությունում հրատարակված մոտ մեկ տասնյակի հասնող գրքույկները թեմատիկայով բազմազան են և օժտված որոշակի արժանիքներով: Կարևորն այն է, որ դրանց հեղինակները կուսակցական, սովետական աշխատողներ ու գիտնականներ են, որոնք, հենվելով սեփական պրակտիկ փորձի և հարուստ գիտելիքների վրա, արժեքավոր տեղեկություններ են հաղորդում կուսշինարարության տարբեր բնագավառների մասին:

Ներկուսակցական աշխատանքը կուսկազմակերպությունների գործունեության կարևոր բնագավառն է, կուսշինարարության հրատապ պրոբլեմ: Այն միշտ էլ արժանացել է մեր կուսակցության համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների ու կուսշինարարության պրակտիկան և տեսությունն ուսումնասիրողների ուշադրությանը: ՍՄԿԿ XXIV համագումարում Կենտկոմի քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց ներկուսակցական աշխատանքի խելացի կազմակերպման նշանակությունը կուսկազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու, նրանց գործունեության բովանդակությունը հարստացնելու, տնտեսական խնդիրները լուծելու գործում: Երբ այս հարցը դիտում ենք կուսակցության համագումարի առաջադրած նոր պահանջների լույսի տակ, ապա որոշակի երևում է կուսկազմակերպությունների գործունեության հիշյալ բնագավառն արտացոլող ու բնութագրող գրականության հրատապ անհրաժեշտությունը: Այս առումով ուշագրավ է Վ. Վարդանովի գրքույկը (**Խորհուրդներ սկզբնական կուսկազմակերպության քարտուղարին**, «Հայաստան», 1967 թ.): Դրա նպատակն է օգնել և կողմնորոշել կուսկազմակերպությունների նորընտիր քարտուղարներին, բյուրոների և կոմիտեների անդամներին՝ իրենց առջև ծառացած խնդիրներն ու պրակտիկ հարցերը հաջողությամբ լուծելու համար: Նրանք կարող են հետաքրքրական և օգտակար խորհուրդներ ստանալ սկզբնական և արտադրամասային կուսկազմակերպությունների կառուցվածքի, կուսխմբերի, կուսբյուրոյի, կուսկազմակերպության աշխատանքի պլանավորման ու կազմակերպման, նրանց տնտեսության վարման, կուսշարքերի ընդունելության, անդամավճարների գանձման, կուսանդամների հաշվառման և այլ խնդիրների շուրջ:

Հենվելով Վ. Ի. Լենինի ուսմունքի, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների և ցուցումների, կուսակցության ծրագրի ու կանոնադրության դրույթների վրա՝ հեղինակը երիտասարդ կուսաշխատողներին խորհուրդ է տալիս իրենց գործունեության մեջ կիրառել կուսակցականկազմակերպական և գաղափարական աշխատանքի նորանոր ձևեր:

Սակայն գրքույկը մեծապես կշահեր, եթե արծարծված հարցերը հիմնավորվեին հանրապետության սկզբնական կուսկազմակերպությունների լավագույն քարտուղարների գործունեության դրական փորձի և տեղ գտած թերությունների վերլուծությամբ:

Որոշակի հետաքրքրություն է ներկայացնում նաև Քր. Պետրոսյանի գրքույկը (**Մասսաների հետ, մասսաների համար**, «Հայաստան», 1968 թ.): Այն նվիրված է Գորիսի շրջանային կուսկազմակերպության փորձին: Շրջանի կուսկազմակերպությունների պրակտիկայից վերցրած հարուստ փաստական նյութերը հիմք են ծառայել՝ լուսաբանելու կուսակցական շինա-

Հեղինակը ճիշտ է նկատում, որ զարգացման արդի էտապում կոմունիստական շինարարության խնդիրների հաջող կենսագործումը շատ բանով պայմանավորված է կուսկազմակերպությունների ծավալած գաղափարական աշխատանքի արդյունավետությամբ: Այստեղ ոչ միայն տեսական հարցադրումներ են առաջ քաշված, այլև մեծ տեղ է հատկացված կուսկազմակերպությունների կոնկրետ գործունեության վերլուծությանը: Հեղինակը բազմակողմանիորեն քննարկում է հանրապետության արդյունաբերական խոշոր կենտրոններից մեկի՝ Կիրովականի քաղաքային կուսկազմակերպության գաղափարական գործունեության դրական փորձը: Փաստական հարուստ նյութերի հիման վրա ցույց է տրված, որ կոմունիստների, բոլոր աշխատավորների քաղաքական-գաղափարական դաստիարակության բնագավառում քաղաքի կուսկազմակերպությունները, իրոք, ձեռք են բերել ակներև հաջողություններ: Ընթերցողը լիովին համոզվում է, որ քաղաքում ամենօրյա լուրջ ուշադրություն է նվիրվում քաղուսուցման սիստեմի անընդհատ կատարելագործմանը, դրա դերի ըստ ամենայնի բարձրացմանը: ՍՄԿԿ ծրագրի և կուսակցության XXIII համագումարի որոշումների լույսի տակ Կիրովականի քաղաքային կոմիտեն, ինչպես նաև սկզբնական կուսկազմակերպությունները մշտապես զբաղվում են պրոպագանդիստական կադրերի ընտրությամբ, նրանց քաղաքական ու տեսական մակարդակի բարձրացմամբ, կուտակված դրական փորձի ընդհանրացմամբ ու տարածմամբ: Գրքույկում արժանի տեղ է հատկացված նաև գաղափարական բնագավառում հասարակական հիմունքների ներդրմանը:

Վ. Վարդանովը կուսկազմակերպությունների գաղափարական աշխատանքը քննարկում է բազմապլան, մեծ տեղ հատկացնում քաղաքական ագիտացիայի, երիտասարդության կոմունիստական դաստիարակության և այլ հարցերին:

Գրքույկի դրական կողմերից մեկն էլ այն է, որ կուսկազմակերպությունների քաղաքական-գաղափարական գործունեությունը քննարկվում է տնտեսական խնդիրների հետ սերտ առնչված: Կիրովականը սոցիալիստական մրցության մեջ է Բաթումիի, Սումգաիթի, Ռուսթավիի, Սուխումիի հետ: Հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես կուսկազմակերպություններն իրենց գաղափարական ջանքերն ուղղում են աշխատավորների ուժերի մոբիլիզացմանը, այդ մրցությունից պատվով դուրս գալուն:

Գրքույկն ունի նաև թերի կողմեր: Լավ կլիներ, օրինակ, որ հեղինակը, դրական բազմաթիվ փաստերի հետ մեկտեղ, ցույց տար, թե ինչպիսի թերություններ ու բացեր կան կուսկազմակերպությունների գաղափարական աշխատանքում, խորհուրդներ տար դրանց վերացման համար:

Գիտատեխնիկական առաջադիմության ժամանակակից պայմաններում նոր ու բարդ խնդիրներ են ծառանում կուսակցական մարմինների և սկզբնական կուսկազմակերպությունների առջև: Նոր պահանջներին համապատասխան՝ նրանք կատարելագործում են իրենց աշխատանքի ձևերն ու մեթոդները, խորամուխ լինում տեխնիկական պրոգրեսի, արտադրության արդյունավետության ու կառավարման բարելավման հարցերի մեջ: Այդ կարգի հրատապ անհրաժեշտություն ունեցող խնդիր է շոշափում Ռ. Սվետլովայի ռուսերեն հրատարակված գրքույկը[1]:

Հեղինակը պատմում է աշխատանքի գիտական կազմակերպման և արտադրության կուլտուրայի բարձրացման բնագավառում Սվերդլովսկի կուսկազմակերպության գործունեության փորձի մասին: Նա թեման ընտրել և շարադրել է՝ ուղեցույց ունենալով ՍՄԿԿ Կենտկոմի 1967 թ. օգոստոսի որոշումը Սվերդլովսկի մարզային և Ռիբինսկի քաղաքային կոմիտեների կուսկազմակերպությունների փորձի վերաբերյալ: ՍՄԿԿ Կենտկոմը, հավանություն տալով հիշատակված կուսկազմակերպությունների գործունեությանը, հանրապետական, մարզային, երկրամասային կուսկազմակերպություններին առաջարկեց քննարկել արդյունաբերության, տրանսպորտի, շինարարության բնագավառում աշխատանքի գիտական կազմակերպումը ներդնելու խնդիրը և լայնորեն կիրառել սվերդլովցիների փորձը: Գրքույկն անշուշտ, արժանի է ուշադրության և օգտակար է կուսկազմակերպությունների քարտուղարներին:

Հանրապետությունում կուսակցական շինարարության տեսության և պրակտիկայի լուսաբանումը, սակայն, անբավարար է, առանձին հարցերի մասին ստեղծված գրականությունը՝ սակավ: Հրապարակի վրա դեռևս չկան մենագրություններ, որոնցում ընդհանրացվի, տեսականորեն իմաստավորվի Հայաստանի կոմունիստական կուսակցության հարուստ և բազմակողմանի փորձը: Բազմաթիվ պրոբլեմներ ու հարցեր սպասում են իրենց հետազոտողներին, կարոտ են լուսաբանման:

Ուսումնասիրողների ուշադրությանը պետք է արժանանան այնպիսի հրատապ ու կարևոր խնդիրներ, որպիսիք են՝ Հայաստանի կոմկուսի կազմակերպական-կուսակցական և գաղափարական գործունեությունը, կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության լենինյան սկզբունքների կենսագործումը հանրապետության կուսկազմակերպություններում: Երևանի կուսկազմակերպության փորձը գիտա-տեխնիկական հեղափոխության պայմաններում, կուսակցական ապարատի աշխատանքի գիտական կազմակերպումը, հանրապետության ժողովրդական տնտեսության նկատմամբ կուսակցական ղեկավարության ձևերն ու մեթոդները, կատարման վերահսկողությունը որպես կուսղեկավարման կարևորագույն սկզբունք և բազմաթիվ այլ պրոբլեմներ: Կարևոր և անհրաժեշտ է սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին օգնող ձեռնարկների ստեղծումը, կուսշինարարությանը վերաբերող գրքույկների, գրքերի թեմատիկայի ընդարձակման հետ մեկտեղ, անհրաժեշտ է սևեռուն ուշադրություն նվիրել հրատարակվելիք գրականության տեսական-գաղափարական բարձր մակարդակին և գրական կատարելությանը: Ստեղծվող գրքերը պետք է մեզ սովորեցնեն՝ խորապես ըմբռնելու կուսակցական կյանքի ժամանակակից փորձը, այն ընկալելու մարքս-լենինյան տեսության լույսի տակ, նրանցից բխող երաշխավորությունները և խորհուրդները կիրառելու՝ տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրները հաջողությամբ լուծելու համար:

Անհրաժեշտ է հետազոտել և վերլուծել կուսակցական կյանքի առավել բնորոշ կողմերը, դրանք շարադրել սիստեմավորված, տրամաբանական հաջորդականությամբ: Ընտրվող թեմաների բովանդակության հագեցվածությանը ուշադրություն դարձնելու հետ մեկտեղ, հարկավոր է աչքաթող չանել կենդանի և մատչելի լեզվական շարադրանքի, աղբյուրագիտական բազայի ընդլայնման հարցերը:

Կուսշինարարության զանազան խնդիրները լուսաբանող հեղինակները պետք է ձգտեն խորապես և բազմակողմանիորեն ընկալելու և լուսաբանելու կուսկազմակերպությունների գործունեությունը, բացահայտելու թերությունների և սխալների պատճառները: Կարծում ենք, որ կոմունիստները, ընթերցողները կցանկանային նման գրքույկներում կարդալ ավելի շատ հետաքրքրական միջադեպեր, երկախոսություններ և գրական այլ հնարագրություններ, որոնք կաշխուժացնեն շարադրանքը, կօգնեն ավելի խոր ըմբռնելու կուսակցական կյանքի բարդ երևույթները:

Ցանկալի է առանձին կոմունիստների և կոլեկտիվների կյանքում տեսնել մեր ողջ ժողովրդի մեծագույն սխրագործության վեհությունը: Չէ՞ որ յուրաքանչյուր կուսկազմակերպություն, լուծելով իր առջև ծառացած որոշակի խնդիրներ, միաժամանակ կապված է տարբեր կոլեկտիվների գործունեությանը, գլխավոր, ընդհանուր նպատակների կենսագործմանը՝ կուսակցական կյանքի լենինյան նորմերի ու սկզբունքների կիրառման առումով:

Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի ծննդյան տարելիցներին, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակին նվիրված ու ՍՄԿԿ XXIV համագումարի փաստաթղթերն ու նյութերը, Լ. Ի. Բրեժնևի **Լենինյան կուրսով** երկհատորյակը, կուսշինարարության ու ժամանակակից պայմաններում կուսակցական աշխատանքի փորձի ընդհանրացման հարուստ շտեմարան են և մեծապես կօգնեն և ուղղություն կտան այդ բնագավառի պրոբլեմներն ուսումնասիրողներին: Արծարծելով Վ. Ի. Լենինի գաղափարական ժառանգության հարցը, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում նշեց, որ կուսակցությունն իր կարևորագույն խնդիրն է համարում լենինյան մտքերի, լենինյան մեթոդոլոգիայի հիման վրա գտնել կոմունիստական շինարարության հրատապ պրոբլեմների լուծումը: Այս կարևոր դրույթը հավասարապես վերաբերում է նաև կուսակցական շինարարությանը:

Վ. Հ. ՂԱԶԱՆՉՅԱՆ
**Դոցենտ**



[1] Об опыте Свердловской партийной организации по внедрению научной организации труда и культуры производства. Изд. «Айастан», 1969 г.:

դեկտեմբերի 1-ին, առավոտյան ժամը 9—10-ին: Նույն ժամանակ Դիլիջան է մտել նաև Հայհեղկոմը: Պահպանված փաստաթղթերը, զորքին տրված հրամանները վկայում են, որ 1920 թ. նոյեմբերի 30-ին XI կարմիր բանակի զորամասերը գտնվում էին Ջարխեչում: 20-րդ դիվիզիայի 178-րդ հրաձգային գնդի հրամանատարի՝ դեկտեմբերի 1-ի ժ. 3 անց 20 րոպեին տրված հրամանում խնդիր է տրվում զորքերին՝ դեկտեմբերի 1-ին, ժ. 7-ին շարժվել և նույն օրը գրավել Դիլիջանը (տե՛ս ЦГАСА, ф. 195, д. 258161, л. 62):

Սակայն, քանի որ կարմիր բանակի զորամասերը և ապստամբ գյուղացիները թշնամու դիմադրությանը չհանդիպեցին, նրանք Դիլիջանը գրավեցին ոչ թե դեկտեմբերի 1-ի երեկոյան, այլ արդեն առավոտյան (20-րդ դիվիզիայի օպերատիվ տեղեկագրում նույնպես նշված է, որ դեկտեմբերի 1-ին, ժ. 9-ին վերցված է Դիլիջանը (ЦГАСА, ф. 1284, т. 1, д. 171, л. 86): Այդպես է գրված նաև Երևանի «Коммунист» թերթում, № 4, դեկտեմբերի 10, 1920 թ. (Լազոյի հոդվածը՝ գրված Դիլիջանից):

Այսպիսով, Վ. Ի. Լենինին հղած Հայաստանի հեղկոմի հեռագրի այն տեքստն է ճիշտ, որը տպվել է անմիջապես հեռագրի բլանկի վրա: Այն տրամաբանական է և համապատասխանում է պատմական ճշմարտությանը:

Կարծում եմ, որ մեր հրատարակություններում պետք է վերականգնել այդ տեքստը և նրա հայերեն թարգմանությունը.

«...Թող հայտնի լինի համաշխարհային հեղափոխության առաջնորդին: Իջևանի (Քարվանսարայի) շրջանի գյուղացիները, զայրացած դաշնակցական կառավարության ոճրագործ քաղաքականությունից և երկրում խորացող անարխիայից, բարձրացրին ապստամբության դրոշը: Հայաստանի կոմունիստական կուսակցությունը իսկույն ևեթ իր ձեռքը վերցրեց այդ տարերային շարժման ղեկավարությունը և ստեղծեց Հայաստանի Հեղկոմ, Հայաստանը հայտարարելով Սոցիալիստական Սովետական Հանրապետություն: Հասցված է առաջին հարվածը: Իջևան քաղաքը մեր ձեռքումն է: Ոգևորված ապստամբները շարժվում են առաջ՝ վերջնականապես խորտակելու Անտանտի անպատկառ գործակալի իշխանությունը: Կատարելով նրանց կամքը մենք ստեղծեցինք տեղական Հեղկոմ, առաջ ենք շարժվում լիահույս, որ Արևելքի ճնշված ժողովուրդների ազատարար մեր ավագ դաշնակցի՝ սոցիալիստական Մեծ Ռուսաստանի հերոսական Կարմիր բանակը ցույց կտա մեզ իրական օգնություն մեր այս դժվարին պայքարում: Հայաստանի բոլոր բանվորների և գյուղացիների անունից մենք խնդրում ենք ժողովրդական կոմիսարների սովետին ցույց տալ այդ օգնությունը: Կեցցե՛ Ռուսաստանի Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Հանրապետությունը: Կեցցե՛ նրա հաղթական Կարմիր բանակը:

Հայաստանի Հեղկոմի նախագահ Կասյան: Հայաստանի Հեղկոմի անդամներ՝ Ավիս, Բեկզադյան, Դովլաթյան, Մռավյան, Տեր-Գաբրիելյան»:

Հեռագիրը տրված է Իջևանից, 1920 թ. նոյեմբերի 29-ի լույս 30-ի գիշերը, ժ. 12 անց 22 րոպեին (և ոչ թե առավոտյան), Մոսկվայում այն ընդունված է նոյեմբերի 30-ին, ցերեկվա ժ. 12 անց 25 րոպեին:

Նույն օրը, նոյեմբերի 30-ին, Բաքվից ռադիոսարքավորում ստանալով՝ Հայաստանի հեղկոմը ռադիոյով ի լուր աշխարհի հաղորդում է Հայաստանը Սովետական Սոցիալիստական Հանրապետություն հայտարարելու մասին հեղկոմի 1920 թ. նոյեմբերի 29-ի դեկլարացիան (տե՛ս Ս. Կասյանի զեկուցումը, «Коммунист», № 5, 11 դեկտեմբերի, 1920 թ., Երևան):

Վ. Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵՎՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции,— Ереван-33, Барекамутян 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 27—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 03244 Պատվեր 188 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 14000 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 15/II 1972 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:




# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

[...]ՏՐՈՖԱՆՈՎԱ Ա. Վ.— ՍՍՀՄ բանվոր դասակարգը Հայրենական մեծ պատերազմի [...]երին: *Մ., «Наука» հրատ., 1971, 576 էջ:*

*Հսկա մեծաքանակ փաստաթղթերի հիման վրա հեղինակն այս մենագրության մեջ [...]բանել է ՍՍՀՄ արդյունաբերության վիճակի, բանվոր դասակարգի աշխատանքային [...]րագործության, նրանց որակական, կենցաղի, գաղափարա-քաղաքական փոփոխության և այլ հարցերի մասին:*

ԵՐՄՈԼԱԵՎԱ Ռ. Ա. և ՄԱՆՈՒՍԵՎԻՉ Ա. ՅԱ.— Լենինը և լեհական բանվորական շարժումը: *Մ., «Мысль» հրատ., 1971, 504 էջ:*

*Վ. Ի. Լենինի, ՍՄԿԿ փաստաթղթերի, Լեհաստանի սոց.-դեմ., ԼԿԿ, ՍՄԿԿ կուսմամուլի և այլ նյութերի հիման վրա հեղինակներն այս գրքում շարադրել են Վ. Ի. Լենինի կապը լեհ սոց-դեմոկրատներ Ռ. Լյուքսեմբուրգի, Յու. Մարխլևսկու, Յան Տիշկայի, Ֆ. Ձերժինսկու և ուրիշների հետ ու նրա ղեկավարությունը լեհ կազմակերպությունների նկատմամբ:*

Կոմխմբակի աշխատանքի փորձից *(Հոդվածների ժողովածու), Մ.,* «Московский рабочий» *հրատ., 1971, 152 էջ:*

ՊԵՏՐՈՎ Վ. Ս.— Պետության էությունը, բովանդակությունը և ձևերը: *Մ.,* «Наука», *1971, 164 էջ:*

ԵԳՈՐՈՎ Վ. Ն.— Խաղաղ համակեցությունը և հեղափոխական պրոցեսը: *Մ.,* «Международные отношения», *1971, 224 էջ:*

ՄՈՇԵՆՍԿԻ Մ. Գ.— Աշխատանքի չափավորումը և աշխատավարձը կապիտալիզմի ժամանակ», *Մ.,* «Мысль» *հրատ., 1971, 334 էջ:*

ՌՈՄԱՇՈՎ Լ. Վ.— Տրոցկիստները հակակոմունիզմի համբարում: *Մ.,* «Знание» *հրատ., 1971, 80 էջ:*

ԿՈՒՐՏԻԿՈՎ Ն. Ա.— Կադրերի առաջին պարտականությունը: *Մ.,* ««Московский рабочий» *հրատ., 1971, 64 էջ:*

ՍՊԵՆԴԻԱՐՅԱՆ Մ. Ա.— Երաժշտի կյանքը, Պատմվածք: *Մ.,* «Детская литература» *հրատ., 1971, 110 էջ:*

ԲԱՅՐԱՄՈՎ Մ. Բ.-ՕՂԼԻ— Ալեքսանդր Շիրվանզադեն և Ադրբեջանը: *«Հայաստան» հրատ., 1971, 228 էջ (ադրբեջաներեն):*

Քրեական օրենսգիրք: *Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության: (Առ 1-ը հունվարի 1971 թվականի փոփոխություններով և լրացումներով): «Հայաստան» հրատ., 1971, 304 էջ (ռուսերեն):*

Մեծ հոկտեմբերը սովետական և արտասահմանյան պատմաբանների աշխատություններում: *Մ.,* «Мысль» *հրատ., 1971, 228 էջ:*

ՊԱՆՑԽԱՎԱ Ի. Դ. և ՊԱԽՈՄՈՎ Բ. ՅԱ.— Դիալեկտիկական մատերիալիզմը ժամանակակից գիտությունների լույսի տակ: *Մ.,* «Мысль» *հրատ., 1971, 262 էջ:*

ԳԻՆԸ 25 Կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿԱՊԻ ՆՈՐ ՍԻՍՏԵՄ

*Էլեկտրոնահաշվիչ մեքենայի և օպերատորի «փոխհարաբերության» հեռանըկարային մեթոդներից մեկը մասնագետները համարում են ինֆորմացիայի փոխանակման գրաֆիկային եղանակը։ Կապի նման սիստեմ է մշակվել կիրառական մաթեմատիկայի և կիբեռնետիկայի Գորկի քաղաքի գիտահետազոտական ինստիտուտում։ Օպերատորն ինֆորմացիան տեղավորում է ԷՀՄ-ի մեջ՝ էլեկտրոնաճառագայթային խողովակի էկրանի միջոցով՝ գծագրային լծակով։ Շրջադարձը, տեղաշարժը և մասշտաբի փոփոխությունները, էկրանի վրա ստացված պատկերի տարրերի մաքրումն ու լրացումը, նաև տեքստերի խմբագրումը օպերատորն իրագործում է կառավարման կետից։*

*ԷՀՄ-ի պատասխանները նա ստանում է գծագրերի, գրաֆիկների, տառաթվային տեքստերի տեսքով։*

## ԲԻՈՔԻՄԻԱԿԱՆ ԱՆԱԼԻԶԱՏՈՐ

*Այս կոմպլեքս սարքավորում է բիմիական հետազոտությունների համար, որը ստեղծել և սերիան թողարկել է Լենինգրադի «Կրասնոգվարդեեց» արտադրական միավորումը։* БИАН*-ի սիստեմում կան սարքեր՝ առանձին բիոքիմիական ցուցանիշների վերլուծության համար։ Դրանց օգնությամբ կարելի է չափել հորմոնների, վիտամինների, ջրածնի իոնների, կալիումի, նատրիումի պարունակությունը՝ բիոլոգիական յուղերի և այլ լուծույթների մեջ։ Բացի այդ, քանի որ չափիչը և կիմոգրաֆը* БИАН*-ի սիստեմում (ընդհանուր՝ բոլոր սարքերի համար) «Գառնիտուրը» քիչ ծավալ ունի, առավել խնայողաբար է, քան իր նախորդը։*

## ԱՂՄՈՒԿԻ ԽԼԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

*Ինչպե՞ս է աղմուկը ներգործում մարդու օրգանիզմի վրա, որո՞նք են ներգործման թույլատրելի սահմանները։ Այս հարցերի պատասխանը ստացվում է փորձարկումների միջոցով, որոնք կատարվում են արտաքին վիբրացիայից, ձայնից և էլեկտրամագնիսական ալիքներից հուսալիորեն մեկուսացված աղմըկային խցիկներում։ Փորձարկման ժամանակ փորձարկվողից նկարահանվում են էլեկտրակարդիոգրեր և էլեկտրաէնցեֆալոգրեր, կատարվում է նրանց արյան անալիզը, որոշվում շնչառության ռիթմը, խորությունն ու հաճախականությունը, գրգռականությունը, լսողունակությունը, հոգնածության աստիճանը։ Ստացված տվյալներով սահմանվում են թույլատրելի աղմուկի միջին աստիճանի ցուցանիշները՝ դպրոցների, հիվանդանոցների, արտադրական ու բնակելի շենքերի համար։ Պաշտպանական միջոցներ են՝ ձայնամեկուսիչ նյութերը և դրանց կոնստրուկցիաները, խլացուցիչները, որոնք տեղակայվում են կոմպրեսորների վրա՝ մուրճով և պնևմատիկ սարքով։ Փողոցի աղմուկը նվազեցնելու նպատակով տնկում են ծառեր, թփեր, ճանապարհները պատրաստվում են հարթածածկույթով, ընդարձակվում է միջշենքային տարածությունը։*

(Մոսկվա)

## «ՄԵՏՐՈ» ՓՈՍՏԻ ՀԱՄԱՐ

*Տեսակավորման կենտրոնական հանգույցից փոստային բաժանմունքներին թղթակցությունների առաքումը հաճախ շատ ժամանակ է խլում։ ԳՖՀ-ի փոստի վարչության մասնագետները հավաստում են, որ առաքումը կարելի է արագացնել փոստային մետրոյի միջոցով։ Այդ փորձնական ստորգետնյա ուղին արդեն երկրորդն է ԳՖՀ-ում և գործում է հետևյալ կերպ. հինգ մետր երկարությամբ կառախումբը տեղավորված է 70 սմ տրամագծով և 246 մետր երկարությամբ սարեստ բետոնի խողովակում։ 594 կիլոգրամ քաշ ունեցող գնացքը բեռը տեղափոխում է մինչև 148 կիլոմետր հեռավորության վրա, մոտ 30 կմ/ժամ արագությամբ։ Կառախումբը բաղկացած է երկու վագոնից, որոնց միջև տեղավորված է լոկոմոտիվ։ Վերջինս գործում է էլեկտրաշարժիչներով։ Նույնատիպ մետրո է կառուցված Համբուրգում, կենտրոնական փոստի և Գլխավոր կայարանի միջև։ Փորձերը վկայում են, որ առաքման այս ձևը առավել շահավետ է։ Ենթադրվում է, որ ստորգետնյա այդ ուղիները կգտնեն ավելի լայն կիրառություն։*